

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**6**

ՀՈՒՆԻՍ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

---

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

**ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

С О Д Е Р Ж А Н И Е









# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՆՄԱՀ ՍԽՐԱՆՔԸ

## Ընկեր Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը

*Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր, հարգելի հյուրե՛ր։*

*Մեր ժողովրդի համար երկար ու դժնդակ էին պատերազմի չորս տարիները, դժվարին էր հաղթանակի ուղին։ Եվ ահա եկավ այն պայծառ մայիսյան օրը, երբ սովետական զինվորը, սովետական մարդը կարող էր ասել. արդար գործը հաղթանակեց, թշնամին ջախջախված է, հաղթանակը մերն է։*

*Սովետական ժողովուրդը, նրա քաջարի զինված ուժերը խորտակիչ պարտության մատնեցին ֆաշիստական Գերմանիային, պաշտպանեցին հայրենիքի ազատությունն ու անկախությունը, ազատագրում բերեցին Եվրոպայի ժողովուրդներին։ Ֆաշիզմի ջախջախումը, պատերազմի հաղթական ավարտումը դարձան բեկումնային, համաշխարհային պատմական նշանակության իրադարձություն, որը փրկված մարդկության առջև բացեց սոցիալական առաջընթացի նոր ուղիներ, մոլորակի արդար և կայուն խաղաղության հեռանկար։ Մեր հաղթանակը անցյալ չի դարձել։ Դա ներկային և ապագային միտված կենդանի հաղթանակ է։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և սովետական կառավարությունը հերոսական սովետական ժողովրդին ջերմորեն շնորհավորում են մեծ հաղթանակի 40-ամյակի առթիվ։ Շնորհավոր ձեր տոնը, թանկագին հայրենակիցնե՛ր։*

*Այսօրվա օրը մայր հայրենիքը փառաբանում է արիությունը, խիզախությունն ու հերոսությունը իր որդիների ու դուստրերի, յուրաքանչյուրի, ով զենքը ձեռքին մինչև վերջ կատարեց իր հայրենասիրական պարտքը, ով ամեն ինչ արեց, որպեսզի գար հաղթանակի գարունը։*

*Շնորհավո՜ր ձեր տոնը, թանկագին հերոս ճակատայիններ, պարտիզաններ և ընդհատակայիններ։ Փա՜ռք հանուն հայրենիքի, հանուն աշխարհում կյանքի գոյատևման ձեր կատարած ռազմական սխրանքին։*

*Արժանապատվությամբ և պատվով այսուհետ ևս կրեցեք Հայրենական մեծ պատերազմի մասնակցի՝ բոլոր սովետական մարդկանց համար թանկագին բարձր կոչումը։*

*Այսօր երկիրը փառաբանում է աշխատանքային արիությունը և չտեսնված տոկունությունը մեր թիկունքի, յուրաքանչյուրի, ով զենք էր կռում, մետաղ էր հալում, հաց էր աճեցնում, ով հաղթանակի ժամը մոտեցնում էր գործարանային արտադրամասերում և հանքահորերում, պողպատե մայրուղիներում, դաշտերում ու ֆերմաներում, գիտական լաբորատորիաներում ու կոնստրուկտորական բյուրոներում։*

*Շնորհավո՜ր ձեր տոնը, թանկագին ընկերնե՛ր։ Փա՜ռք ու պատիվ բոլոր նրանց, ում կյանքն ու աշխատանքը պատերազմի տարիներին ենթարկված էին նույն սուրբ պարտքին՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար»։*

*Անսահման են սովետական ժողովրդի հարգանքն ու երախտագիտությունը պատերազմի և աշխատանքի վետերանների նկատմամբ։ Ձեզ, ընկերնե՛ր, եր-*

յուրաքանչյուրը իր հավասարը չունի պատմության մեջ։ Ի՞նչը մեզ օգնեց հաղթելու այնքան դժվար սկսված պատերազմում։

Հաղթանակի ակունքները սոցիալիզմի էության մեջ են, սովետական ապրելակերպում, Հայրենական մեծ պատերազմի համաժողովրդական բնույթի մեջ։ Պատերազմը, որպես մեծագույն փորձություն, անսովոր ցայտունությամբ և խորությամբ հաստատեց, որ հենց ժողովրդական զանգվածներն են պատմության վճռորոշ ուժը։ Մասսայական հերոսություն ցուցաբերելով մարտերում և աշխատանքում՝ իրենց սոցիալիստական հայրենիքը պահպանում և պաշտպանում էին տարբեր ազգությունների սովետական մարդիկ։ Նրանց համախմբում և ոգեշնչում էր ռուս մեծ ժողովուրդը, որի արիությունը, տոկունությունը և աննկուն բնավորությունը հաղթանակի հասնելու անխորտակելի կամքի ոգեշունչ օրինակ էին։

Պատերազմին մասնակցում էին միլիոններ, բայց իր մասշտաբներով աննախադեպ այդ գոտեմարտում նրանք հանդես էին գալիս ոչ որպես մի անդեմ մասսա։ Նրանց հերոսության մեջ վառ դրսևորվեցին անձնական վսեմ հատկանիշները Հայրենական մեծ պատերազմի ռազմիկների՝ սկսած շարքային Ալեքսանդր Մատրոսովից մինչև մարշալ Գեորգի Կոնստանտինովիչ Ժուկովը։

Անթառամ փառքով են պսակված մեր զինված ուժերի մարտական դրոշները։ Հոկտեմբերյան հեղափոխության ծնունդ կարմիր բանակը ժողովրդի բանակն էր։ Սովետական զինվորին բնորոշ էին անսահման նվիրվածությունը հայրենիքին, արիությունը և մարտական վարպետությունը։ Անողոք գոտեմարտում նա ցուցաբերեց իր բարոյական վսեմագույն հատկանիշները։ Պատերազմում մեր կրած հսկայական զոհերը, թշնամու գործած վայրագությունները նրա գիտակցությունը չմթագնեցին վրիժառության կույր տենչով։ Գերմանիա մտնելով որպես հաղթող, սովետական մարդը ֆաշիզմի նկատմամբ իր ատելությունը չփոխադրեց գերմանական ժողովրդի վրա։ Դեռևս որոտում էին մարտերը, իսկ սովետական մարդը գերմանական ժողովրդին արդեն օգնում էր կազմակերպելու խաղաղ կյանքը։

Վիթխարի, աննախադեպ ճակատամարտերում լայնորեն բացահայտվեց մեր զորավարների ու զորապետների տաղանդը։ Ժողովրդի ծոցից ելած, կուսակցության դաստիարակած այդ զինվորականները իրենց դրսևորեցին որպես հայրենական ռազմարվեստի լավագույն ավանդույթների արժանավոր ժառանգորդներ և շարունակողներ։ Ուժեղ, փորձված հակառակորդի հետ բախվելիս ի հայտ եկավ սովետական ռազմագիտության և զորավարական մտքի գերազանցությունը՝ ստրատեգիական կանխատեսությունը, ընդունվող վճիռների ստեղծագործական բնույթը, հաստատակամությունն ու ակտիվությունը առաջադիր նպատակներին հասնելու գործում, զինվորների ու սպաների մարտական բարձր ոգին նորագույն տեխնիկայի խորտակիչ հզորության հետ միաձույլ ամբողջություն դարձնելու ընդունակությունը։ Հայրենական մեծ պատերազմի ականավոր զորավարների ու զորապետների պանծալի անունները գիտե ողջ երկիրը։ Նրանցով հպարտանում են ճակատայինները, մեր զինված ուժերը, բոլոր սովետական մարդիկ։

Պատերազմի համաժողովրդական բնույթը իր վառ արտահայտությունը գտավ երկու միլիոնանոց աշխարհազորի ստեղծման մեջ, ժամանակավորապես թշնամու օկուպացրած տարածքում ընդհատակայինների պայքարի մեջ, պարտիզանական շարժման լայն ծավալման մեջ։ Ռազմաճակատի մյուս կողմում, թշնամու թիկունքում կար ևս մի ճակատ՝ պարտիզանականը։ Ավելի քան մեկ միլիոն ժողովրդական վրիժառուներ են մասնակցել մարտերին։ Հողն այրվում էր ագրեսորի ոտքերի տակ, և զավթիչների բազմաթիվ դիվիզիաներ իրենց կործանումը գտան այդ արդար կրակի մեջ։

«Պատերազմը,— նշել է Վլադիմիր Իլյիչ Լենինը,— ամեն մի ազգի բոլոր տնտեսական ու կազմակերպական ուժերի ստուգումն է»։ Եվ սովետական էկոնոմիկան պատվով դիմացավ այդ դժվարագույն ստուգմանը։ Արդյունա-



բերության ու գյուղատնտեսության սոցիալիստական կազմակերպումը համոզիչ կերպով ապացուցեց իր առավելությունները։

Խիստ դժվարին իրադրության մեջ, այնպիսի ժամկետներում, որոնք հիմա էլ աներևակայելի են թվում, մենք կարողացանք երկրի խորքը փոխադրել ավելի քան մեկուկես հազար խոշոր գործարան, զգալի նյութական ռեսուրսներ ու արժեքներ։ Թշնամու հարձակումից արդեն մեկ տարի հետո Սովետական Միության արևելյան շրջաններում թողարկվում էր ամբողջ ռազմական արտադրանքի ավելի քան երեք քառորդը։ Սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունն առանձնապես համոզիչ դրսևորվեց նրա բարձր արդյունավետության մեջ։ Թողարկելով երեք-չորս անգամ քիչ պողպատ ու ածուխ, քան Գերմանիան և նրա օկուպացրած երկրները, մենք արտադրում էինք գրեթե կրկնապատիկ շատ ռազմական տեխնիկա։

ՍՍՀՄ-ի ռազմական էկոնոմիկայի արդյունավետությունն ապահովվում էր պետական պլանի անսասան հեղինակությամբ, կարգապահությամբ և հանձնարարված գործի համար խիստ պատասխանատվությամբ, բանվորների, կոլտնտեսականների, ինժեներների, կոնստրուկտորների և գիտնականների ձեռներեցությամբ, հնարամտությամբ, համարձակ մտքով և անձնվեր աշխատանքով, արտադրության հրամանատարների կազմակերպչական ընդունակություններով։

Ահեղ վտանգի ժամանակ մեր երկիրը հիրավի միասնական ռազմաճամբար դարձավ։ Անօրինակ հերոսություն և տոկունություն ցուցաբերեց սովետական բանվոր դասակարգը։ Ամենադժվարին պահերին բանվորական գումարտակները համալրում էին մարտնչող բանակի շարքերը, արտադրամասերում աշխատանքը չէր ընդհատվում նույնիսկ այն ժամանակ, երբ թշնամին կանգնած էր բառացիորեն գործարանների պատերի մոտ, իսկ արկերն ու ռումբերը պայթում էին կողքին։ Բանվոր դասակարգը բարձր գիտակցականությամբ ու կազմակերպվածությամբ մի անգամ ևս հաստատեց սովետական հասարակության առաջատար ուժի իր դերը, անհրաժեշտ ամեն ինչ արեց հաղթանակի համար։

Պատերազմում ամրության քննություն հանձնեցին բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, գյուղատնտեսության սոցիալիստական սիստեմը, կոլտնտեսային կարգը։ Չնայած նրան, որ երկրի հիմնական շտեմարանները զավթել էր թշնամին, մարդկանց, տեխնիկայի պակաս էր զգացվում, գյուղի աշխատավորներն ապահովում էին պարենի մատակարարումը ռազմաճակատին ու թիկունքին, հումքի մատակարարումը՝ արդյունաբերությանը։ Կոլտնտեսականները, սովխոզների, մեքենատրակտորային կայանների աշխատողները հնարավոր ամեն ինչ անում էին թշնամու ջախջախման համար և ըստ արժանվույն կատարեցին իրենց հայրենասիրական պարտքը հայրենիքի հանդեպ։

Հաղթելու՝ ամբողջ ժողովրդի համար ընդհանուր ձգտումով էր ապրում սովետական մտավորականությունը։ Մեր գիտնականների, կոնստրուկտորների և ինժեներների տաղանդով ու աշխատանքով ստեղծվում էին ինքնաթիռների ու տանկերի, հրանոթների ու ականանետների, այլ սպառազինության այնպիսի տեսակներ, որոնք իրենց բնութագրերով գերազանցում էին հակառակորդի ռազմական տեխնիկան։ Դա իրոք հաղթանակի հզոր զենք էր։

Մարդկանց ոգևորում և թշնամու դեմ ցասումնալի կռվի էին հանում հրապարակախոսության հատու տողերը և գեղարվեստական արձակի վառ կերպարները, հայրենասիրական երգերը, ֆիլմերը, ներկայացումները, բանաստեղծությունները, պլակատները։

Ժողովրդի հիշողության մեջ ընդմիշտ կմնա սխրագործությունը հրաշունչ քառասնական թվականների կոմերիտականների, ամբողջ երիտասարդության, որոնց ջահելությունն ու պատանեկությունը համընկան պատերազմին։ Թշնամու դեմ կռվի գնաց այն սերունդը, որը ծնվել էր Հոկտեմբերից հետո, ձևավորվել սոցիալիստական կարգերի կողմից, մանկուց տոգորվել այդ կարգերի հեղափոխական, կոլեկտիվիստական բարոյականությամբ ու հոգեբա-

նությամբ։ Եվ նա չվարանեց, համարձակ դուրս եկավ կրակագիծ, հաղթահարեց պատերազմի դժնդակ տարիների բոլոր փորձությունները, ցույց տալով, որ չի կարելի հաղթել այնպիսի մի երկրի, որն ընդունակ է աճեցնելու և դաստիարակելու այդպիսի երիտասարդություն։

Այդպես էր ռազմաճակատում, այդպես էր նաև թիկունքում։ Ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլտնտեսային և սովխոզային դաշտերում առանց ձեռքերը ծալելու աշխատում էին պատանիներն ու աղջիկները, դեռահասները։ Ընդունված է ասել, որ նրանք աշխատում էին, չիմանալով ինչ բան է հոգնությունը։ Իհարկե գիտեին։ Բայց գիտեին նաև այն, որ իրենց աշխատանքը շատ է հարկավոր մարտնչող հայրենիքին։ Եվ այսօր մեր միլիոնավոր ժամանակակիցների հիշողության մեջ առանձնապես թանկ են մնում նրանց ռազմական պատանեկությունը, ռազմական մանկությունը։

Մենք խորին շնորհակալության զգացումով ենք խոսում սովետական կանանց հերոսության մասին։ Այո՛, պատերազմը կնոջ գործ չէ։ Բայց, արհամարհելով վտանգը, նրանք տղամարդկանց հետ հավասար գրոհի էին գնում, քաջաբար կռվում ատելի թշնամու դեմ, ռազմի դաշտից դուրս բերում զինվորներին, նրանց խնամում ու ոտքի կանգնեցնում բուժսանգումարտակներում և հոսպիտալներում։ Միլիոնավոր մարտիկներ իրենց կյանքի համար պարտական են կանանց արիությանն ու գթասրտությանը։ Ժողովուրդը երբեք չի մոռանա նրանց փառապանծ սխրանքները նաև աշխատանքային ճակատում։ Ռազմական կենցաղի բոլոր ծանրությունները, կորուստների ողջ ցավը կրեցին սովետական կանայք, դրսևորելով վիթխարի կամք, պահպանելով անմար սիրո ջերմությունը։ Անսահման է մեր հիացմունքը սովետական հայրենասեր կանանց հանդեպ, խորն է մեր երախտագիտությունն այն ամենի համար, ինչ նրանք արեցին հանուն հաղթանակի։

Մեր Երկրի դեմ ագրեսիա պլանավորելով՝ ֆաշիստները հույս ունեին իրար հետ գժտեցնել Սովետական Միության ժողովուրդներին, ազգային երկպառակություն հրահրել։ Իրականությունն ի չիք դարձրեց այդ հաշիվները։

Մարդկությունը չգիտե մի ուրիշ այնպիսի օրինակ, երբ պատերազմը այդքան սերտորեն համախմբեր երկրի բոլոր ազգերին ու ազգություններին ագրեսորի դեմ պայքարելու համար։ Ժողովուրդների եղբայրական միասնության մեջ ողջ ուժով դրսևորվեցին լենինյան ազգային քաղաքականության իմաստնությունն ու հեռատեսությունը։ Սոցիալիստական մեծ Միությունը մնաց ամուր և անսասան։

Ռազմաճակատում ու թիկունքում վիթխարի աշխատանքը ղեկավարում էին կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն, պաշտպանության պետական կոմիտեն՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի գլխավոր քարտուղար Իոսիֆ Վիսարիոնովիչ Ստալինի գլխավորությամբ։

Իսկական մարտական շտաբներ, մասսաների քաղաքական կազմակերպիչներ դարձան կուսակցական կոմիտեները։ Ամենուրեք՝ զինվորական խրամատներում, պարտիզանական ջոկատներում և ընդհատակում, գործում էին կուսակցական կազմակերպություններ։ Բոցաշունչ խոսքով, անձնական օրինակով մարտիկներին ոգևորում էին քաղաշխատողները։ «Հայրենական մեծ պատերազմի պատմության մեջ,— գրել է «Պրավդան» 1942 թվականին,— որպես փառապանծ ու պատվավոր կերպարներից մեկը կմտնի քաղղեկի կերպարը՝ ավտոմատը ձեռքին, քողարկման խալաթով ու սաղավարտով, առջևից ընթացող և մարտիկներին առաջնորդող դեպի վեհ ու ազնիվ նպատակի իրագործում՝ գերմանացի ֆաշիստների ջախջախում և իր հայրենիքի ազատագրում»։

Կոմունիստները գնում էին պայքարի ամենավտանգավոր, ամենապատասխանատու տեղամասերը։ Այն տարիներին յուրաքանչյուր հինգ կոմունիստից չորսը գտնվում էր զորքերում կամ պաշտպանական ձեռնարկություններում։ Այնտեղ էին ուղարկվել Կենտրոնական կոմիտեի անդամները, կուսակցական լավագույն կադրեր։ Երեք միլիոն կոմունիստներ զոհվեցին ֆաշիստ զավթիչների դեմ մղված մարտերում։ Այն հերոսական տարիներին հինգ միլիոնից ավելի մարդ ընդունվեց կուսակցության մեջ։



Լենինյան կուսակցությունը դարձավ մարտի ելած կուսակցություն՝ ի մի ձուլվելով կռվող ժողովրդի հետ։ Մեր պատմության դժվարագույն՝ պատերազմական հատվածում կուսակցությունը գտնվեց հայրենիքի բախտի համար իր վիթխարի պատասխանատվության բարձրության վրա և երկիրը հասցրեց հաղթանակի։ Պատերազմի տարիներին ամրապնդվեց մեր կուսակցության բարոյաքաղաքական հեղինակությունը, ժողովրդի աչքում է՛լ ավելի բարձրացավ կոմունիստի կոչումը։ Եվ մենք՝ լենինյան կուսակցության անդամներս, միշտ թանկ կգնահատենք այդ ու կհպարտանանք դրանով։

Պատերազմում հաղթեցին ո՛չ միայն մեր զենքը, էկոնոմիկան և քաղաքական կարգերը։ Դա հաղթանակն էր այն գաղափարների, հանուն որոնց կատարվեց հեղափոխությունը, հանուն որոնց կռվում ու մեռնում էին սովետական մարդիկ։ Դա հումանիզմի և արդարության վեհ սկզբունքները կրող մեր գաղափարախոսության և բարոյականության հաղթանակն էր ֆաշիզմի մարդատյաց գաղափարախոսության դեմ։

Սովետական բանակը պատվով կատարեց իր ազատագրական մեծ առաքելությունը։ Նա ստրկացված Եվրոպա եկավ որպես ազատարար, մարտնչում էր հանուն այն բանի, որ վերջ դնի պատերազմին ու ֆաշիզմին, որ Եվրոպայի ժողովուրդներն ապրեն կայուն և հուսալի խաղաղության պայմաններում։

Նշելով Հաղթանակի օրը, մենք պատշաճն ենք մատուցում դաշնակից բանակների՝ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի բանակների զինվորների ռազմական արիությանը։ Մենք երբեք չենք մոռանա Հարավսլավիայի ժողովրդի և նրա ժողովրդաազատագրական բանակի տոկունությունն ու արիությունը։ Մենք մեծապես հարգում ենք օկուպացված, բայց չհնազանդեցված Լեհաստանի անձնվեր պայքարը։ Մեր մարտիկների հետ ուս-ուսի՝ սովետական հողում, ապա նաև իրենց երկրներն ազատագրելիս մարտնչում էին լեհական զորքն ու չեխոսլովակյան բանակը։

Հիտլերիզմի ջախջախման գործում իրենց ավանդը ներդրին Բուլղարիայի, Ռումինիայի և Հունգարիայի պարտիզանները, ընդհատակային հայրենասերները, իսկ պատերազմի վերջին փուլում նրանց բանակները և զորամասերը։ Օկուպանտների դեմ համառորեն կռվում էին ալբանական և հույն ժողովուրդները։ Մենք հիշում ենք այն անհավասար պայքարը, որ հիտլերյան վարչակարգի դեմ արիաբար մղում էին գերմանացի կոմունիստները, բոլոր հակաֆաշիստները։

Սովետական մարդիկ բարձր են գնահատում Դիմադրության շարժման մարտիկների խիզախությունը։ Նրա առաջին շարքերում ընթանում էին Ֆրանսիայի, Իտալիայի, Նորվեգիայի, Դանիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Արևմըտյան Եվրոպայի մյուս երկրների կոմունիստական կուսակցությունները։ Նրանք ժողովուրդներին համախմբում և ոտքի էին հանում պայքարելու ընդդեմ նացիստական բռնակալության, հանուն իրենց ազատության և ազգային անկախության։ Շատ կոմունիստներ իրենց կյանքը դրեցին թշնամու դեմ հաղթանակի զոհասեղանին։ Ֆրանսիայի կոմկուսը պատմության մեջ մտել է որպես գնդակահարվածների կուսակցություն։

Մեր երկիրը, մինչև վերջ հավատարիմ մնալով երկրորդ համաշխարհային պատերազմում իր դաշնակցային պարտավորություններին, հսկայական դեր խաղաց միլիտարիստական Ճապոնիայի ջախջախման գործում։ Մենք գործում էինք չին մեծ ժողովրդի հետ մարտական սերտ համագործակցությամբ։ Մեզ հետ միասին ընդհանուր թշնամու դեմ ակտիվ կռվում էին Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության ռազմիկները։ Ճապոնացի զավթիչների դեմ համառ պայքար էին մղում Վիետնամի, Կորեայի, Ասիայի մյուս երկրների հայրենասերները։

Անդրադառնալով այն ժամանակվա իրադարձություններին, վերհիշելով ժողովուրդների համատեղ ճակատամարտն ընդդեմ ընդհանուր թշնամու՝ մենք հպարտությամբ ենք նշում, որ երկրորդ համաշխարհային պատերազմի ելքը

վճռվեց սովետա-գերմանական ռազմաճակատում։ Հենց այստեղ ֆաշիստ ագրեսորը կրեց իր բոլոր կորուստների ավելի քան 70 տոկոսը։

Մեծ ու անմոռանալի է սովետական ժողովրդի սխրագործությունը Հայրենական մեծ պատերազմում։ Անսահման շատ բան են ներառել պատերազմի տարիները՝ կորուստների վիշտն ու հաղթանակի երջանկությունը, կատաղի մարտերի խիզախությունն ու աշխատանքային առօրյայի պարզ վեհությունը։

Մեր հաղթանակը բարձրացրեց Սովետական Միության միջազգային հեղինակությունը։ Դա սովետական մարդկանց մեջ հայրենասիրական զգացմունքների հորձանք առաջացրեց։ Մեզ համար հաղթանակը եղել և մնում է ոգեշնչման աղբյուր, որը մեզ միշտ եռանդ կտա ստեղծարար վիթխարի պլանների կենսագործման, հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հզորության ամրապնդման և հետագա բարգավաճման համար։

Հայրենական մեծ պատերազմում նվաճված Հաղթանակը այնպիսի մի տոն է, որը միշտ մեզ հետ կլինի։

## II

Ընկերնե՛ր, ամենագլխավորը, ամենաարժեքավորը, որ տվեց մեզ հաղթանակը, խաղաղության պայմաններում ապրելու և աշխատելու հնարավորությունն է։ Պատերազմի փորձությունը ցույց տվեց. մեր հասարակարգը անպարտելի է, նրա կենսական ուժերն անսպառ են։

Խաղաղ ժամանակները ներկայացնում են իրենց բարձր պահանջները, խստապահանջ ստուգման ենթարկում հասարակության էկոնոմիկայի անշեղ աճ, հասարակական հարաբերությունների անընդհատ կատարելագործում, մարդկանց աշխատանքի ու կյանքի պայմանների բարելավում ապահովելու ունակությունը։

Ամփոփելով անցած քառասուն տարիների արդյունքները՝ կարելի է լիակատար հիմունքով պնդել, որ խաղաղ զարգացման ճանապարհին սոցիալիզմը համոզիչ կերպով ցուցադրել է իր հսկայական հնարավորություններն ու առավելությունները։

Ավագ սերնդի մարդիկ հիշում են, թե ավերմունքի ինչ ահավոր պատկեր էին իրենցից ներկայացնում օկուպանտներից ազատագրված շրջանները. ծխացած հող, աների մոխրակույտեր, մարած դոմնաներ, մեռած ածխահանքեր։ Ավերակույտերի էին վերածվել գրեթե 1.700 քաղաքներ ու ավաններ, 70 հազար գյուղեր։ Մոտ 25 միլիոն մարդ անօթևան էր մնացել։ Տասնյակ հազարների էին հասնում շարքից հանված արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկությունները։ Պատերազմի բոցերը կլանել էին երկրի ազգային հարստության գրեթե մեկ երրորդը, որն ստեղծվել էր ժողովրդի աշխատանքով։ Ու երբեք և ոչնչով չի կարելի չափել ամենաահավոր, անդառնալի կորուստը՝ միլիոնավոր սովետական մարդկանց կյանքը։

Սոցիալիզմի հակառակորդները այն հույսն էին փայփայում, թե մեր երկրին պատճառված ավերածություններն ու վնասը նրան կդատապարտեն հետամնացության և կախման մեջ կդնեն Արևմուտքից։ Սակայն այս անգամ էլ սխալվեցին իրենց հաշիվներում։ Բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության համառ, անձնվեր աշխատանքը մոխրակույտերից վերածնեց թշնամու ավերած քաղաքներն ու գյուղերը, գործարաններն ու ֆաբրիկաները։ Ընդամենը երեք տարի պահանջվեց, որպեսզի ՍՍՀՄ-ը վերականգնի արտադրության նախապատերազմական մակարդակը արդյունաբերության մեջ և հինգ տարի՝ գյուղատնտեսության մեջ։

Դա մի նոր սխրանք էր, սխրանք արարման ասպարեզում, որ սովետական մարդիկ գործեցին ետպատերազմյան դժվարին տարիներին։ Այն ամենայն խորությամբ բացահայտեց, թե ինչի է ընդունակ սոցիալիստական շինարարության հոյակապ նպատակներով ոգեշնչված ժողովուրդը։ Այդ ժամա-



նակվանից ի վեր երկիրը մեծապես առաջ է ընթացել տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր զարգացման բոլոր ասպարեզներում։

**Սովետական հասարակությունն այսօր** բարձր զարգացած էկոնոմիկա ունեցող հասարակություն է։ Նախապատերազմական մակարդակի համեմատությամբ ավելի քան 16 անգամ աճել է երկրի ազգային եկամուտը, 24 անգամ ավելացել արդյունաբերական արտադրանքի թողարկումը։ Մեր ինդուստրիան կրկնապատիկ արագ է քայլել, քան զարգացած կապիտալիստական պետությունները։ Այսօր ՍՍՀՄ-ը արտադրում է աշխարհի ցանկացած այլ տերությունից շատ չուգուն ու պողպատ, նավթ ու գազ, ցեմենտ ու հանքային պարարտանյութ, հաստոց, տրակտոր ու հացահատիկի կոմբայն, շատ այլ արտադրատեսակներ։

Խոր փոփոխություններ են տեղի ունեցել արտադրության կառուցվածքի և գիտատեխնիկական մակարդակի մեջ։ Ստեղծվել են արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են՝ ատոմայինը, հրթիռատիեզերականը, էլեկտրոնայինը և մանրէակենսաբանականը։ Կենտրոնում և Ուրալում, Սիբիրում և Հեռավոր Արևելքում, Միջին Ասիայում և Անդրկովկասում, բոլոր ռեգիոններում ստեղծվել կամ կազմավորվում են արտադրական հզոր համալիրներ։ Երկիրը պատված է էներգետիկ գծերի, նավթամուղների և գազամուղների ճյուղավորված ցանցով։ Հազարավոր կիլոմետրերով ձգվել են ջրանցքները, վերափոխվել են երբեմնի չորային տափաստանները, բերրիացել են ճահճուտները։ Հայրենիքի տնտեսական քարտեզը այդ տասնամյակների ընթացքում հիրավի անճանաչելի է դարձել։

Էապես փոխվել է հասարակության գլխավոր արտադրողական ուժը, նրա ստեղծարար պոտենցիալը։ ՍՍՀՄ-ը ներկայումս ունի որակյալ, բարձրակիրթ կադրեր, զգալիորեն բարձրացել են բանվորների ու կոլտնտեսականների պրոֆեսիոնալ վարպետությունը, ընդհանուր կուլտուրան և մասնագիտական գիտելիքները։ Մեզ մոտ ստեղծվել է ինժեներների ու գիտնականների մի խոշորագույն ջոկատ։

Ետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական գիտությունն ու տեխնիկական միտքը բազմիցս ակնառու հաջողությունների են հասել համաշխարհային գիտատեխնիկական առաջադիմության կարևորագույն ուղղություններում։ Սովետական Միությունում կառուցվեցին առաջին ատոմային էլեկտրակայանը և առաջին ատոմային սառցահատը, արձակվեց առաջին արբանյակը։ Սովետական քաղաքացի Յուրի Գագարինը տիեզերական ուղեծրի բարձունքից Երկիրը տեսած առաջին մարդն էր։

**Սովետական հասարակությունն այսօր** ժողովրդի հարաճուն բարեկեցության հասարակություն է։ Էկոնոմիկայի արագ վերելքը հնարավորություն է ընձեռել առանց թուլացնելու ուշադրությունը ժողովրդական տնտեսության պոտենցիալի հետագա մեծացման նկատմամբ, սկսել շրջադարձ դեպի աշխատավորների պահանջմունքների ավելի լրիվ բավարարում, այստեղ էլ հասնել տպավորիչ արդյունքների։ Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները նախապատերազմական մակարդակը գերազանցել են ավելի քան 6 անգամ։ Հսկայական թափ է ստացել բնակարանային շինարարությունը։ Նկատելիորեն ընդլայնվել է հիվանդանոցների ու պոլիկլինիկաների, մանկապարտեզների ու մանկամսուրների, կենցաղային սպասարկման հիմնարկությունների ցանցը։

**Սովետական հասարակությունն այսօր** ժողովրդի բարձր կրթվածության ու կուլտուրայի, նրա հոգևոր հարուստ կյանքի հասարակություն է։ Եթե պատերազմից առաջ առավելապես ֆիզիկական աշխատանքով զբաղված աշխատողների շրջանում հարյուրից միայն հինգ մարդ ուներ բարձրագույն կամ միջնակարգ կրթություն, ապա ներկայումս նրանց թիվը հասել է 82-ի։ Մեր ժամանակակիցը կուլտուրական և քաղաքական լայն մտահորիզոնի, մտավոր բարձր պահանջմունքների տեր մարդ է։

**Սովետական հասարակությունն այսօր** մի հասարակություն է, որտեղ լուծված են սոցիալական խոշորագույն պրոբլեմները։ Հասունության նոր

աստիճանի է բարձրացել հասարակական հարաբերությունների ողջ համակարգը, ամրապնդվել է բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության դաշինքը։ Մենք է՛լ ավելի ենք առաջ ընթացել քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման ուղիով։ Ազգերի և ազգությունների բարգավաճումը օրգանապես զուգորդվում է նրանց բազմակողմանի մերձեցման հետ։ Յուրաքանչյուր մարդու գիտակցության մեջ և սրտում խորապես մտել է միասնական ընտանիքին՝ սովետական ժողովրդին որպես նոր, պատմության մեջ աննախադեպ սոցիալական և ինտերնացիոնալ ընդհանրությանը պատկանելու զգացումը։

Սովետական հասարակությունն այսօր իսկական, իրական դեմոկրատիայի, քաղաքացիների արժանապատվության և իրավունքների հարգման, նրանց բարձր պատասխանատվության հասարակություն է։ Ավելի ու ավելի է ընդլայնվում ու ակտիվանում աշխատավորների մասնակցությունը իրենց երկրի, իրենց կոլեկտիվի գործերին, կատարելագործվում է ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման համակարգը։

Մեծ հաղթանակից քառասուն տարի անց Սովետական Միությունը հզոր ու բարգավաճ մի տերություն է, որը վստահորեն հարթում է կոմունիստական ապագայի ուղին։

Մեր հաջողություններն ակնհայտ են։ Բայց զարգացման դիալեկտիկան այնպիսին է, որ նվաճված բնագծերն ընդլայնում են պատմական հորիզոնները, ժողովրդի առջև դնում ավելի բարդ, պատասխանատու խնդիրներ։ Այսպիսի խնդիրներ են այսօր ծառացած նաև մեր առջև։ Դրանց էությունը հասարակության, նրա էկոնոմիկայի, սոցիալ-քաղաքական հարաբերությունների ու հաստատությունների համակարգի, միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքի ու կյանքի պայմանների ամբողջ ընդհանրության որակական նոր վիճակի ձեռքբերման անհրաժեշտությունն է։

Հասունացած հրատապ պրոբլեմների լուծմանն էր նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը։ Կուսակցությունը մեր օրերի գլխավոր խնդիրը համարում է սովետական հասարակության սոցիալ-տնտեսական առաջընթացի էական արագացումը։ Այն թելադրված է կյանքի ողջ ընթացքով՝ ինչպես ներքին պայմաններով, այնպես էլ միջազգային իրադրությամբ։ Խոսքը, նախ և առաջ, ժողովրդական տնտեսության ինտենսիվ և դինամիկ զարգացման մասին է, որն ամբողջովին հենվում է գիտատեխնիկական մտքի նորագույն նվաճումների վրա։ Դա այն հիմքն է, որը հնարավորություն կընձեռի ապահովելու ժողովրդի բարեկեցության հետագա աճ, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդում, զարգացած սոցիալիզմի բազմակողմանի կատարելագործում։

Տնտեսական զարգացման գլխավոր չափանիշն այժմ ռեսուրսների լավագույն օգտագործման պայմաններում վերջնական բարձր արդյունքների ձեռքբերումն է։ Այս տեսանկյունից է անհրաժեշտ գնահատել ստեղծվող տնտեսական իրավիճակը։ Սեղմ ժամանակամիջոցում, պատմական կարճ ժամկետներում մենք պարտավոր ենք դուրս գալ արտադրողական աշխատանքի, արտադրանքի որակի և ամբողջությամբ վերցված արտադրության արդյունավետության ամենաառաջավոր բնագծերը։ Այսպիսին է օրվա տիրական պահանջը։

Այդ նպատակին հասնելու հիմնական ուղին գիտատեխնիկական առաջընթացն է։ Մեր զարգացման տեմպերը, կապիտալիզմի հետ տնտեսական մրցության ընթացքը մեծապես պայմանավորված կլինեն այն բանով, թե մենք ինչպես կլուծենք դրա արագացման, ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արդյունավետ և արագ օգտագործման պրոբլեմը։

Մի խոսքով, պատմական նոր փուլում սովետական հասարակության առջև ծառացող խնդիրները բացառիկ մեծ են։ Բայց մենք բոլոր հնարավորություններն ունենք դրանց հաջող լուծման համար և անպայման կհասնենք նախատեսված նպատակին։



Մենք վստահ ենք, որ սոցիալիստական սիստեմի առավելությունները լավ կծառայեն սովետական հասարակությանը նաև պատմական նոր պայմաններում։ Բայց դրա համար կարևոր է ձեռնարկել անհետաձգելի և մեծապես նոր միջոցներ, որպեսզի սոցիալիստական տնտեսավարման, տնտեսական և սոցիալական կառավարման ձևերն ու մեթոդները համապատասխանեցվեն արդի պայմաններին, ինչպես նաև հեռանկարային զարգացման պահանջմունքներին։

Կառավարման կատարելագործման մեր ստրատեգիայի հիմքում ընկած է լենինյան այն գաղափարը, որ «սոցիալիզմը պետք է իր ձևով, իր պրիոմներով, ավելի կոնկրետ, ասենք, սովետական պրիոմներով իրականացնի այդ առաջընթաց շարժումը»։ Հարկավոր է տնտեսական մեխանիզմին տալ այնպիսի ձևեր ու կառուցվածքներ, որոնք առավելագույն չափով խթանեին արտադրության արդյունավետության բարձրացումը, որակական ցուցանիշների բարելավումը, արտադրությունը նպատակամղեին գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը։

Մեր բոլոր նվաճումների գրավականը ժողովրդի կենդանի ստեղծագործությունն է։ Իրենց սոցիալիստական հայրենիքի ճակատագրով աշխատավորների խոր շահագրգռություն, նրանց աշխատանքային և քաղաքական ակտիվություն. ահա թե ինչն է միշտ հզոր արագացում տվել և տալիս հասարակության առաջընթացին, հնարավորություն ընձեռել հաջողությամբ հաղթահարելու բոլոր դժվարություններն ու խոչընդոտները։ Եվ այժմ կարևոր է առավել լրիվ չափով ասպարեզ բացել մասսաների հասարակական նախաձեռնության համար, այն նպատակամղել սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու արմատական պրոբլեմների լուծմանը։

Ոչինչ այնպես չի զարգացնում աշխատավոր մարդու ակտիվությունը, ինչպես սոցիալական արդարության սկզբունքի անշեղ իրականացման նկատմամբ նրա վստահությունը։ Կուսակցությունն ամեն ինչ կանի հանուն դրա։ Ամուր պատնեշ դնել սոցիալիստական սկզբունքներից կատարվող շեղումներին, ամեն կարգի բացասական երևույթների ճանապարհին, փակել անաշխատ եկամուտների բոլոր աղբյուրները, միաժամանակ բարձրացնելով բարեխիղճ ու արդյունավետ աշխատանքի նյութական ու բարոյական խրախուսման դերը, նշանակում է լուծել սոցիալ-տնտեսական, քաղաքական և գաղափարադաստիարակչական կարևոր խնդիրներ, միլիոնավոր աշխատավորների խորապես շահագրգռել նախատեսված բնագծերի նվաճմամբ, ավելի բարձրացնել նրանց գիտակցականությունն ու կազմակերպվածությունը։

Ընդառաջ գնալով ՍՄԿԿ հերթական՝ XXVII համագումարին, նրա Կենտրոնական կոմիտեն միջոցներ է ձեռնարկում, որպեսզի կուսակցության քաղաքական կուրսը առավել լրիվ համապատասխանի հասարակական զարգացման պահանջներին, աշխատավորների ամենալայն խավերի շահերին ու իղձերին։ Հանուն դրա նա մշտապես կատարելագործում է իր աշխատանքը, կուսակցական և պետական ղեկավարման ձևերը։

Այսօր մեզ համար բացառիկ կարևոր է կարողանալ գործել, ինչպես սովորեցնում էր Լենինը, «հեղինակության ուժով, եռանդի, ավելի մեծ փորձառության, ավելի մեծ բազմակողմանիության, ավելի մեծ տաղանդավորության ուժով»։ Ավելի քիչ խոսքեր, հավաստիացումներ ու խոստումներ, ավելի շատ իրական գործեր, գործնական արդյունքներ, պատասխանատվություն և սկզբունքայնություն, ներդաշնակություն աշխատանքում, մարդկանց նկատմամբ ուշադրություն, անձնական համեստություն. ահա սրանք են բոլոր կադրերի, նրանց գաղափարայնության և բանիմացության գնահատման գլխավոր չափանիշը, սրանք են աշխատանքի ոճի ու մեթոդների նկատմամբ կուսակցական պահանջների էությունը։

Սոցիալ-տնտեսական զարգացման, աներեր և համատարած կարգուկանոնի, կազմակերպվածության ու կարգապահության ամրապնդման համար մղվող պայքարը արժանանում է սովետական մարդկանց ջերմ հավանությանն ու լիակատար պաշտպանությանը։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն,

նրա քաղբյուրոն, սովետական կառավարությունը բարձր են գնահատում ժողովրդի վստահությունը կուսակցության քաղաքականության նկատմամբ և բոլոր ջանքերը կգործադրեն արդարացնելու այն։

Կուսակցության ամբողջ քաղաքականությունը խարսխվում է սովետական մարդկանց ստեղծագործական ուժերի ու ընդունակությունների նկատմամբ խոր հավատի վրա։ Այն ժողովուրդը, որը թշնամուն հաղթեց բաց ճակատամարտում, տոկաց ետպատերազմյան վերածնության դժվարին տարիներին, ակնառու հաջողությունների հասավ սոցիալիստական հայրենիքի զարգացման գործում, հաղթանակ կտանի նաև պատմական նոր պայմաններում, ըստ արժանվույն կպատասխանի ամեն մի պահանջի, որ մեզ առաջադրում է ժամանակը։

Կուսակցությունը լավ է տեսնում երկրի առջև ծառացած խնդիրները, դրանց հաջող լուծման ուղիները, սովետական մարդկանց մոբիլիզացնում է էկոնոմիկայի նոր, հզոր վերելքի ապահովմանը՝ հանուն ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման։ Դա այն գործի արժանավայել շարունակությունն է, որի համար սովետական մարդիկ անձնվիրաբար պայքարեցին պատերազմի դաժան տարիներին և խաղաղ սոցիալիստական շինարարության տարիներին։

## III

Ընկերնե՛ր, այսօր մտքով ու սրտով վերադառնալով քառասունհինգի հաղթական գարնանը, մենք, բնականաբար, հարց ենք տալիս. արդարացե՞լ են արդյոք միլիոնավոր մարդկանց հույսերը, որոնք մարտնչեցին հանուն այն բանի, որ մենք, մեր զավակներն ու թոռները ապրենք խաղաղության ու երջանկության պայմաններում։

Այո՛, արդարացել են։ Բայց դեռ շատ անելիքներ կան թե՛ մեզ՝ ապրողներիս համար, թե՛ գալիք սերունդների համար մեր մոլորակը՝ մարդկության ընդհանուր տունը պահպանելու, մարդկանց կյանքից պատերազմը անդառնալիորեն բացառելու նպատակով։

Քառասուն տարին, ինչ չափանիշով էլ լինի՝ փոքր ժամանակամիջոց չէ։ Ժամանակն իրենն անում է. առնականացել են նրանք, ովքեր ծնվել են հաղթանակից հետո, մեծացել են նրանց երեխաները։ Մեծամասնության համար երկրորդ համաշխարհային պատերազմը մի իրադարձություն է, որը կապված չէ նրանց անձնական փորձի հետ։ Բայց պատերազմը թողել է այնպիսի ժառանգություն, որ նրա արդյունքներն ու դասերը շարունակում են ազդեցություն գործել համաշխարհային զարգացման ողջ ընթացքի ու բնույթի, մարդկանց գիտակցության վրա։

Երկրորդ համաշխարհային պատերազմը սկիզբ առավ այն բանից դեռ շատ առաջ, երբ Եվրոպայի դաշտերում և օվկիանոսների տարածքներում ծավալվեցին առաջին ճակատամարտերը։ Նրա չարագույժ ստվերը մարդկության գլխին կախվեց այն ժամանակ, երբ քաղաքագետների մի մասը չկարողացավ, իսկ մյուս մասը չցանկացավ խոչընդոտել իշխանության գլուխ հիտլերիզմի հաստատմանը։ Հիմա մենք ավելի շատ ու ավելի լավ գիտենք, քան գիտեինք այն ժամանակ, թե ով և ինչպես է ֆաշիստական կառավարող հանցախմբին օգնել զինվելու, մեծացնելու ագրեսիայի պոտենցիալը, պատրաստվելու պատերազմական ավանտյուրաների։

Քաղաքական անպատասխանատվության ծայրահեղ արտահայտություն եղան մոնոպոլիստական կապիտալի առաջատար խմբավորումների փորձերը՝ օգտագործելու գերմանական ֆաշիզմի էքսպանսիան, այն ուղղելով դեպի արևելք։ Մյունխենյան գործարքն ընդմիշտ կմնա ամոթի գրքում, ամոթ, որով պատված են այն մարդկանց անունները, ովքեր Հիտլերին այնքան համառորեն հրահրեցին հարձակվելու Սովետական Միության վրա։ Եվ պետք է տառապել քաղաքական խոր սկլերոզով՝ դա չհիշելու համար։

Այժմ արդեն այնքան էլ էական չէ, թե 30-ական թվականների բուրժուական քաղաքական ու պետական գործիչներից ովքեր էին անկեղծ մոլորության մեջ և ովքեր էին առաջնորդվում դասակարգային շահախնդրությամբ։ Պատ-



մությունը չի փոխի իր մեղադրական դատավճիռը. արևմտյան տերությունների «մյունխենյան քաղաքականությունը», հիտլերյան ագրեսիայի նկատմամբ նրանց թողտվությունը ծանր ողբերգություն դարձան Եվրոպայի բոլոր ժողովուրդների համար։ Հանցավոր էր նրանց գիծը, ովքեր, չնայած Սովետական Միության հաստատակամ կոչերին, հրաժարվեցին հանդես գալ միասնական ճակատով, որպեսզի կանգնեցնեին նացիստ արկածախնդիրներին։ Ժամանակը երբեք չի թոթափի նրանց պատասխանատվությունը տեղի ունեցած աղետի համար, որը կարելի էր կանխել, եթե սոցիալիզմի նկատմամբ թշնամանքը չկուրացներ այն ժամանակվա արևմտյան ղեկավարների աչքերը։

Ցավոք, պատմությունը կրկնվում է։ Եվ այսօր, ավելի քան երբևէ, խոսքը նրանց մեքենայությունների նկատմամբ զգոն լինելու մասին է, ովքեր աշխարհը հրում են դեպի անդունդը, այս անգամ՝ միջուկային։

Հարկավոր է պարզորոշ և լիովին պատկերացնել, թե մեր օրերում որտեղից է բխում մարդկությանն սպառնացող վտանգը։ Սովետական Միությունը հայտարարում է այդ մասին և նույն ուժով, ինչ ուժով որ մինչև պատերազմը, նախազգուշացնում սպառնացող վտանգի մասին։ Այս մասին հարկ է լինում խոսել նաև այն պատճառով, որ հիմա էլ գործի է դրվել «սովետական ռազմական սպառնալիքի» մասին չարամիտ առասպելը, որից այնքան ճղճղան կերպով օգտվում էր նացիզմը։

Որքան էլ որ փորձեն պատմությունը խեղաթյուրել նրա կեղծարարները, աշխարհի ժողովուրդները գիտեն, որ հենց Սովետական Միությունն էր առաջինը, որ տագնապ հնչեցրեց և նախազգուշացրեց ֆաշիզմի վերահաս վտանգի մասին։ Հենց կոմունիստներն էին, որ դարչնագույն ժանտախտի դեմ պայքարի հստակ ծրագիր առաջարկեցին, երբ այն դեռ սաղմնային վիճակում էր։ Վերջապես, հենց Սովետական Միությունը հանդես եկավ կապը կտրած ագրեսորին սանձահարելու մի շարք առաջարկություններով։ Բայց այս ամենը այն ժամանակ էլ էր «կոմունիստական պրոպագանդա» հայտարարվում։

Պահանջվեց, որ օկուպացվի գրեթե ամբողջ Արևմտյան Եվրոպան, գրավվի Փարիզը, ռմբակոծվի Լոնդոնը, հարձակում կատարվի Փիրլ-Հարբորի վրա, որպեսզի հօդս ցնդեին ցինիկ հաշվարկներն ու ի դերև ելնեին անհիմն հույսերը։ Պահանջվեցին կարմիր բանակի փայլուն հաղթանակները, որպեսզի ֆաշիզմի դեմ պայքարում սովետական պետության հետ համագործակցության վերաբերյալ համաձայնությունները ձեռք բերեին շոշափելի նյութական ուժ։

Ֆաշիստական սպառնալիքի ընդլայնումը արևմտյան քաղաքագետներին ստիպեց աշխարհը գնահատել նրա իրական դրսևորումներով։ Հակահիտլերյան կոալիցիայի ամբողջ փորձը անառարկելիորեն ապացուցում է. իրենց սոցիալական բնույթով հակադիր պետությունները կարող են ջանքերը միավորել ընդհանուր թշնամու դեմ մղվող պայքարում, գտնել փոխադարձաբար ընդունելի լուծումներ, ակտիվորեն գործել համատեղ նպատակի հասնելու համար։

Սովետական մարդիկ չեն մոռացել այն նյութական օգնությունը, որը դաշնակիցները մեր երկրին ցույց տվեցին։ Ճիշտ է, դա այնքան էլ մեծ չի եղել, որքան որ այդ մասին սիրում են խոսել Արևմուտքում, բայց մենք երախտապարտ ենք մնում այդ օգնության համար, այն համարելով գործողությունների խորհրդանիշ։ Եվրոպայում, թեկուզև ուշացումով, երկրորդ ճակատի բացումը էական ավանդ էր ընդհանուր պայքարում։

Ֆաշիզմի ջախջախումից հետո կոալիցիայի երկրների համագործակցության նպաստավոր մթնոլորտը, աշխարհում ստեղծված նոր իրավիճակի ռեալ ըմբռնումը արտացոլվեցին նաև ետպատերազմյան կարգավորման, դաշնակիցների՝ Թեհրանում, Յալթայում և Պոտսդամում տեղի ունեցած կոնֆերանսների որոշումներում։ Այդ որոշումները, ինչպես նաև ՄԱԿ-ի կանոնադրությունը և այն տարիների միջազգային այլ համաձայնագրեր տոգորված են համագործակցության ոգով։ Դրանք ապահովեցին ետպատերազմյան կառուցվածքի բարդ հարցերի, այդ թվում նաև տերիտորիալ հարցերի այնպիսի

կարգավորում, որը համապատասխանում էր բաղձալի խաղաղության շահերին։

Այդ ամենի մասին առանձնապես տեղին է հիշեցնել այսօր, երբ աշխարհի բոլոր ժողովուրդներն ունեն մեկ ընդհանուր թշնամի՝ միջուկային պատերազմի սպառնալիքը, մեկ ամենագլխավոր խնդիր՝ այդ սպառնալիքի վերացումը։

Այս հարյուրամյակում երկու անգամ իմպերիալիստական ուժերը համաշխարհային արյունահեղ պատերազմներ են սանձազերծել, հույս ունենալով այս ուղիով լուծել իրենց դասակարգային խնդիրները, հասնել իրենց դիրքերի ամրապնդմանը, ապահովել իրենց եսամոլական շահերի ձեռքբերումը։ Բայց պատմությունը այլ կերպ տնօրինեց։ Եվ հարկ կա՞, արդյոք, զարմանալու, որ որպես իմպերիալիզմի՝ լկտի, իր անպատժելիությանը համոզված , վստահ, որ միջազգային իրավունքը գրվում է զավթիչի բռունցքով, ահա որպես այդ իմպերիալիզմի արկածախնդրություններ սկսված երկու պատերազմներն էլ, հարկ կա՞, արդյոք, կրկնում եմ, զարմանալու, որ այդ երկու արկածախնդրություններն էլ ավարտվեցին ո՛չ միայն դրանց անմիջական նախաձեռնողների ջախջախմամբ, այլև ամեն անգամ բացեցին պատերազմ ծնած բուն սիստեմի ճգնաժամային ցնցումների մի ամբողջ շրջան։

Պաշտպանելով հայրենիքի ազատությունն ու անկախությունը՝ սովետական ժողովուրդը լուծում էր նաև ֆաշիզմից համաշխարհային քաղաքակրթությունը փրկելու ինտերնացիոնալ մեծ խնդիրը։ Ֆաշիզմի ջախջախման շնորհիվ ամրացան առաջադիմական, դեմոկրատական ուժերի դիրքերը, որը հանգեցրեց Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում նոր հասարակարգի հաղթանակին։ Բանվորների ու գյուղացիների առաջին պետությունը ծնունդ առավ նաև գերմանական հողում։ Նացիզմի և ճապոնական միլիտարիզմի դեմ մղված ժողովրդական պայքարի ընթացքում, պայքար, որը սերտորեն միաձուլվեց մասսաների սոցիալական խոր վերափոխումների ձգտման հետ, ակնբախորեն աճեց սոցիալիզմի գաղափարների ձգողականությունը, առնականացան, հզոր ուժեր դարձան շատ երկրների կոմունիստական կուսակցությունները։

Ետպատերազմյան տարիներին կազմավորվեց և մեծ ուղի անցավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ստեղծվեց սոցիալիստական պետությունների ընկերակցությունը։ Աշխարհում ամուր կերպով հաստատված նոր հասարակարգը ապացուցեց իր կենսականությունը։ Նա արթնացրեց միլիոնների ստեղծագործական ուժերը, հնարավորություն ընձեռեց ամենակարճ ժամկետներում հասնելու պատմական մասշտաբի մեծագործությունների։ Սոցիալիզմը այսօր հանդես է գալիս որպես համաշխարհային մի հզոր սիստեմ, որը հսկայական ազդեցություն է գործում մարդկության զարգացման ու նրա ապագայի վրա, խաղաղության անհաղթահարելի գործոն է և ժողովուրդների անվտանգության առհավատչյա։

Մեծ ընկերակցության պետությունները անգին փորձ են կուտակել և ունեն իրենց քաղաքականության համաձայնեցման կարգավորված մեխանիզմ։ Նրանք միասնական ճակատով են հանդես գալիս միջազգային հարցերում, հետևողականորեն պաշտպանում են խաղաղության ու զինաթափման գործը, խաղաղ գոյակցության սկզբունքները։ Այստեղ առանձնակի դեր է պատկանում Վարշավայի պայմանագրի կազմակերպությանը, նրա քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեին, դաշնակից պետությունների միացյալ զինված ուժերին։ Եվ քանի դեռ վերացված չէ խաղաղությանն ու անվտանգությանն սպառնացող վտանգը, Վարշավայի պայմանագրի անդամ երկրներն այսուհետև ևս անհրաժեշտ ամեն բան կանեն իրենց ամեն մի ոտնձգությունից պաշտպանելու համար։ Դրա հաստատումն է հաջորդ ժամկետով պայմանագրի երկարաձգումը, որը միահամուռ հավանության արժանացավ նրա բոլոր մասնակիցների կողմից։

Ետպատերազմյան աշխարհում տեղի ունեցած խոր վերափոխումները կապված են նաև գաղութատիրության փլուզման հետ։ Նախկին գաղութների



ու կիսագաղութների տեղում ստեղծվել են տասնյակ անկախ պետություններ։ Ճիշտ է, որ նրանց զարգացումն ընթացել է անհավասարաչափ. այն ունեցել է և ունի իր մակընթացություններն ու տեղատվությունները, նվաճումներն ու ողբերգությունները։ Ճիշտ է, որ զարգացող երկրները դեռ պետք է լուծեն բարդ շատ պրոբլեմներ՝ ինչպես անցյալից ժառանգված, այնպես էլ նեոգաղութատիրության քաղաքականության ծնունդ հանդիսացող։

Սակայն ճշմարիտ է նաև այն, որ այժմ ո՛չ միայն համարյա իսպառ արմատախիլ է արված գաղութատիրության սիստեմը, այլև այն, որ երիտասարդ ազգային շատ պետություններ ավելի ու ավելի նկատելի առաջադիմական դեր են խաղում համաշխարհային քաղաքականության մեջ։ Նրանք, սոցիալիստական երկրների ակտիվ աջակցությամբ, հաստատակամ պայքար են մղում հանուն նոր, ավելի արդարացի համաշխարհային տնտեսակարգի։ Արդի միջազգային կյանքի կարևոր գործոն է դարձել չմիանալու շարժումը։

Ինչպես տեսնում ենք, ընկերնե՛ր, հաղթանակից հետո անցած քառասուն տարում աշխարհի քաղաքական պատկերը փոխվել է արմատապես։

Նկատելիորեն նեղացել է իմպերիալիզմի տիրապետության ոլորտը։ Էապես պակասել են մանևրելու, իր կամքը անպատիժ կերպով սուվերեն պետություններին ու ժողովուրդներին թելադրելու նրա հնարավորությունները։ Այլ է դարձել նաև ուժերի տեղաբաշխումը հենց կապիտալիստական աշխարհի ներսում։ Երկրորդ համաշխարհային պատերազմում այնպիսի մի գիշատչի պարտությունը, ինչպիսին գերմանական իմպերիալիզմն էր, միլիտարիստական Ճապոնիայի պարտությունը, երբեմնի հզոր բրիտանական ու ֆրանսիական մրցակիցների թուլացումը ամերիկյան իմպերիալիզմին կապիտալիստական աշխարհում առաջատարի դիրք դուրս բերեցին բոլոր կարևորագույն ցուցանիշներով՝ տնտեսական, ֆինանսական, ռազմական ցուցանիշներով։ Համաշխարհային գերիշխանություն հաստատելու ԱՄՆ-ի տիրապետող դասակարգի հավակնություններին նպաստեց նաև այն, որ նա փաստորեն պատերազմում անհավատալիորեն հարստացած միակ խոշոր երկիրը դարձավ։

Իմպերիալիստական հետադեմ ուժերը, որոնց սրտովը չէին պատերազմի սոցիալական և միջազգային քաղաքական արդյունքները, արդեն ետպատերազմյան առաջին տարիներին փորձում էին յուրատեսակ պատմական ռևանշի հասնել, նեղել սոցիալիզմի և մյուս դեմոկրատական ուժերի դիրքերը։ Այդ ստրատեգիայի սուր ծայրն ուղղված էր Սովետական Միության դեմ, իսկ դրա լծակներն էին տնտեսական հզորությունը և ատոմային զենքի՝ ԱՄՆ-ի ժամանակավոր մենաշնորհը։ Վերջինս ԱՄՆ-ի կառավարող վերնախավը դիտում էր իբրև մեզ վրա և սոցիալիզմի մյուս երկրների վրա ռազմաքաղաքական ճնշում գործադրելու, բոլոր ժողովուրդներին ահաբեկելու միջոց։

Ահա թե ինչու, խոսելով ետպատերազմյան տասնամյակների արդյունքների մասին, ճիշտ չէր լինի տեսնել միայն այն արդյունքները, որ մենք անկեղծորեն ողջունում ու պաշտպանում ենք։ Ցավոք, տեղի են ունենում նաև շատ այնպիսի բաներ, որոնք հարաճուն տագնապ են պատճառում։ Իհարկե, արդի աշխարհը բոլորովին նման չէ 30-ական թվականների աշխարհին, բայց Արևմուտքում դեռևս բնավ ոչ բոլորն են հրաժարվել Սովետական Միության հետ սպառնալիքների լեզվով խոսելու փորձերից։

Արևմուտքի ռազմատենչ շրջանների հղացած «սառը պատերազմը» ոչ այլ ինչ էր, եթե ոչ երկրորդ համաշխարհային պատերազմի արդյունքները «վերանայելու», հաղթանակի պտուղներից սովետական ժողովրդին, առաջադիմության ու դեմոկրատիայի համաշխարհային ուժերին զրկելու փորձ։ Այս նպատակները, իսկն ասած, չէին էլ թաքցվում։ Դրանք իրենց արտահայտությունը գտան «սոցիալիզմը ետ շպրտելու», «զանգվածային վրիժառության», «պատերազմի եզրին հավասարակշռության» գաղափարախոսության ու քաղաքականության մեջ և այլն։ Հետևանքը եղավ այն, որ միջազգային վստահությունը խախտվեց, իսկ հակահիտլերյան կոալիցիայի շրջանակներում սկսված պետությունների կոնստրուկտիվ համագործակցության հնարավորությունները զգալիորեն փոքրացան։

*Մարդկությանն սպառնացող պատերազմական վտանգի առաջին բնագծերում է գտնվում ամերիկյան միլիտարիզմը։ ԱՄՆ-ի քաղաքականությունը ավելի ու ավելի ռազմաշունչ բնույթ է ստանում, դարձել է միջազգային հարաբերությունների մշտական բացասական գործոն, որը մենք չենք կարող հաշվի չառնել։ Այդ երկրի կառավարող ընտրախավի ագրեսիվ նկրտումները դրսևորվում են ռազմաստրատեգիական հավասարակշռությունը՝ միջազգային անվտանգության այդ հիմքը, խարխլելու, սպառազինությունների, առաջին հերթին միջուկային սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու փորձերի մեջ, տիեզերական տարածությունը ռազմականացնելու վտանգավոր պլանների մեջ։*

*Մշակվում են միջուկային զենքի օգտագործման բարբարոսական դոկտրիններ և կոնցեպցիաներ, երկրագնդի բոլոր աշխարհամասերում ստեղծված են հարյուրավոր ռազմական բազաներ ու օբյեկտներ։ Պետական տեռորիզմի քաղաքականություն է վարվում Նիկարագուայի դեմ, չհայտարարված պատերազմ է մղվում Աֆղանստանում։*

*ԱՄՆ-ը փորձում է միջազգային ընկերակցությանը պարտադրել ինչ-որ բացառիկության և պատմության մեջ հատուկ դեր խաղալու իր հավակնությունները։ Միայն սրանով կարելի է բացատրել «կենսականորեն կարևոր շահերի գոտիների», ուրիշ պետությունների ներքին գործերին միջամտելու, Վաշինգտոնի քմահաճույքի համեմատ սովերեն երկրներին ու ժողովուրդներին «խրախուսելու» կամ «պատժելու» «իրավունքի» նրա կայսերական հայտերը։ Խաչ է քաշվում նույնիսկ սեփական քաղաքական և իրավաբանական պարտավորությունների վրա։*

*Հարկավոր է որոշակիորեն ասել նաև արևմտագերմանական ռևանշիզմի վտանգի ուժեղացման մասին, որի վերակենդանացմանն այնքան ակտիվորեն մասնակցում է ԱՄՆ-ի ներկայիս ղեկավարությունը։ Յոթ առաջատար կապիտալիստական պետությունների ղեկավարները, օրերս հավաքվելով Բոննում, յուրովի «նշելով» երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտման 40-րդ տարեդարձը, ձեռք բարձրացրին նույնիսկ Եվրոպայի տերիտորիալ-քաղաքական իրողությունների վրա, որոնք արգասիք են հիտլերյան Գերմանիայի ջախջախման ու հետպատերազմյան զարգացման։ Եղան այնպիսի քաղաքագետներ, որոնք պատրաստ են մոռանալու և նույնիսկ արդարացնելու էսէսական մարդասպաններին, ավելին, հարգանք մատուցելու նրանց, մի բան, որը վիրավորանք է միլիոնավոր գնդակահարվածների, այրվածների և գազախցիկներում խեղդամահ արվածների հիշատակին իսկ։*

*Մեզ հաշիվ տալով պատերազմի սպառնալիքի մասշտաբների մասին, գիտակցելով մեր պատասխանատվությունը աշխարհի բախտի համար՝ մենք թույլ չենք տա ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի, Վարշավայի պայմանագրի կազմակերպության և ՆԱՏՕ-ի միջև հաստատված ռազմաստրատեգիական հավասարակշռության խախտում։ Մենք այսուհետ ևս կվարենք այդ քաղաքականությունը, քանի որ ամուր կերպով, մեկընդմիշտ յուրացրել ենք այն, ինչ մեզ սովորեցրել է անցյալը։*

*Մի խոսքով, իրադրությունը մնում է բարդ, նույնիսկ վտանգավոր, բայց մենք հավատում ենք, որ միլիտարիզմի ուժերի սանձահարման միանգամայն ռեալ հնարավորություններ կան։ Աշխարհի մարդկանց գիտակցության մեջ ամրապնդվում է այն համոզմունքը, որ գործնականում հնարավոր է հասնել պատերազմներից ու զենքից զերծ աշխարհի, այն համոզմունքը, որ այդպիսի աշխարհ կարող է կառուցվել արդեն մեր ժամանակներում, որ հանուն դրա հարկավոր է գործել ակտիվորեն, պայքարել այժմ, այսօր։*

*Այս համոզմունքը ամրապնդվում է խաղաղ գոյակցության քաղաքականության փորձով, երկու սիստեմների պետությունների համագործակցության ոլորտում գործնական արդյունքների ձեռքբերումով։ Այդպիսի օրինակներ շատ կան։ Դրանք ավելի ու ավելի լայն մասսաների դրդում են հանդես գալ միջազգային հարաբերություններում ագրեսիայի և բռնության դեմ։ Խորանում է այն բանի ըմբռնումը, որ աշխարհը կայուն կլինի միայն այն դեպքում, եթե միջազգային հարաբերությունների գերագույն, համապարփակ օրենքներ դառնան խաղաղ կոնստրուկտիվ համագործակցությունը, պետությունների իրավահավասար ու փոխշահավետ համագործակցությունը՝ անկախ նրանց հասարակական կարգից։ Կասկած չկա, որ հակապատերազմական շարժումը այսուհետ ևս կընդլայնվի, ավելի ու ավելի արդյունավետորեն խոչընդոտելով ագրեսիայի ուժերի արկածախնդրական գործողությունները։*



*Այսօր միակ խելամիտ ելքը բոլոր պետությունների ակտիվ համագործակցության կարգավորումն է հօգուտ ընդհանուր խաղաղ ապագայի, այնպիսի միջազգային մեխանիզմների և հաստատությունների ստեղծումը, օգտագործումն ու զարգացումը, որոնք հնարավորություն տային գտնելու համամարդկային շահերի հետ ազգային, պետական շահերի լավագույն հարաբերակցություններ։*

*Մենք ամենատարբեր սոցիալական ու քաղաքական ուժերի անկեղծ համագործակցության, բարի կամքի վրա հիմնված համագործակցության կոչ ենք անում՝ հանուն խաղաղության։ Խնդիրը հասարակ չէ, այն ենթակա չէ միաժամանակյա լուծման, պահանջում է բավական բարձր աստիճանի վստահություն երկրների փոխհարաբերություններում։ Իրադարձությունների ընթացքը կարելի է կտրուկ կերպով փոխել, եթե Ժնևում՝ միջուկային ու տիեզերական սպառազինությունների շուրջը վարվող սովետա-ամերիկյան բանակցություններում հնարավոր լինի հասնել շոշափելի հաջողության։ Սա է մեր համոզմունքը։*

*Մեր կարծիքով, այստեղ, հիրավի, անգնահատելի է 70-ական թվականների փորձը։ Հենց այն ժամանակ նոր պատմական պայմաններում երկու սիստեմների պետությունների համագործակցության քաղաքական, իրավական և բարոյահոգեբանական լավ հիմքեր դրվեցին, այդ թվում նաև այնպիսի զգայունակ հարցերում, ինչպիսին կողմերի անվտանգությունն է։ Բայց արդյունքները կարող էին ավելի էական լինել, եթե լիցքաթափման հաջողություններին պատասխանատու վերաբերմունք ցույց տար Արևմուտքը։*

*Մենք հաստատապես կողմնակից ենք լիցքաթափման պրոցեսի վերածնմանը։ Բայց դա չի նշանակում սոսկական վերադարձ այն բանին, ինչ ձեռք էր բերվել 70-ական թվականներին։ Անհրաժեշտ է ձգտել շատ ավելիին։ Լիցքաթափումը, մեր տեսակետից, քաղաքականության վերջնական նպատակը չէ։ Լիցքաթափումը անհրաժեշտ, բայց ընդամենը միայն անցումային փուլ է զենքով ծանրաբեռնված աշխարհից դեպի միջազգային անվտանգության հուսալի ու համապարփակ համակարգ։*

*Սովետական Միությունը պատրաստ է ընթանալու այդ ճանապարհով։ Կառավարությունների, պետական պատասխանատու գործիչների գերագույն պարտականությունը պետք է դառնան միջուկային պատերազմի վտանգի վերացման ամեն տեսակ հնարավորությունների որոնումները։*

*Այսօր, ամենքիս համար հիշարժան տարեդարձի օրը, կուզենայի մեկ անգամ էլ կրկնել. Սովետական Միությունը վճռականորեն հանդես է գալիս պատերազմներից զերծ աշխարհի, զենքից զերծ աշխարհի օգտին։ Մենք կրկին ու կրկին հայտարարում ենք. երկու սիստեմների պատմական մրցության ելքը չի կարելի վճռել պատերազմական միջոցներով։*

*Խաղաղ գոյակցության քաղաքականությանը մեր նվիրվածությունը նոր հասարակարգի ուժի, նրա պատմական հնարավորությունների հանդեպ հավատի վկայություն է։ Դա համապատասխանում է բոլոր երկրների և ժողովուրդների շահերին, տոգորված է իսկական հումանիզմի ոգով, խաղաղության և ազատության այն իդեալներով, որոնք սովետական մարդկանց ոգեշնչում էին նաև անցած պատերազմի տարիներին։*

*Մարդու ապրելու սրբազան իրավունքը պաշտպանելը, կայուն խաղաղություն ապահովելը ողջերի պարտքն է ազատության և սոցիալական առաջընթացի համար զոհված միլիոնավոր մարդկանց հիշատակի հանդեպ, մեր ընդհանուր պարտքը ներկա ու գալիք սերունդների հանդեպ։*

* * *

Թանկագին ընկերնե՛ր, պատերազմի գլխավոր գործող անձը, հաղթանակը կռող-կոփողը սովետական մեծ ժողովուրդն էր՝ զինվորի շինելով և բանվորի արտահագուստով, որին առաջնորդում էր բոլշևիկների կուսակցությունը։

Տոնելով Հաղթանակի օրը, մենք գլուխ ենք խոնարհում մեր հայրենիքի այն հիանալի, քաջարի որդիների ու դուստրերի հիշատակի առաջ, ովքեր իրենց կյանքը զոհաբերեցին հանուն հայրենիքի պաշտպանության սուրբ գործի։

Տոնելով Հաղթանակի օրը, մենք փառաբանում ենք պատերազմի և աշխատանքի վետերաններին, փառաբանում սովետական մարդուն՝ ռազմիկին և աշխատավորին, մեր հերոսական բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը և ժողովրդական մտավորականությանը։

Տոնելով Հաղթանակի օրը, մենք փառաբանում ենք մեր հայրենիքի բոլոր ազգերին ու ազգություններին, որոնք համախմբված են անխախտ եղբայրական ընտանիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ։

Տոնելով Հաղթանակի օրը, մենք փառաբանում ենք սովետական զինվորին, մեր քաջարի զինված ուժերին։

Տոնելով Հաղթանակի օրը, մենք փառաբանում ենք լենինյան կոմունիստական կուսակցությանը՝ հաղթող ժողովրդի կուսակցությանը։

Թո՛ղ դարեդար ապրի սովետական ժողովրդի սխրագործությունը Հայրենական մեծ պատերազմում։

(Զեկուցումը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով)։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1985 թվականի մայիսի 18-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը։

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի արդյունքները և հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցը։

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ժողովրդական դեպուտատների Երևանի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Հ. Մուրադյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ռ. Մ. Գալստյանը, մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի փորձարարական գործարանի բանվորուհի ընկ. Զ. Յա. Համբարձումյանը, Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստր ընկ. Ս. Հ. Թումանյանը, ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ռ. Բալայանը, Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի պետ ընկ. Հ. Ս. Ղանդիլյանը, Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի ռեկտոր ընկ. Ռ. Հ. Մովսիսյանը, Վարդենիսի շրջանի Ծիծկալա գյուղի կոլտնտեսության անասնաբույծ ընկ. Ա. Մ. Մանմեդովը, «Մասիս» կոշիկի արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Հ. Խ. Հարությունյանը։

Քննարկված հարցի վերաբերյալ Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման առթիվ Կենտկոմի պլենումն ընդունեց որոշում «Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական XXVIII համագումարի հրավիրման մասին», որը հրապարակվում է մամուլում։

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Բ. Ս. Ռակովը։

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր:

Ընթացիկ տարվա ապրիլի 23-ին տեղի ունեցած՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը քննարկեց ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման և նրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրների մասին հարցը: Զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումը քննարկեց ներքին ու արտաքին քաղաքականության մեծ և բարդ խնդիրներ: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի զեկուցման մեջ համակողմանիորեն ցույց տրվեցին մեր երկրի հաջողությունները, բացահայտվեցին թերություններն ու վրիպումները, սահմանվեցին դրանց հաղթահարման ուղիներն ու միջոցները, առաջադրվեցին ինչպես համագումարի նախաշեմին լուծվելիք, այնպես էլ հեռանկարի կոնկրետ խնդիրները: Պլենումը որոշեց կուսակցության հերթական համագումարը հրավիրել 1986 թվականի փետրվարի 25-ին:

Հանրապետության աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, ամբողջովին և լիովին հավանություն են տալիս ապրիլյան պլենումի արդյունքներին, լի են վճռականությամբ՝ ակտիվորեն կենսագործելու նրա որոշումները, արժանավայել դիմավորելու ՍՄԿԿ XXVII համագումարը:

Մայիսի 9-ին սովետական մարդիկ հայրենասիրական ու աշխատանքային բացառիկ բարձր խանդավառության մթնոլորտում նշեցին Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի 40-ամյակը: Հոբելյանի նախապատրաստությունը և տոնակատարությունը, որ իսկական համաժողովրդական բնույթ էին կրում, նպաստեցին աշխատավորների աշխատանքային ու քաղաքական ակտիվության հետագա բարձրացմանը:

Առաջիկա XXVII համագումարը կամփոփի վերջին հինգ տարում կուսակցության և ժողովրդի անցած ուղու արդյունքները, սովետների երկրի առջև նոր հորիզոններ կբացի կոմունիստական շինարարության հերթական փուլի համար:

Ապրիլյան պլենումն ընդգծեց, որ կյանքը թելադրում է հետագա փոփոխությունների ու վերակերպումների, մեր հասարակության որակապես նոր աստիճանի հասնելու անհրաժեշտությունը: Մեր հասարակության զարգացումը վճռապես կորոշվի էկոնոմիկայի մեջ որակական տեղաշարժերով, ինտենսիվ աճի ռելսերի վրա նրա փոխադրումով, արդյունավետության համակողմանի բարձրացմամբ: Հարկավոր է վերակառուցել կառավարումն ու պլանավորումը, ստրուկտուրային ու ինվեստիցիոն քաղաքականությունը, մըշտապես բարձրացնել կազմակերպվածությունն ու կարգապահությունը, արմատապես բարելավել գործունեության ոճը:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու գերագույն իմաստը կուսակցությունը համարում է ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացումը, նյութական ու հոգևոր բարիքների բաշխման ոլորտում սոցիալական արդարության ամրապնդման գծի հետևողական կիրառումը, բաշխման մեխանիզմը համահարթումից, անաշխատ եկամուտներից մաքրելու, յուրաքանչյուր աշխատողի և յուրաքանչյուր կոլեկտիվի աշխատանքի արդյունքներից նրանց նյութական դրության ուղղակի կախումն ապահովելու գործուն միջոցառումների մշակումը:

*) Տպագրվում է հապավումներով:



ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունն իրենց արտաքին քաղաքական գործունեության գլխավոր իմաստը տեսնում են այն բանում, որ թույլ չտալ պատերազմի կրկնություն, մանավանդ՝ միջուկային աղետ: Սովետական Միությունն ընթանում է և անսասանորեն կընթանա խաղաղության ու խաղաղ գոյակցության լենինյան կուրսով, որը պայմանավորված է մեր հասարակարգով, բարոյականությամբ և աշխարհայացքով:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի առաջադրած խնդիրների կարևորությունը, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, առանձնակի հնչողություն է հաղորդում նախահամագումարյան աշխատանքին, պահանջում ստեղծված իրադրության խոր իմաստավորում, համարձակ վճիռներ և եռանդուն գործողություններ:

Տասնմեկերորդ հնգամյակի անցած չորս տարում հանրապետության
կուսակցական կազմակերպությունը քիչ բան չի արել տնտեսական և սոցիա-
լական զարգացման կայուն տեմպեր ապահովելու, առաջադրված տնտեսա-
կան և քաղաքական խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Հանրապե-
տության ժողովրդական տնտեսությունն այդ տարիներին զարգացել է դինա-
միկորեն, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների մակարդակով: Աշ-
խատանքի հիմնական ցուցանիշները ձեզ լավ հայտնի են:

Աճի արագ տեմպերով է բնութագրվում արդյունաբերության զարգա-
ցումը ընթացիկ տարվա չորս ամիսներին: Չնայած խիստ ձմռան ծանր պայ-
մաններին, ապրանքային արտադրանքի արտադրության ծավալների հավելա-
ճը կազմեց 7,6 տոկոս (տարեկան պլանով նախատեսված 5,1-ի դիմաց),
իրացումը՝ 5,2 տոկոս, աշխատանքի արտադրողականության աճը՝ 4,8 տո-
կոս (պլանով նախատեսված 3,7-ի դիմաց): Գյուղի աշխատավորներն ան-
ցած չորս ամսում պետությանը վաճառել են միս՝ 12, կաթ՝ 4,9 տոկոսով
ավելի, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում:

Վատ չեն նաև ժողովրդական տնտեսության մի շարք այլ ճյուղերի ցուցանիշները:

Քիչ գործ չի արված, և հաջողություններն ակնբախ են: Սակայն թերությունները ու բացերը, ընդ որում՝ լուրջ բնույթի, ցավոք, նույնպես քիչ չեն, մանավանդ, եթե մեր աշխատանքի արդյունքները գնահատենք Կենտկոմի պլենումի որոշումների լույսի ներքո:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը գլխավոր խնդիր է համարում ապահովել տնտեսական և սոցիալական զարգացման առավել բարձր տեմպեր՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման և հանրային արտադրության ինտենսիվացման հիման վրա:

Այս առումով ինչպիսի՞ն է գործերի վիճակը մեզանում: Վերլուծությունը ցույց է տալիս, որ ոչ բոլոր ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարներն են ինչպես հարկն է հոգ տանում նախատեսված առաջադրանքների և զարգացման ծրագրերի կատարման մասին, արտադրության ինտենսիվացման տեմպերի արագացման, նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, աշխատանքի արտադրողականության ու որակի բարձրացման մասին, չեն ձգտում հասնել առկա կարողությունների, ֆինանսական, նյութական ու աշխատանքային ռեսուրսների բարձրարդյունավետ օգտագործման:

Այս գործում լիովին չէ, որ կյանքի են կոչվում կազմակերպատնտեսական և սոցիալական մեծ ռեզերվները: Գործադրել այդ ռեզերվները, ակտիվացնել մարդկային գործոնը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուրն աշխատի բարեխղճորեն, ուժերի լիակատար նվիրումով, բարձրացնի կազմակերպվածությունն ու կարգապահությունը. ահա մեր կուսակցական կազմակերպությունների և կոմիտեականների գլխավոր խնդիրը:

Մի՞թե կարելի է հաշտվել այն բանի հետ, երբ պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները հատկապես հիմա՝ հնգամյակի ավարտից ընդամենը յոթ ամիս առաջ, չեն կատարում մի ամբողջ շարք արդյունաբերական ձեռնարկություններ, շինարարական, տրանսպորտային և այլ կազմակերպություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, նույնիսկ առանձին ճյուղեր։ Իսկ եթե պլանները չեն կատարվում, զարգացման ի՞նչ արագացման մասին կարող է խոսք լինել։

Գործերը բարվոք չեն նաև նոր տեխնիկայի ներդրման պլանների կատարման ասպարեզում։ Միանգամայն անթույլատրելի է, որ մի շարք ձեռնարկություններ ու կազմակերպություններ, նույնիսկ ամբողջ ճյուղեր կատարում են ոչ թե սահմանված, այլ նվազեցված, ճշգրտված պլանները։ Դրա հետևանքով առանձին մինիստրություններ ու գերատեսչություններ և շատ ձեռնարկություններ արտադրության ծավալների աճի տեմպերի ցուցանիշներով չորս տարվա արդյունքներով չհասան հնգամյա պլանով նախատեսված բնագծերին։

Նման դրությունը համարելով անթույլատրելի՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասում է, որ պլենումը պետք է հետ մնացող մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու տնտեսությունների բոլոր ղեկավարներից պահանջի անհետաձգելի միջոցներ ձեռնարկել թերակատարումը հաղթահարելու և հնգամյակը հաջողությամբ ավարտելու համար։ Պլանը օրենք է, իսկ օրենքը ոչ ոք իրավունք չունի խախտելու։ Այս սկզբունքային դիրքերից պետք է մենք հաշիվ պահանջենք բոլոր ղեկավարներից։

Կուսակցության XXVII համագումարի նախաշեմին կուսքաղկոմները, կուսշրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է հանգամանորեն խորամուխ լինեն ձեռնարկություններում ու կազմակերպություններում գործերի վիճակին, ամենօրյա վերահսկողության տակ առնեն պլանային ցուցանիշների ողջ կոմպլեքսի կատարումը, գործնական միջոցառումներ մշակեն և իրականացնեն թույլ տրված թերակատարումը վերացնելու, աշխատանքի նորմալ ռիթմ ապահովելու, բոլոր ռեզերվները գործադրելու համար։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անխափան և համաչափ աշխատանքի ապահովման գործում կարևոր է պայմանագրային ու պատվերային մատակարարումների կարգապահության ամրապնդումը։ Այս առումով որոշ դրական տեղաշարժեր կատարվել են հանրապետությունում։ Բայց անհրաժեշտ է ավելի եռանդուն աշխատանք իրականացնել և ամենագլխավորը՝ հանդես բերել ավելի մեծ հետևողականություն և սկզբունքայնություն։ Չէ՞ որ 1984 թվականին արտադրանքի իրացման պայմանագրային կարգով աշխատող մի ամբողջ շարք ձեռնարկություններ լրիվ չկատարեցին մատակարարման պարտավորությունները։ Գրեթե նույնն է վիճակը ընթացիկ տարվա չորս ամսվա արդյունքներով։

Կուսակցական կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների պարտքն է գործուն միջոցներ ձեռնարկել պլանները նվազեցման առումով ճշգրտելը մեր պրակտիկայից վերացնելու, արտադրանքի մատակարարումները յուրաքանչյուր սպառողին նախատեսված տեսականիով և սահմանված պայմանագրային ժամկետներում ապահովելու համար։

Այսօր, երբ դրվում է տնտեսական զարգացումն արագացնելու հարցը, անչափ կարևոր է, և այս բանը չպետք է մոռանան մեր տնտեսական ղեկավարները, ժամանակի գործոնը նկատի առնելը ձեռնարկությունների շինարարությունն իրականացնելիս, դրանք ընդլայնելիս, վերակառուցելիս, տեխնիկապես վերազինելիս, նոր տեխնիկա արմատավորելիս։ Անավարտ շինարարության մեծ ծավալը, ներդրման երկարատև ժամկետները, ուժերի փոշեցրումը, բացի միջոցների սառեցման հետևանքով հասցվող վնասից, բացասաբար են անդրադառնում տեխնիկական առաջընթացի վրա՝ ձգձգելով նոր արտադրանքի արտադրությունը նոր գծերում և ձեռնարկություններում։



Չէ՞ որ անթույլատրելի է, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, երբ մեծ քանակությամբ սարքավորումներ, այդ թվում նաև ներմուծված, տարիներով չեն մոնտաժվում և ընկած են մնում որպես մեռյալ բեռ։ Նման վիճակ է տիրում գյուղատնտեսության, թեթև արդյունաբերության, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունների մի շարք օբյեկտներում։

Տնտեսավարման արդյունավետության բարձրացումը պահանջում է ամենուրեք կիրառել բոլոր տեսակի ռեսուրսների խնայողության խստագույն ռեժիմ, վճռականորեն պայքարել շռայլողականության և կորուստների դեմ։ Ընդ որում, այդ աշխատանքը ոչ թե պետք է կրի կամպանիոն բնույթ, այլ լինի մշտական, նպատակասլաց և կոմպլեքսային։

Սև մետաղների գլանվածքի մեծաքանակ թափոնները, որ արդյունաբերական շատ ձեռնարկություններում առաջանում են տեխնոլոգիայի ցածր մակարդակի պատճառով, մենք դասում ենք ուղղակի կորուստների թվին։ Իսկ դրանք քիչ չեն, օրինակ, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում, Լենինականի հղկող հաստոցների գործարանում, իսկ Չարենցավանի գործիքաշինական արտադրամիավորումում առայժմ մեծ չափերի են հասնում թանկարժեք արագահատ պողպատի թափոնները։

Հանրահայտ է էներգախնայողական ակտիվ քաղաքականության հրատապությունը մեր հանրապետության համար։ Մեզ մոտ որոշակի աշխատանք, իհարկե, կատարվում է։ Սակայն այս կարևոր գործում լուրջ թերություններ և վրիպումներ կան։ Դեռևս թույլ է տրվում վառելիքի և էներգիայի զգալի գերածախս, որը հաճախ տեղի է ունենում հանրապետության մի շարք ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների անտնտեսվար, անպատասխանատու վերաբերմունքի պատճառով, ղեկավարներ, որոնք ժամանակին չեն ապահովում արտադրության կատարելագործման կազմակերպական ու տեխնիկական միջոցառումների կիրառումը։

Մենք դեռևս շատ կորուստներ ենք թույլ տալիս ձմռանը անբավարար նախապատրաստվելու հետևանքով։ Դա ցայտուն երևաց անցած ձմռան ամիսներին։ Ուստի և հենց այսօրվանից է անհրաժեշտ մտահոգվել, կոնկրետ միջոցներ ձեռնարկել կազմ ու պատրաստ սկսելու ձմռան ժամանակաշրջանը ինչպես հանրային արտադրության ոլորտում, այնպես էլ բնակչության սպասարկման բնագավառում, քաղաքային բոլոր տնտեսություններում։

Թույլ պահանջկոտության պայմաններում առանձին մինիստրություններ ու գերատեսչություններ, շատ ձեռնարկություններ ու կազմակերպություններ հարկ եղած ուշադրությունը չեն նվիրում ռեզերվային վառելիքի կուտակման հարցերին։ Անբավարար է նավթամթերքների խնայողական օգտագործման վիճակը, պատշաճ վերահսկողություն չի սահմանվում դրանց ծախսի հաշվառման վրա։ Շարունակում են տեղ գտնել նավթամթերքների հափշտակման դեպքեր։

Չեն վերացվել ժողովրդական բարիքի փչացման, պակասորդի, ինչպես նաև սոցիալիստական սեփականության նկատմամբ ուղղակի ոտնձգության փաստերը։ Այսօր անհրաժեշտ ենք համարում մինիստրությունների ու գերատեսչությունների կոլեգիաների և ղեկավարների, հատկապես՝ թեթև արդյունաբերության, սննդարդյունաբերության և առևտրի մինիստրությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների ուշադրությունը մի անգամ ևս հրավիրել այն բանի վրա, որ անհրաժեշտ է արմատապես բարելավել սոցիալիստական սեփականության պահպանության վիճակը։ Մյուս կողմից, մենք անթույլատրելի ենք համարում վարչական մարմինների, մասնավորապես հանրապետության ներքին գործերի մինիստրության դանդաղկոտությունը տնտեսական հանցագործությունների բացահայտման գործում։

Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ պատշաճ կարգուկանոն հաստատվի յուրաքանչյուր ձեռնարկությունում ու կառույցում, յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխո-

ղում, յուրաքանչյուր կազմակերպությունում, բարձրացվի բոլոր աստիճանների ղեկավարների պատասխանատվությունն այդ գործում։

Մեր ուշադրության կենտրոնում մշտապես պետք է գտնվեն նաև թողարկվող արտադրանքի, աշխատանքի ինքնարժեքի իջեցման հարցերը։ Մենք էկոնոմիկայի ինտենսիվացման, դրա արդյունավետության բարձրացման չենք հասնի առանց գիտատեխնիկական առաջընթացի արագացման։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն այս խնդիրը դասեց ժողովրդատնտեսական ամենախոշոր խնդիրների շարքը։ Ընդ որում վճռական դեր է հատկացվում մեքենաշինության, հաշվողական տեխնիկայի, սարքաշինության, էլեկտրատեխնիկայի և էլեկտրոնիկայի՝ գիտատեխնիկական առաջընթացի այդ կատալիզատորների, արագ զարգացմանը։

Ինչպես գիտեք, արդյունաբերության այդ ճյուղերի զարգացմանը մենք վերջին ժամանակներս առանձնակի ուշադրություն ենք նվիրում։ Չնայած դրան, այստեղ ևս մեր հնարավորությունները բավականաչափ ռացիոնալ և արդյունավետ չեն օգտագործվում։

Անթույլատրելի է, որ հանրապետության մի շարք մեքենաշինական ձեռնարկություններ, որոնք պետք է լինեն առաջընթացի կատալիզատորներ, թողարկում են հնացած տեխնիկա։ Շատ տեսակների հաստոցներ, մեքենաներ, մեխանիզմներ զգալիորեն ետ են մնում լավագույն նմանակներից, ունեն ավելի մեծ տեսակարար մետաղատարություն, ավելի ցածր արտադրողականություն։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն այդ բանը ցույց է տալիս Երևանի Ձերժինսկու անվան, Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանների տնտեսական գործունեության պրակտիկայից վերցրած օրինակներով։

Մի՞թե այսպիսի արտադրանքով, շարունակում է նա, մենք կարող ենք նպաստել գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդրի լուծմանը։ Կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները, տնտեսական ղեկավարները պետք է խորապես վերլուծեն յուրաքանչյուր ձեռնարկությունում տիրող իրադրությունը, մշակեն համաշխարհային բարձրագույն մակարդակի տվյալներ ունեցող ժամանակակից հաստոցների, մեքենաների ու սարքերի յուրացման և թողարկման կոմպլեքսային ծրագիր։

Կենտկոմի պլենումի այն դրույթը, որ տասներկուերորդ հնգամյակում առաջնահերթ պետք է դառնա սարքավորումների փոխման գործակցի էական բարձրացումը, առավել հրատապ է մեր ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության համար։ Այստեղ մենք պետք է աշխատենք հետևողական ու համառորեն։

Մեզանում ցածր է նաև սարքավորումների հերթափոխայնության գործակիցը։

Առանձին ձեռնարկություններում մեծ քանակությամբ թանկարժեք թվածրագրային կառավարմամբ հաստոցներ, որոնք ունակ են կատարելու բարդ, ունիկալ օպերացիաներ, օգտագործվում են ոչ արդյունավետ, բանում են մեկ հերթափոխից ոչ ավելի։

Պակաս կարևոր չէ աշխատուժի արդյունավետ օգտագործումը։ Հարկավոր է, որ ժամանակին և ճշտորեն որոշենք, թե որտեղ և որքան աշխատատեղ պետք է ստեղծենք, որպեսզի հասնենք առկա աշխատանքային ռեսուրսների առավելագույն արդյունավետ օգտագործման։

Այստեղ պետք են հիմնավորված մշակումներ ու հանձնարարականներ։ Պայքարել աշխատաժամանակի ամեն կարգի կորուստների դեմ, աշխատատեղի լավագույն կազմակերպման համար, ակտիվորեն ատեստավորել և ռացիոնալացնել աշխատատեղերը. ահա այն խնդիրները, որ պետք է լուծեն հանրապետության աշխպետկոմը, մինիստրություններն ու գերատեսչությունները, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարները՝ կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների օգնությամբ ու աջակցությամբ։



Գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար կարևոր է ավելի լրիվ և ռացիոնալ օգտագործել հանրապետության գիտական պոտենցիալը, ակադեմիական, բուհական, ճյուղային գիտության հնարավորությունները, զարգացնել արտադրության հետ դրանց կապի արդյունավետ ձևերը։ Կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որ «հետազոտություն—նախագծում և տեխնոլոգիայի մշակում—արտադրություն» ցիկլի բոլոր մասնակիցներն ակտիվ աշխատեն այդ ուղղությամբ։ Այստեղ հավասարապես պետք է պատասխանատվություն կրեն թե՛ գիտության և թե արտադրության աշխատողները։ Չի կարելի, որ կողմերից յուրաքանչյուրն աշխատի մեկուսի։ Հարկավոր են համատեղ ջանքեր։ Մենք պետք է ստեղծենք գիտական մշակումների արդյունքների ներդրման կենսունակ համակարգ, ուժեղացնենք գիտական հետազոտությունների կոորդինացումը, արագացնենք արտադրության հետ գիտության կապի նոր, առաջավոր ձևերի արմատավորումը։

Այդ պրոբլեմի ևս մի կողմի մասին։ Կարևոր է, իհարկե, ունենալ «խելամիտ» մեքենաներ ու մեխանիզմներ, բայց գլխավորն է՝ ըստ ամենայնի մեծացնել այն ինտելեկտուալ պոտենցիալը, որ ընդգրկում է մեր մասնագետ կադրերի բոլոր կատեգորիաները, ակտիվացնել նրանց աշխատանքը գիտատեխնիկական առաջընթացի արագացման ասպարեզում։

Այս առումով հրատապ նշանակություն ունեն ինժեներային աշխատանքի վարկի բարձրացման, վարպետների, ինժեներների, կոնստրուկտորների, տեխնոլոգների դերի ու հեղինակության մեծացման, նրանց աշխատանքի նյութական ու բարոյական խթանների ուժեղացման մասին Կենտկոմի ապրիլյան պլենումի պահանջները։

Ինչպես իրավացիորեն շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, գիտատեխնիկական առաջընթացի և արտադրության արդյունավետության աճի արագացումն անբաժանելի են արտադրանքի որակի վճռական բարելավումից։ Իսկ ինչպե՞ս են մեզ մոտ գործերը։ Ներկայումս մեր արդյունաբերությունը թողարկում է պետական որականիշով 767 արտադրատեսակ։ Թողարկվող արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ դրանց տեսակարար կշիռը 1984 թվականին կազմեց 20,4 տոկոս։

Դրա հետ մեկտեղ հանրապետության ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում տասնմեկերորդ հնգամյակի տարիներին պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը կրճատվել է։ Միայն 1984 թվականին այդ որականիշից զրկվեց 54 արտադրատեսակ։ Սա արտառոց բան է, ընկերնե՛ր։ Հանրապետության որոշ ձեռնարկություններ ընդհանրապես չեն թողարկում որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանք։ Դրանցից են «Հայվերելակմեքենա» արտադրամիավորումը, Երևանի ժամացույցի գործարանը և գեղարվեստական ժամացույցի գործարանը, Էջմիածնի պլաստմասսաների գործարանը, Հրազդանի ցեմենտի գործարանը, Երևանի ավտոգործարանը, ավտոբեռնիչների գործարանը, Իջևանի փայտամշակման կոմբինատը, արդյունաբերական և գյուղական շինարարության մինիստրությունների երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանները և շատ ուրիշներ։

Հանրապետության ոչ քիչ թվով ձեռնարկություններ ու միավորումներ շարունակում են սպառողներին մատակարարել ոչ ստանդարտ և ցածրորակ արտադրանք։

Որակի նկատելի բարելավման չեն հասել նաև ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող մի շարք մինիստրություններ, գերատեսչություններ, ձեռնարկություններ և միավորումներ։

Հազիվ թե հարկ կա ասելու, որ էկոնոմիկայի ինտենսիվացումն ու արդյունավետության բարձրացումը անհնար են առանց կառավարման հին մեթոդների իներցիայի հաղթահարման, առանց տնտեսական մեխանիզմի, աշխատանքի ոճի ու մեթոդների մշտական կատարելագործման։

Հարկավոր է ավելի ակտիվորեն վարել կառավարման առաջավոր ստրուկ-

տուրաների ներդրման, ձեռնարկությունների ինքնուրույնության հետագա զարգացման, աշխատավորական կոլեկտիվների տնտեսական խթանման բարելավման, ընդհուպ մինչև աշխատատեղ հասցվող-արմատավորվող այնպիսի տնտհաշվարկային հարաբերությունների գիծ, որոնք արտադրության բոլոր օղակներին կողմնորոշեն առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի օգտագործման, աշխատանքի առավել բարձր արտադրողականության ձեռքբերման և բարձրորակ արտադրանքի թողարկման։

Կուսակցական կազմակերպությունները, բոլոր տնտեսական օղակները պետք է անդուլ ուշադրություն նվիրեն աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի ու մեթոդների լայն ներդրման, աշխատանքի բրիգադային եղանակի տնտեսական ու դաստիարակչական պոտենցիալի ակտիվ օգտագործման հարցերին։

Տնտեսական մեխանիզմի կատարելագործումն է նպատակամղված երկրում անցկացվող խոշորամասշտաբ տնտեսափորձը։ Քիմիական մեքենաշինության, հաստոցաշինական արդյունաբերության, սարքաշինության, գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրությունների՝ հանրապետության տարածքում գտնվող ձեռնարկությունների ու միավորումների և Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության՝ այս տարի տնտեսավարման նոր պայմանների անցած ձեռնարկությունների ղեկավարները պետք է մանրազնին վերլուծեն այդ աշխատանքի ընթացքն անցած ժամանակաշրջանում և գործուն միջոցներ ձեռնարկեն տնտեսափորձով առաջադրված խնդիրների անվերապահ կատարման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հատուկ շեշտեց պարենային ծրագրի իրականացման աշխատանքներն ուժեղացնելու անհրաժեշտությունը։

Վերջին տարիներս հանրապետությունում զգալի գործ է արվել գյուղատնտեսության, ամբողջ ագրոարդյունաբերական համալիրի նյութատեխնիկական բազայի ամրապնդման, տնտեսավարման և կառավարման մեթոդների կատարելագործման, արտադրության ինտենսիվացման, հողերի մելիորացման, գյուղի սոցիալական զարգացման ուղղությամբ՝ առանձնապես լեռնային ու նախալեռնային շրջաններում, և անցկացվել են սոցիալ-տնտեսական այլ կարևորագույն միջոցառումներ։ Այս ամենը հնարավորություն է տվել բարելավելու սննդամթերքների մատակարարումը բնակչությանը։

Սակայն ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի զարգացման գործում կատարված դրական տեղաշարժերը ինքնահանգստացման հիմք չեն տալիս։ Ավարտվում է հնգամյակը, իսկ մի շարք շրջաններում չի հաջողվել հասնել մսի, կաթի, ձվի, բանջարեղենի, պտուղների և երկրագործական այլ մթերքների արտադրության և մթերումների պլանավորված ծավալներին։

Մեզ մոտ դեռ կան այնպիսի ղեկավար աշխատողներ, որոնք աշխատանքի թերությունները ուզում են քողարկել անընդհատ վկայակոչվող, այսպես կոչված՝ օբյեկտիվ պատճառներով։ Իսկ իրականում մի շարք շրջաններում, օրինակ, անասնապահության վիճակի վատացումը մեծ չափով բացատրվում է ֆերմաներում պատշաճ կարգուկանոնի, կազմակերպվածության բացակայությամբ, արտադրական, աշխատանքային և տեխնոլոգիական ցածր կարգապահությամբ։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը քննադատում է այն շրջանների կուսակցական ու սովետական ղեկավարներին, որտեղ գյուղատնտեսական արտադրությունն առաջընթաց չի ապրում, նույնիսկ թույլ է տրվում նահանջ գրաված բնագծերից, արդեն ձեռք բերած ընդհանուր առմամբ ոչ վատ ցուցանիշներից։

Այստեղ պետք է մատնանշել, շարունակում է նա, աշխատանքի շատ հատկանշական մի թերություն, որը չափից ավելի է տարածված մեզ մոտ։ Տնտեսական շատ ղեկավարներ, հասնելով դրական արդյունքների, ինչ-որ լավ բանի, տեղն ու տեղը հանգստանում են և գործն ինքնահոսի մատնում։ Լինում է նաև այլ կերպ. չամրապնդելով ձեռք բերվածը, մի շարք կոլտնտեսություն-



ների, սովխոզների, այլ տնտեսությունների ղեկավարներ չմտածված ու անհիմն կերպով, ինքնագլուխ վերացնում են այս կամ այն արտադրությունը, առանց համապատասխան նորով փոխհատուցելու, որի հետևանքով մենք արտադրանք ենք կորցնում։

Ընթացիկ տարվա չորս ամիսներին հանրապետությունում 10,7 տոկոսով պակաս ձու է մթերվել, քան 1984 թվականի նույն ժամանակամիջոցում։ Վերջին տարիների ընթացքում այսպիսի վիճակ առաջին անգամ է ստեղծվում։ Մեր կարծիքով, դա թռչնաբուծության վարման նկատմամբ հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի հանձնաժողովի, գյուղատնտեսության մինիստրության, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարների ու մասնագետների ուշադրության թուլացման ուղղակի հետևանքն է։

Ճյուղի աշխատողները պետք է անհապաղ միջոցներ ձեռնարկեն բացը լրացնելու համար, օգտագործելով նաև կոլտնտեսությունների ու սովխոզների, ինչպես նաև բնակչության օժանդակ տնտեսությունների հնարավորությունները։

Թուլացվել է ուշադրությունը նաև խոզաբուծության նկատմամբ։ Անցած տարի այստեղ, ինչպես ասում են, առաջադիմում էին, իսկ հետո գործը ինքնահոսի մատնեցին։ Պետք է վճռականորեն դատապարտել նման պրակտիկան և կուսակցական, սովետական ու գյուղատնտեսական մարմիններից և ագրոարդյունաբերական միավորումներից պահանջել անհապաղ կարգուկանոն հաստատել այդ գործում։

Հնգամյակի ավարտական տարում ֆերմաների աշխատավորների առջև պատասխանատու և բարդ խնդիրներ են դրված։ Պետք է ապահովել մսի, կաթի, ձվի և բրդի արտադրության ու վաճառքի նկատելի աճ։ Նախատեսված ծրագիրը հաջողությամբ կատարելու և կայուն բազա ստեղծելու նպատակով տասներկուերորդ հնգամյակի առաջին տարում վստահորեն աշխատելու համար կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է ընթացիկ տարում կուտակեն առնվազն 2,6—2,7 միլիոն տոննա որակյալ կոշտ և հյութալի կեր։

Հնգամյակի ավարտական տարին հանրապետության այգեգործներն ու խաղողագործները դիմավորեցին պլանների կատարումով։ Սակայն հայտնի պատճառներով պտղատու այգիներին և հատկապես կորիզավոր պտուղներին զգալի վնաս հասցվեց։ Այդուհանդերձ, այս տարի գյուղատնտեսության աշխատավորներն առաջին անգամ պետք է հասնեն 130 հազար տոննա պտուղների մթերման բնագծին։ Խնդիրը, ուղղակի ասենք, բարդ է, բայց այգեգործները նահանջելու տեղ էլ չունեն։ Մենք պարտավոր ենք կատարել հնգամյակը և կկատարենք։

Խաղողի և պտուղների արտադրության ու վաճառքի պլանների կայուն կատարման համար հսկայական նշանակություն ունեն նոր ինտենսիվ պլանտացիաների հիմնումը, ինչպես նաև հների վերակառուցումը։ Պետք է ասել, որ 1975—80 թվականներին մենք դրանով ավելի լավ էինք զբաղվում, քան այժմ։ Այստեղ պահանջկոտությունը նվազել է։ Միշտ չէ, որ ընդունված որոշումները կատարվում և արդյունք են տալիս, պլանային կարգապահության խախտումները խրոնիկական բնույթ են ստացել։ Խաղողի այգիների հիմնման չորս տարվա պլանային առաջադրանքները չեն կատարել Աբովյանի, Աշտարակի, Մասիսի, Մեղրու, Բաղրամյանի, Նաիրիի, Նոյեմբերյանի, Հոկտեմբերյանի, Թալինի, Թումանյանի, Շամշադինի շրջանները։ Անպատասխանատվությունից բացի ուրիշ ինչո՞վ կարելի է բացատրել այն փաստը, որ, օրինակ, Աբովյանի շրջանը չորս տարում չկարողացավ ապահովել ընդամենը 10 հեկտար խաղողի այգիների հիմնումը։

Ընթացիկ տարին գյուղի, ագրոարդյունաբերական համալիրի աշխատավորների համար անհաջող սկսվեց։ Եղանակը այսօր էլ երես չի տալիս նրանց։ Ուստի առավել ևս հարկավոր է կազմակերպվել, մոբիլիզացվել։ Առջևում շատ անելիք կա։ Մենք անպայման պետք է ապահովենք գյուղատնտեսական արտադրանքի համախառն արտադրության պլանները, ապահովենք մթերք-

ների վաճառքի առաջադրանքների և սոցպարտավորությունների կատարումն ու գերակատարումը։

Արժեքավորելով շինարարության ասպարեզում վերջին ժամանակներս նկատվող տեղաշարժերը՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասում է, որ այնուամենայնիվ, այդ ճյուղը շարունակում է գործել անհամաչափ, չի ապահովում պլանների կատարումը մի շարք գլխավոր ցուցանիշների գծով։

Ժողովրդական տնտեսության որոշ առաջատար ճյուղերում հիմնական ֆոնդերի, ինչպես նաև արտադրական կարողությունների և օբյեկտների գործարկման առաջադրանքները թերակատարվում են։ Կապիտալ ներդրումները շարունակում են ցրվել մեծաթիվ կառույցների վրա, ամեն տարի սկսվող նոր կառույցների քանակը դեռևս մնում է մեծ, գրեթե չեն կրճատվում թերավարտ շինարարության ծավալները։

Թե՛ շինարարական և թե պատվիրատու մինիստրություններն ու գերատեսչությունները լավ չնախապատրաստվեցին ընթացիկ տարվա շինարարական աշխատանքներին։

Շինարարական ծրագրի կատարմանը անբավարար են նախապատրաստվել բնակարանային կոմունալ տնտեսության մինիստրությունը, թեթև արդյունաբերության, գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունը, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը և այլն։ Դեռևս շինարարության պլանների մեջ են մտցվում անհրաժեշտ պայմաններով չապահովված օբյեկտներ։

Ներկայումս մեզ մոտ անտնտեսվարության յուրօրինակ վկայությունն են թերավարտ շատ օբյեկտներ՝ տասնյակ միլիոն ռուբլի արժողությամբ։ Հանրապետության կառավարությունը պետք է քննության առնի այդ հարցը, պարզի օբյեկտների շինարարության ձգձգման պատճառները, մեղավորներին խիստ պատասխանատվության ենթարկի և պաշտոնատար անձանց՝ մինիստրից մինչև աշխղեկ, պարտավորեցնի սահմանված կարճ ժամկետներում ապահովել օբյեկտների գործարկումը։

Անավարտ և անարդյունավետ են նաև նախագծային-հետախուզական աշխատանքների որակի բարձրացման նպատակով ձեռնարկվող միջոցները, մասնավորապես բնակարանային-քաղաքացիական նշանակության օբյեկտների շինարարությունում։ Դանդաղ է նորացվում երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանների տեխնոլոգիան, փաստորեն չի կրճատվում ձեռքի աշխատանքի ծավալը։

Կուսակցության քաղկոմները, շրջկոմները, շինարարական մինիստրությունների ու գերատեսչությունների կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն շինարարության կուսակցական ղեկավարումը, ամենուրեք հասնեն պետական, պլանային, աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդման, 1985 թվականի ու տասնմեկերորդ հնգամյակի պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարման։

Անդրադառնալով հանրապետության տրանսպորտի և կապի ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքին՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ նրանք հիմնականում կատարում են պլանային առաջադրանքները։ Դրա հետ մեկտեղ, առաջադրված խնդիրները բնավ էլ լրիվ չեն լուծված։ Առանձին ձեռնարկությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ ժամանակին չեն ապահովում վագոնների բեռնումն ու բեռնաթափումը։ Դեռևս թերությունները շատ են բեռնման-բեռնաթափման գործողությունների մեքենայացման, գիշերվա ժամերին բեռնման աշխատանքի կազմակերպման գործում։ Երկաթուղային տրանսպորտում դեռևս պատշաճ մակարդակի վրա չէ աշխատանքային, արտադրական և հաշվառման-հաշվետվական կարգապահությունը։

Վերջին տարիներին, այնուհետև ասում է նա, ապրանքաշրջանառության պլանների կատարման առումով նեղ տեղ է դարձել առևտուրը։



Հանրապետության առևտրի կազմակերպությունների ղեկավարները ժամանակին և հարկ եղածին պես չգնահատեցին այն օբյեկտիվ փոփոխությունները, որ վերջին ժամանակներս կատարվել են վճարունակ պահանջարկի կառուցվածքում՝ կապված բնակչության նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա աճի հետ։ Նրանք բավականաչափ պատրաստ չեղան լուծելու այն խնդիրները, որ կապված են պահանջարկի և առաջարկի միջև հաշվեկշռվածությունն ըստ ապրանքների ծավալի և տեսականու ապահովելու հետ։ Դանդաղ է իրականացվում առևտրի կազմակերպման ձևերի ու մեթոդների կատարելագործումը։

Սպառողական ապրանքների գծով բնակչության պահանջարկի լրիվ բավարարմանը խանգարում են մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների պայմանագրային կարգապահության խախտումները։

Ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ձեռնարկությունների ու կազմակերպությունների կուսակցական կազմակերպությունները, կուսակցության շրջկոմները և քաղկոմները պետք է բարձրացնեն ձեռնարկությունների ղեկավարների պատասխանատվությունը շուկային ապրանքներ մատակարարելու պայմանագրային պարտավորությունների լրիվ ու ժամանակին կատարման համար, ընդ որում այդ ապրանքները պետք է լինեն բարձրորակ և ունենան լայն տեսականի։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի առաջադրած խնդիրների լույսի ներքո լուրջ անելիքներ կան նաև բնակչության կենցաղսպասարկման ոլորտում։ Սպասարկման մի շարք տեսակներ չեն համապատասխանում բնակչության աճած պահանջներին, լիովին չի հաշվի առնվում պահանջարկի գոյացած ստրուկտուրան։ Բարելավման կարիք ունեն սպասարկման որակն ու կուլտուրան։ Վերջին ժամանակներս հանրապետությունում դանդաղել են կենցաղծառայության զարգացման տեմպերը գյուղում։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման ժամանակակից պահանջների լույսի ներքո, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հրամայական անհրաժեշտություն է դարձել գիտության ղեկավարման, պլանավորման արմատական բարելավումը, գիտական հիմնարկությունների ցանցերը հետազոտությունների կարևորագույն, առաջնային ուղղությունների վրա կենտրոնացնելու գործը։

Չնայած վերջին ժամանակներս ձեռնարկված միջոցներին, դարձյալ մտահոգություն է պատճառում գիտական ու գիտամանկավարժական կադրերի պատրաստման վիճակը։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը հանրապետության առավել խոշոր ճյուղային գիտական հիմնարկությունների օրինակով ցույց է տալիս, որ տակավին բավարար աշխատանք չի կատարվում կոլեկտիվները բարձրորակ գիտական կադրերով համալրելու, գիտական աշխատողների որակավորման հետևողական բարձրացման, երիտասարդ մասնագետների պատրաստման բնագավառում։ Թերևս դա է պատճառը, որ ճյուղային ինստիտուտներում գիտաշխատողների ընդհանուր կազմում զգալիորեն քիչ են գիտությունների դոկտորներն ու թեկնածուները, առանձին տեղերում նույնիսկ չկան գիտական աստիճան ունեցող աշխատողներ։

Պետպլանը, գիտությունների ակադեմիան, բարձրագույն ուսումնական հաստատությունների մինիստրությունը, մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության գիտական ու գիտամանկավարժական կադրերի պատրաստման կոորդինացման հանձնաժողովը պետք է ճշտորեն սահմանեն ըստ գիտության ճյուղերի կադրերի պահանջարկը, մշակեն և իրականացնեն նրանց պատրաստման հեռանկարային պլանը։

Խոսելով դպրոցական ռեֆորմի իրականացման մասին՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ դժվար է գերագնահատել դրա նշանակությունն ապագա սերունդների համար, ողջ պետության համար։

Սակայն կուսակցության որոշ քաղկոմներ ու շրջկոմներ, ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների գործկոմներ, լուսավորության մինիստրությունը, պրոֆտեխկրթության պետական կոմիտեն, ինչպես նաև ուրիշ շատ մինիստրություններ և արտադրական ձեռնարկություններ դեռևս չեն ապահովում ռեֆորմն իրականացնելու աշխատանքների կոմպլեքսայնությունն ու գործնական նպատակամղվածությունը։ Այս գործում պետք է բարձրացվի բոլորի պատասխանատվությունը, ռեֆորմի պահանջները պետք է ամենքի կողմից և ամենուրեք կատարվեն անվերապահորեն։

Կուսակցական կազմակերպությունների, կոմիտեների, սովետական և արհմիութենական մարմինների ուշադրության կենտրոնում պետք է մշտապես գտնվեն նաև բնակչության առողջապահության զարգացման և սոցիալական ապահովության բարելավման հարցերը։ Հանրապետությունում քիչ բան չի արված այդ ուղղությամբ, սակայն բուժսպասարկման ներկայիս մակարդակը տակավին չի համապատասխանում արդի պահանջներին։ Դանդաղ է զարգանում առողջապահության նյութատեխնիկական բազան։ Առողջապահության մինիստրությունը պետք է արմատախիլ անի հիվանդների նկատմամբ անուշադիր վերաբերմունքի, բժշկական էթիկայի, սովետական բժշկի վարքագծի նորմերի խախտման դեպքերը։

Դրական փոփոխություններ են տեղի ունենում աշխատավորների սոցիալական և կուլտուր-կենցաղային սպասարկման բնագավառում։ Միջոցառումներ են իրականացվել պատերազմի մասնակիցների ու հաշմանդամների, զոհված ռազմիկների ընտանիքների, աշխատանքի վետերանների կենսաթոշակային ապահովման, նյութակենցաղային պայմանների հետագա բարելավման նպատակով։

Բայց քիչ չեն նաև չլուծված հարցերն ու թերությունները, որոնք խանգարում են սոցապահովության մեխանիզմի հստակ գործունեությանը։ Սոցիալական ապահովության մինիստրությունը, նրա տեղական մարմինները անթույլատրելիորեն դանդաղ են վերացնում կենսաթոշակների ու նպաստների նշանակման և վճարման գործում եղած սխալներն ու վրիպումները, թույլ են իրականացնում վերահսկողությունը տեղերում։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական, դաստիարակչական գործունեության ողջ կոմպլեքսի կատարելագործման հարցերի շուրջ հանգամանալի խոսակցություն ծավալվեց այս տարվա հունվարյան պլենումում, որը մշակեց «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման միջոցառումները։ Այժմ մեր կուսկազմակերպությունները լծված են այդ գործին։ Գաղափարաքաղաքական դաստիարակությունն իր ձևերով, ինչպես շեշտվեց Կենտկոմի ապրիլյան պլենումում, պետք է առավելագույնս շաղկապվի մեր օրերի գլխավոր խնդրի՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հետ։ Այս կարևորագույն դրույթը պետք է դրվի մեր գաղափարադաստիարակչական ողջ գործունեության հիմքում։

Հանրապետական կուսակցական կազմակերպության, ինչպես ամբողջ կուսակցության կյանքում, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, սկսվում է համագումարին նախապատրաստվելու պատասխանատու ժամանակաշրջանը։ Եվ այստեղ առանձնապես կարևոր է, որ մեր պրոպագանդան մարդկանց հասցնի կուսակցության խոսքը, միտք արթնացնի և զարգացնի աշխատավորների ձեռներեցությունը, նրանց աշխատանքային ու հասարակական ակտիվությունը նպատակամղի հնգամյակի տնտեսական խնդիրների հաջող կատարմանը և ՍՄԿԿ առաջիկա համագումարի արժանավայել դիմավորմանը։

Մեր կյանքի նոր խնդիրները լուծելիս, մարդկանց բազմակողմանի, ներդաշնակ դաստիարակության պրոցեսում անանց նշանակություն ունեն գրականությունն ու արվեստը։ «Այն ամեն լավագույնը, ինչ ստեղծել են սովետա-



կան գրականությունն ու արվեստը, միշտ անբաժանելի է եղել կուսակցության ու ժողովրդի գլխավոր գործերից ու հոգսերից»,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում։ Մեր ստեղծագործական մտավորականության աշխատանքի այս գնահատականը բովանդակում է նաև դրա առջև ծառացած խնդիրները՝ իր ստեղծագործությամբ միշտ նպաստելու կուսակցության ստեղծարար ծրագրերի իրականացմանը։

Ապրիլյան պլենումում մի անգամ ևս շեշտվեց կարգուկանոնի և կարգապահության ամրապնդման կարևորությունը։ Հանրապետության կուսակցական, սովետական մարմինները, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները այդ ուղղությամբ որոշակի աշխատանք են տանում։ Սակայն պետք է նշել, որ դեռևս ոչ բոլոր կուսակցական կոմիտեները, մինիստրությունները, գերատեսչությունները, ձեռնարկություններն են կարողացել պատշաճ կերպով կազմակերպել այդ կարևորագույն գործը։

Կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է տնտեսական ղեկավարներից ավելի խիստ հաշիվ պահանջեն պետական պլանների և առաջադրանքների կատարման համար, վճռականորեն կասեցնեն պետական, աշխատանքային և կատարողական կարգապահության խախտման, անտնտեսվարության և վատնողության ամեն տեսակ փաստերը։ Նրանք կոչված են տնտեսական ղեկավարների հետ համատեղ ապահովելու հնգամյակի եզրափակիչ տարվա լարված պլանների հաջող կատարումը։ Այդ խնդրի լուծմանը պետք է նպատակամղվի նաև նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը։

Կարգապահության և կարգուկանոնի հետագա ամրապնդմանը մեծապես կնպաստի ՍՄԿԿ Կենտկոմի օրերս ընդունած որոշումը հարբեցողության դեմ պայքարն ուժեղացնելու վերաբերյալ։ Աշխատավորական կոլեկտիվում լինի, թե բնակության վայրում, պետք է անհանդուրժողության մթնոլորտ ստեղծել նրանց նկատմամբ, ովքեր չարաշահում են ոգելից խմիչքները։ Այս գործում ոչ մի տեղ և ոչ ոքի կողմից բարեհոգություն չպետք է հանդես բերվի։

ՍՄԿԿ հերթական XXVII համագումարը հրավիրելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի ընդունած որոշման մեջ նախատեսված է կուսակցության համագումարին նախորդող հաշվետու-ընտրական կամպանիան անցկացնել հետևյալ ժամկետներում. սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովները՝ սեպտեմբեր-նոյեմբերին, շրջանային, քաղաքային կուսակցական կոնֆերանսները՝ նոյեմբեր-դեկտեմբերին, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարները՝ 1986 թվականի հունվարին, փետրվարի սկզբներին։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ներկայացնում է Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVIII համագումարը 1986 թվականի հունվարի 23-ին հրավիրելու մասին, նրա օրակարգի և պատգամավորների ընտրության կարգի վերաբերյալ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի առաջարկությունը։

Սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, շրջանային և քաղաքային կուսակցական կոնֆերանսները կանցկացվեն ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում սահմանված ժամկետներում։

ՍՄԿԿ XXVII համագումարի նախաշեմին անցկացվող հաշվետվություններն ու ընտրությունները առանձնակի նշանակություն ունեն կուսկազմակերպությունների կյանքում։ Այստեղ պետք է ամենամանրազնին կերպով վերլուծել գործերի վիճակը արտադրական ու հասարակական կյանքի բոլոր տեղամասերում, խորամուխ լինել այն պրոբլեմների ու խնդիրների մեջ, որոնք պետք է լուծել առաջիկայում։

Հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում անհրաժեշտ է քննարկել ու վերլուծել, թե գործարանում կամ կառույցում, կոլտնտեսությունում կամ սովխոզում, մինիստրության ապարատում կամ բուհում կոմու-

նիստներն ինչպես են կատարել կուսակցության որոշումներն ու դիրեկտիվները, թե ինչ չափով են ի հայտ բերվել արտադրության աճի, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման գործի բարելավման հնարավորությունները ու կոնկրետ ուղիները։ Ընդ որում արվածի վերլուծությունը պետք է կատարվի առկա թերությունների և վրիպումների շիտակ, գործարար, սկզբունքային քննադատության մթնոլորտում։ Պետք է ամեն կերպ խուսափել կոնստրուկտիվ քննարկումը գովաբանական ինքնահաշվետվություններով, հասունացած պրոբլեմների սուր արծարծումը ընդհանուր խոսակցություններով նենգափոխելուց։ Ձեռք բերված արդյունքների սթափ գնահատականը, կուտակված փորձի խոր վերլուծությունը կօգնեն՝ սահմանելու նոր խնդիրների լուծման արդյունավետ միջոցներ ու եղանակներ։

Կուսակցական կոմիտեների կարևոր պարտականությունն է ժողովներ անցկացնելիս ապահովել ներկուսակցական դեմոկրատիայի խստիվ պահպանումը, հասնել այն բանին, որ ամենուրեք հաշվետվություններն ու ընտրությունները անցնեն կուսակցության կանոնադրությանը և ղեկավար մարմինների ընտրությունների մասին ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգին լիովին համապատասխան։

Կուսակցական ժողովների և կոնֆերանսների աշխատանքում, անշուշտ, կարևոր տեղ կգրավեն կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը։ Սկզբունքորեն կարևոր է այսուհետ ևս կուսակցական ղեկավարման կայունությունն ապահովելու, փորձառու և երիտասարդ աշխատողների ճիշտ զուգակցման գիծ վարելը։ Անհրաժեշտ է աշխատանքի կարևոր տեղամասերում ավելի ակտիվորեն առաջ քաշել կանանց, ավելի համարձակ, ավելի լավ օգտագործել երիտասարդ հեռանկարային աշխատողներին։

Հանրապետությունում տիրում է առողջ, գործարար մթնոլորտ, որը նպաստում է մեր կադրերի աճին և ընդունակությունների դրսևորմանը։ Նրանց հանդեպ վստահությունը զուգակցվում է խստապահանջության, պահանջկոտության հետ։ Բայց տեղ-տեղ այս երկմիասնական սկզբունքը խախտվում է։ Վստահելը՝ վստահում են, բայց ժամանակին ստուգելը երբեմն մոռանում։ Եվ, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, թերություններն ու սխալները, զանազան կարգի չարաշահումները տեղ են գտնում հենց կադրերի աշխատանքի նկատմամբ պատշաճ վերահսկողության բացակայության հետևանքով։

Մեզ համար գործողության ուղեցույց է այն հետևությունը, որ ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի կուսակցական աշխատող չեն կարող վերահսկողությունից դուրս մնալ, և որ ամեն մի ստուգում պետք է գործնական օգուտ տա։ Հարկավոր է այսուհետ ևս պայքարել թղթաբանության, բազմաթիվ նիստերով ու խորհրդակցություններով, ձևամոլությամբ, ղեկավարման կաբինետային ոճով հրապուրվելու դեմ։ Մի խոսքով, աշխատանքի ոճն ու մեթոդները պետք է համապատասխանեցվեն հասարակության զարգացման արդի փուլի պահանջներին։

Առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիան պետք է ըստ ամենայնի նպաստի այն բանին, որ կուսակցական կազմակերպություններն ավելի խորամուխ լինեն արհմիությունների, կոմերիտմիության, ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության բովանդակությանը, ձգտեն, որ դրանք, ելնելով աշխատավորական կոլեկտիվների մասին օրենքի դրույթներից, ուժեղացնեն իրենց ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա, կարգուկանոնի և կազմակերպվածության ամրապնդման վրա։

Քաղաքային ու շրջանային կոնֆերանսները տեղի կունենան հանրապետության կյանքի կարևոր փուլում՝ հնգամյակի վերջնագծում։ Դրանք հանրագումարի կբերեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետվություններն ու ընտրությունները, կընդհանրացնեն կուսկազմակերպական աշխատանքի կուտակված փորձը, կվերլուծեն հաշվետվությունների և ընտրությունների արդյունքները, կորոշեն անելիքները։ Կոնֆերանսներում պետք է սկզբունքային խոսակցություն ծավալել բոլոր կենսական պրոբլեմների շուրջ, չհարթելով սուր անկյունները և «չսանրելով» քննադատությունը։



Մեր պլենումից անմիջապես հետո ժողովներ տեղի կունենան սկզբնական կուսակցական կազմակերպություններում, կապված համագումարի նախապատրաստության հետ։ Մենք համոզված ենք, որ դրանք հաշվետու-ընտրական ժողովների և կոնֆերանսների հետ մեկտեղ կնպաստեն կոմունիստների ակտիվության ու պատասխանատվության բարձրացմանը, կուսակցական կազմակերպությունների մարտունակության ուժեղացմանը, աշխատավոր զանգվածների հետ դրանց կապերի ամրապնդմանը։

Նախահամագումարյան ժամանակաշրջանը կլինի լարված ու բազմակողմանի քաղաքական, տնտեսական, կազմակերպչական, գաղափարատեսական աշխատանքի ժամանակաշրջան։ Համագումարի նախօրեին կոմունիստների գործունեության լեյտմոտիվը պետք է դառնան ներկա մոմենտի գլխավոր լոզունգները՝ ստեղծագործական աշխատանք, խոսքի ու գործի միասնություն, նախաձեռնություն ու պատասխանատվություն, պահանջկոտություն իր և ընկերների հանդեպ։

Յուրաքանչյուր օր, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, մեզ մոտեցնում է կուսակցության հերթական՝ XXVII համագումարին։ Այդ նշանակալի իրադարձությունը ժողովրդական տնտեսության ու մշակույթի զարգացման բնագավառի նոր նվաճումներով դիմավորելը, 1985 թվականի և ամբողջ հնգամյակի առաջադրանքների կատարումը մեր կուսակցական կազմակերպության պատվի գործն է, հանրապետության բոլոր աշխատավորների հայրենասիրական վսեմ պարտքը։ (Բուռն ծափահարություններ):

---

## Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ ՄԱՍԻՆ

*1. Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական XXVIII համագումարը հրավիրել 1986 թվականի հունվարի 23-ին։*

*2. Հաստատել համագումարի հետևյալ օրակարգը.*

*1) Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը. զեկուցող՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյան։*

*2) Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը. զեկուցող՝ Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. Ջ. Ա. Ջանոյան։*

*3) «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած հեռանկարի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի մասին. զեկուցող՝ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Տ. Սարգսյան։*

*4) Հայաստանի կոմկուսի ղեկավար մարմինների ընտրությունները։*

*5) ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավորների ընտրությունները։*

*3. Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVIII համագումարում ներկայացուցչության նորման սահմանել. մեկ պատգամավոր կուսակցության 190 անդամից։*

*4. Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVIII համագումարի պատգամավորները, կուսակցության կանոնադրության համաձայն, ընտրվում են փակ (գաղտնի) քվեարկությամբ, քաղաքային, շրջանային կուսակցական կոնֆերանսներում։*

---



# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ

**Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ**

*ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ զարգացման պլանավորումը հասարակական կյանքի վերակերտման հեղափոխական պրակտիկայի գիտական ու սոցիալական կարևորագույն նվաճումներից մեկն է։ Վ. Ի. Լենինը, պլանավորումը համարելով ժողովրդական տնտեսության կառավարման ուղն ու ծուծը, նշել է, որ չի կարելի աշխատել առանց տևական ժամանակաշրջանի համար կազմված և լուրջ հաջողություն խոստացող պլանի։ Մեր պլանները կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գլխավոր միջոցն են։ Դրանք նպատակամղված են սոցիալիստական էկոնոմիկայի ամրապնդմանն ու զարգացմանը, արտադրաուժերի հետևողական մեծացմանը, հասարակական հարաբերությունների կատարելագործմանը, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացմանը։ Մեր հնգամյա պլանները ոչ միայն տնտեսական շինարարության, այլև սոցիալական պրոգրեսի պլաններ են։*

*Էկոնոմիկայի զարգացման յուրաքանչյուր փուլ ժողովրդական տնտեսության պլանավորման կազմակերպմանն ու որակին առաջադրում է նոր, առավել բարձր պահանջներ։ Երկրի էկոնոմիկան գերազանցապես ինտենսիվ զարգացման ուղու վրա փոխադրելու վերաբերյալ կուսակցության XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. մարտյան պլենումի առաջադրած խնդիրը կանխորոշում է ժողովրդական տնտեսության պլանավորման հաշվեկշռային մեթոդների հետագա կատարելագործման անհրաժեշտությունը։*

*Ինչպես նյութական, այնպես էլ ոչ նյութական արտադրության բոլոր ոլորտներում պլանավորման ներդաշնակվածությունը պայմանավորված է նախ և առաջ պլանային կառավարման կատարելագործմամբ, որի դերը հատկապես աճում է զարգացած սոցիալիզմի փուլում, տնտեսական կապերի բարդացման համեմատ։ Պլանավորման սոցիալիստական մեթոդները մշտապես զարգանում և կատարելագործվում են։ Դրանք արտացոլվել են տնտեսական մեխանիզմի կատարելագործման և արդյունավետության ու որակի բարձրացման վրա դրա ներգործության ուժեղացման նպատակով մշակված ծրագրային փաստաթղթերում։ Տնտեսավարման կատարելագործման վերաբերյալ միջոցառումների ողջ կոմպլեքսի ներդրումը հնարավորություն կընձեռի հասնելու ժողովրդատնտեսական լավագույն վերջնական արդյունքների, կօգնի առավել լրիվ բավարարելու սովետական մարդկանց աճող պահանջմունքները։*

*Պլանային կառավարման կատարելագործման կարևորագույն խնդիրներից մեկը պետական պլանային կարգապահությունն է։ Ոչ ճիշտ հաշվեկշռվածությունը, պլանի կատարման անբավարար կազմակերպումը, պլանային կարգապահության խախտումները էկոնոմիկայում, հատկապես ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ասպարեզում, հանգեցնում են անհամաչափության, որն իր հերթին խոչընդոտում է բնակչության պահանջմունքների*

լրիվ բավարարմանը։ Պլանային կարգապահությունը պետք է պահպանվի արդեն պլանի նախագծման փուլում՝ առաջադրանքների գիտական խոր հիմնավորվածությամբ, հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի ծախսումների առավել պրոգրեսիվ նորմաների և նորմատիվների կիրառմամբ, հաշվի առնելով հզորությունների առավելագույն օգտագործումը, աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպերը՝ արտադրության համեմատաբար նվազագույն ծախսերի և արտադրանքի բարձր որակի պայմաններում։ Ցուցանիշների մանրազնին համաձայնեցվածությունը պետք է ուղեկցվի և ամրակայվի մատակարարների ու սպառողների պայմանագրային կապերի համակարգով։

Հրատարակված են ավելի քան 80 մեթոդական կանոնադրություններ, որոնցում կարգորոշված են պլանի կազմման հաջորդականությունը, մեթոդաբանական սկզբունքները և վերահսկողությունը կատարված աշխատանքի նկատմամբ։ Տարեկան և հնգամյա պլանների մշակման ընթացքում այդ դրույթները հնարավորություն են ընձեռում լիովին հաշվի առնելու արտադրության աճի տեմպերի և արդյունավետության մեծացման, արտադրանքի որակի բարելավման, բոլոր տեսանկյուններով հաշվեկշռվածության մակարդակի բարձրացման վերաբերյալ անհրաժեշտ միջոցառումները։ Դրանցից են՝ ընդհանուր ծավալային ցուցանիշների համաձայնեցվածությունը, արտադրական և շինարարական ծրագրերի համար անհրաժեշտ բոլոր սարքավորումների մատակարարման առաջադրանքները, պայմանագրային կարգապահության խստիվ պահպանումը, բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարման հաշվեկշռվածությունը։ Երբեմն պատշաճ մակարդակով կազմված պլանի կատարումը ձախողվում է աշխատանքի վատ կազմակերպման հետևանքով։ Դրա պատճառով հարակից ձեռնարկություններում ծագում են խոցելի տեղեր կամ, եթե գործը վերաբերում է անմիջապես սպառողներին, աճում է չբավարարված պահանջարկը։ Իսկ այն դեպքում, երբ դա կրկնվում է սիստեմատիկաբար, գոյանում են ներճյուղային, ապա նաև միջճյուղային անհամամասնություններ, որով զգալի վնաս է հասցվում ժողովրդական տնտեսությանը, խախտվում սպառման ապրանքների պահանջարկի և առաջարկի համապատասխանությունը։ Իհարկե, պլանը հիմնականում իրականացնում են արտադրողները։ Դա պայմանավորված է անմիջապես նյութական արտադրության ոլորտում զբաղված յուրաքանչյուր բանվորի հատույցով՝ աշխատաժամանակի կորուստների վերացման, տեխնիկայի նկատմամբ հոգատար վերաբերմունքի, նյութական ռեսուրսների ռացիոնալ, խնայողական օգտագործման պայմաններում։

Պրակտիկայում դեռևս նկատվում են հաստատված պլանների «ճշգրտումներ»՝ գերազանցապես նվազեցման միտումով։ Դրանով իսկ արհեստականորեն ստեղծվում են նպաստավոր պայմաններ առաջադրանքներն առանց մեծ ջանքերի կատարելու և նույնիսկ գերակատարելու համար։ Այդ արատավոր պրակտիկան խախտում է պլանների կայունությունը՝ բացասաբար անդրադառնալով ինչպես տվյալ ճյուղի, այնպես էլ իրենց իսկ կոլեկտիվների գործունեության վրա։

Այդպիսի «ճշգրտումը» հանգեցնում է պլանի հաշվեկշռվածության, հետևաբար նաև հարակից ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքի խախտմանը։ Տնտեսական գործունեության նման պրակտիկան հանգեցնում է նաև այս կամ այն արտադրանքի դեֆիցիտի առաջացմանը, որը նույնպես խախտում է հանրային արտադրության ամբողջ շրջանառությունը՝ վնասելով և՛ արտադրողին, և՛ սպառողին։ Պլանների ճշգրտումը պետք է կատարվի խիստ անհրաժեշտության դեպքում և դիտվի իբրև բացառիկ երևույթ։

Տնտեսական պայմանագրերի հստակ կատարումը պլանային կարգապահության գլխավոր պահանջն է։ Այդ տեսակետից առանձնակի նշանակություն ունի ձեռնարկության աշխատանքի համաչափությունը՝ կապված անհրաժեշտ քանակությամբ հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի մատակարարման պլանը անթերի կատարելու հետ։ Դա ժամանակակից էկոնոմիկայի բարդ



խնդիրներից մեկն է, որը կլուծվի միայն պայմանագրով երաշխավորված կոմպլեքս մատակարարման և տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների հաջող կատարման դեպքում։ Մինչդեռ որոշ ձեռնարկություններ, ձախողելով պայմանագրային մատակարարումները, համախառն արտադրանքի պլանները կատարում են պայմանագրով չնախատեսված երկրորդական արտադրանքի հաշվին։ Այստեղ պլանային առաջադրանքներն ընդհանուր արժեքային ցուցանիշներով են կատարվում են՝ ի վնաս համապատասխան պայմանագրերով հաստատված կոնկրետ արտադրատեսակների մատակարարման։ Այս երևույթը, հասկանալի է, ընդհանուր ոչինչ չունի ժողովրդական տնտեսության մեջ վերջնական բարձր արդյունքների հասնելու հետ։ Այն հանգեցնում է ռեսուրսների ոչ ռացիոնալ օգտագործման և անհամապատասխանություն է առաջացնում ինչպես տվյալ ձեռնարկությունում, այնպես էլ ամբողջ ճյուղում։ Բացասական հետևանքներից է նաև դրամաշրջանառության դանդաղումը, քանի որ դրամական եկամուտների և առաջարկված ապրանքների անհամամասնության պայմաններում բնակչության խնայողությունների մի մասի վճարունակ պահանջարկը մնում է չբավարարված։ Վերջին տասնամյակում առկա է երկրի բնակչության խնայողությունների ու դրամական եկամուտների և ապրանքային ռեսուրսների աճի տեմպերի անհամամասնություն. ապրանքային ռեսուրսներն այդ ժամանակամիջոցում աճել են 1,8 անգամ, բնակչության դրամական ֆոնդը, ներառյալ խնայողությունները՝ 2,2 անգամ։

Մեր հանրապետությունում ևս վերջին տարիներին բնակչության դրամական եկամուտների համեմատությամբ ապրանքների գնման աճը ետ է մնում, չի ապահովվում վճարունակ պահանջարկի բավարարումը։

Բնակչության դրամական եկամուտների և առաջարկված ապրանքների ծավալի միջև եղած անհամապատասխանության վերացման կարևոր միջոցը պլանավորման կատարելագործումն է և տնտեսական մեխանիզմի վրա նրա ներգործության ուժեղացումը։ Սպառման ապրանքների նկատմամբ բնակչության աճող պահանջարկի բավարարումը, ըստ էության, միջճյուղային ֆունկցիա է։ Ուստի առանձին ճյուղերի կառավարումից սոցիալ-տնտեսական միասնական նպատակով կապված խոշոր տնտեսական ոլորտների կառավարմանն անցնելը կնպաստի տնտեսության պլանաչափ զարգացմանը, կամրապնդի միջճյուղային կապերը և կարագացնի ժողովրդական տնտեսության ինտեգրացման պրոցեսները։ Ներկայումս պահանջարկի և առաջարկի անհաշվեկշռվածությունը հայտնի չափով բացատրվում է բնակչության աճող պահանջարկի բավարարման նկատմամբ ճյուղային մոտեցմամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «1983—1985 թթ. ժողովրդական սպառման ապրանքներով բնակչության ապահովման բարելավմանն ուղղված լրացուցիչ միջոցառումների մասին» որոշման մեջ նշված են կոմպլեքս միջոցառումներ, որոնք բովանդակում են բնակչության աճող պահանջմունքների բավարարման խնդիրները։ Այդ միջոցառումների իրականացումը նախադրյալներ է ստեղծում առևտրաարդյունաբերական կոմպլեքսի ձևավորման համար, որի գործունեությունը նպատակամղված է դեպի ժողովրդատնտեսական վերջնական արդյունքը՝ սպառման ապրանքների արտադրության պլանային առաջադրանքների կազմման ժամանակ մանրածախ ապրանքաշրջանառության ծավալի նախատեսմամբ հանդերձ։ Այդպիսի փորձ արդեն կա մի քանի մարզերում ու հանրապետություններում։ Այսպես, օրինակ, 1984 թ. Բաթումում հիմնվել է կոշիկի առևտրաարդյունաբերական ֆիրմա։ Կոմպլեքսային այս տնտեսափորձը նախատեսում է արտադրության կառավարման տնտեսական այնպիսի խթանների առավել ճկուն օգտագործում, ինչպիսին են գինը, շահույթը, նյութական խրախուսանքը։ Թողարկումն ու իրացումը միավորվում են միասնական տնտեսական մեխանիզմի մեջ, որտեղ աշխատանքը գնահատվում է վերջնական արդյունքով։ Այստեղ ընդլայնվում են իրավունքներն ու բարձրացվում է պատասխանատվությունը վերջնական

արդյունքի համար։ Առևտրաարդյունաբերական նոր ֆիրման օժտված է լայն իրավունքներով՝ գնագոյացման, նյութական խրախուսման, արտադրության, եկամուտների բաշխման, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի հատկացվող միջոցների իրացման, մասնակի ինքնաֆինանսավորման, ինչպես նաև սոցիալական զարգացման հարցերում։ Հնարավորություն է ընձեռվում ապահովելու արտադրության բոլոր մասնակիցների շահագրգռությունը նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների արդյունավետ օգտագործման համար, ինչպես նաև բարձրացնելու թողարկվող արտադրանքի որակը, մեծացնելու պատասխանատվությունը պետական պլանների կատարման գործում։ Ֆիրման է հաստատում տեխնիկական պայմաններն ու ժամանակավոր ստանդարտները նոր տեսակի կոշիկների համար, արտադրությունից հանում է պահանջարկ չունեցող նմուշները կամ իջեցնում դրանց գները։ Նորույթի համար սահմանվում է ֆիրմային նոր գին, որը կարող է նաև շեղվել գործող մանրածախ գներից, իսկ դրանց միջև եղած տարբերությունը, բացառությամբ պետական բյուջեին հինգտոկոսանոց հատկացումից, լրիվ օգտագործվում է ֆիրմայի հայեցողությամբ։ Առևտրաարդյունաբերական կոմպլեքսում, որն առանձնացված է որպես պլանավորման և կառավարման ինքնուրույն օբյեկտ, արտադրության արդյունքների հասարակական ճանաչումը կատարվում է նյութական բարիքների շրջանառության և սպառման ոլորտում։

Մեր հանրապետությունում վերջին տարիներին դրական լուրջ տեղաշարժեր են կատարվում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման և տեսականու ընդլայնման ասպարեզում։ Ապահովվում է լայն սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի առաջանցիկ զարգացումը։ Բավական է ասել, որ 1984 թվականին «Բ» խմբի ճյուղերի արտադրանքի աճը կազմել է 107,7 տոկոս այն դեպքում, երբ արտադրության միջոցների արտադրությունն ավելացել է 106,8 տոկոսով։ Տարեկան պլանից ավելի արտադրվել են 163,8 միլիոն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ, այդ թվում՝ 45 հազար քառակուսի մետր բրդյա կտորեղեն, 679 հազար զույգ կաշվե կոշիկ և բազմաթիվ այլ արտադրանք։ Կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների մասնագիտացված արտադրամասեր ու տեղամասեր են ստեղծվել հանրապետության «Ա» խմբի բոլոր ճյուղերի ձեռնարկություններում։

Չնայած ձեռք բերված հաջողություններին, թեթև արդյունաբերության ճյուղում, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի 1984 թ. նոյեմբերին կայացած նիստում, չեն կարողացել անհրաժեշտ ճկունություն ապահովել շուկայի կոնյունկտուրան ուսումնասիրելու և հաշվի առնելու գործում, չեն հոգացել մի շարք կարևոր արտադրությունների վերակառուցման մասին։ Այս կշտամբանքը կարելի է հասցեագրել նաև մեքենաշինության շատ ճյուղերի, որոնք բնակչության համար ապրանքներ են թողարկում, ինչպես նաև առևտրական կազմակերպություններին։ Հենց առևտուրը պետք է հուսալի պատնեշ կանգնեցնի այն բանի առջև, որ անորակ արտադրանքը չթափանցի վաճառասեղաններ, միշտ և ամեն ինչում սկզբունքորեն պաշտպանի սպառողների շահերը։

Հանրապետության ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ներկա վիճակի վերլուծությունը ցույց է տալիս, որ, չնայած թեթև արդյունաբերության շատ արտադրատեսակների արտադրության ծավալի նշանակալի մեծացմանը, այնուամենայնիվ, բնակչության կողմից դրանց փաստացի սպառումը զգալիորեն ետ է մնում պահանջարկից։ Դա հանգեցնում է ձեռնարկությունների և առևտրական կազմակերպությունների պահեստներում ապրանքների զգալի կուտակման։ Սպիտակեղենի հաշվարկված պահանջարկը 1983 թ. կազմել է 28,5 մլն հատ, վերնազգեստինը՝ 13,2 մլն հատ, մետաքսե գործվածքինը՝ 26,1 մլն քմ, մինչդեռ փաստացի սպառվել են ընդամենը՝ 12,5 մլն հատ սպիտակեղեն, 7,4 մլն հատ վերնազգեստ, 14,5 մլն քմ մետաքսե գործվածք և դրանից պատրաստված արտադրանք։ Այսինքն, նշված ապրանքների նկատմամբ ունեցած պահանջարկը բավարարվել է հազիվ կիսով



չափ։ Գրեթե նույն վիճակն է նաև այլ ապրանքների պահանջարկի և սպառման ասպարեզում։

Այդ ամենը պայմանավորված է մի շարք պատճառներով՝ ապրանքների կոնկրետ տեսակներով շուկայի հագեցվածությամբ և դրանց մի մասի նկատմամբ պահանջարկի բացակայությամբ, պահանջարկի և առաջարկի կառուցվածքի անհամապատասխանությամբ, ներմուծվող ապրանքների համեմատ մի շարք տեղական ապրանքների անմրցունակությամբ՝ դրանց ցածր որակի հետևանքով։ Նշված պրոբլեմի արմատական լուծումն է ակնկալում խոշոր մասշտաբի տնտեսափորձը, որի պայմաններում ընթացիկ տարվա հունվարի մեկից գործում է նաև երկրի թեթև արդյունաբերությունը։

Ժողովրդատնտեսական համակարգի կառուցվածքում առևտրաարդյունաբերական կոմպլեքսի առանձնացումը հնարավորություն է ընձեռում որոշելու տնտեսական ողջ մեխանիզմի կատարելագործման արդյունավետ ուղղությունը՝ ժողովրդական տնտեսության վերջնական բարձր արդյունքների ապահովմամբ բնակչության պահանջարկի լրիվ բավարարումը։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության պլանավորման բարելավման հիմնական պայմանը պլանային ցուցանիշների համակարգի կատարելագործումն է՝ պլանային առաջադրանքների կառուցվածքում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդհանրացված ցուցանիշների սահմանումը։ 1983 թ. հունվարի 1-ից աշխատավարձի ֆոնդի մեկ ռուբլու հաշվով լայն սպառման ապրանքների արտադրության ծավալի և դրանց թողարկման պլանային ցուցանիշների սահմանումը դառնում է պահանջարկի և առաջարկի պլանային հաշվեկշռվածության հասնելու էական պայման։

Արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով որակական տեղաշարժեր են պահանջվում աշխատանքի վարձատրման ասպարեզում։ Անհրաժեշտ է ուժեղացնել կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր անդամի անձնական աշխատանքի ներդրմամբ ստացված վերջնական արդյունքների հետ վարձատրության փոխկապվածությունը։

Արտադրանքի որակի բարձրացման, նյութական ռեսուրսների օգտագործման բարելավման և նոր տեսակի ապրանքների արտադրության ընդլայնման ոլորտում նշանակալի է մեծածախ գների խթանիչ դերը։ Այս գործում կարևոր է առաջին փորձնական արտադրանքի, ինչպես նաև հատկապես մոդայիկ ապրանքների պայմանագրային գների կիրառման ընդլայնումը։ Սոցիալիստական շատ երկրներում կիրառվում է պայմանագրային գներով շահագրգռելու պրակտիկան, որը վկայում է տնտեսական մեխանիզմի համակարգում էական դեր խաղացող այդ տարրի բարձր արդյունավետության մասին։ Մեծածախ գների խթանիչ դերի հիմնական սկզբունքների պահպանումը նոր արտադրանք թողարկելիս կապահովի ավելի մեծ չափերի շահույթ՝ նախկինում թողարկված արտադրանքի համեմատությամբ։ Լավորակ նոր ապրանքի համար մեծածախ բարձր գնի սահմանումը հնարավորություն կընձեռի կրճատելու բարոյապես հնացած ապրանքների թողարկումը՝ հետագայում դրանք արտադրությունից հանելու միտումով։

Արտադրության ընդլայնման և ապրանքների որակի բարձրացման գործում աշխատողների նյութական խթանման համակարգի կատարելագործման կարևոր պայման է 1983 թվականից նյութական խրախուսման ֆոնդ կատարվող լրացուցիչ մասհանումների նոր կարգի կիրառումը։

Տնտեսական մեխանիզմի արդյունավետությունն անմիջականորեն պայմանավորված է կառավարման կազմակերպական կառուցվածքով, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և շրջանառության կառավարման առկա ձևերի բարելավմամբ ու նորերի ստեղծմամբ։ Երկարատև օգտագործման և տեխնիկապես բարդ ապրանքների արտադրությունը նպատակահարմար է կենտրոնացնել միավորումներում, դրանց ֆունկցիան համարելով նաև արտադրված ապրանքների վաճառքը և վաճառքից հետո սպասարկման իրականացումը։ Դա կբարձրացնի արտադրողների պատասխանատվու-

թյունն ու շահագրգռությունը արտադրանքի որակի նկատմամբ և կենցաղային սպասարկման ծառայության բարելավմանը, այն պահեստամասերով ապահովելուն: Նպատակահարմար է նաև կառավարման կազմակերպական կառուցվածքում ստեղծել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և իրացման հարցերի միջգերատեսչական մարմին:

Արդյունաբերության և առևտրի գործունեության փոխհամաձայնեցումը տնտեսական ողջ մեխանիզմի կատարելագործմանն ուղղված կարևոր միջոցառում է: Կառավարման այդպիսի նոր կարգն արդեն կիրառվում է մի շարք հանրապետություններում: Մամուլը բարձր է գնահատում նրանց գործունեության առաջին արդյունքները:

Ինչպես տեսնում ենք, բնակչության գնողունակ պահանջարկի բավարարման պրոբլեմի լուծումը պայմանավորված է տնտեսական մեխանիզմի հետևողական կատարելագործմամբ, մեխանիզմ, որը կոչված է ամբողջությամբ ապահովելու ինչպես պահանջարկի և առաջարկի, այնպես էլ ապրանքների առանձին խմբերի հաշվեկշռվածությունը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և իրացման, պլանավորման ու կառավարման համակարգի բարելավումը:

ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումում Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Արտադրահարաբերությունների կատարելագործումը պահանջում է պլանավորման ու կառավարման ըստ ամենայնի բարելավում: Այստեղ գլխավորը այնպիսի միջոցներ գտնելն ու իրականացնելն է, որոնք գործողության լայն ասպարեզ ընձեռեն մեր էկոնոմիկայի վիթխարի ստեղծարար ուժերին:

Այնպիսի թերությունների վերացումը, ինչպիսիք են ռեսուրսների փոշիացումը, պլանների ոչ հաշվեկշռվածությունը, ապրանքային զանգվածի, սպասարկման ծառայության ծավալների և բնակչության եկամուտների միջև եղած խզումը, թե՛ տնտեսական և թե քաղաքական խնդիր է»:

Ժողովրդական տնտեսության պլանավորման առավելագույն հաշվեկշռվածությունը բոլոր ճյուղերում հանրային արտադրության բարձր արդյունավետության հասնելու, երկրի էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության մակարդակի անշեղ վերելքի ապահովման գրավականն է:

---

# ԲԱՐՁՐ ԿՊԱՀԵՆՔ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԸ

**Մ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Երևանի կաթի կոմբինատի արհկոմի նախագահ

ԵՐԵՎԱՆԻ ԿԱԹԻ ԿՈՄԲԻՆԱՏԻ կոլեկտիվը պատասխանատվության բարձր զգացումով ընդունեց «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: Աշխատանքային կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպման վերաբերյալ Կենտկոմի որոշման պահանջները գործողության ուղենիշ են մեր կոլեկտիվի համար:

Մեր կոմբինատը հանրապետության կաթնարդյունաբերության առաջնեկն է և առաջատար ձեռնարկությունը: Այսօր այն միավորում է ութ գործարան և վեց մթերակայան: Նրա կոլեկտիվը քայլում է առաջավորների շարքում, պատվով կատարում պետական պլաններն ու սոցպարտավորությունները: Անցած տարի, օրինակ, կոմբինատը երկրին տվեց 1,6 միլիոն ռուբլու արտապլանային կաթնամթերք, օգուտների պլանը կատարեց 125,7 տոկոսով: Համամիութենական սոցմրցությունում հաղթելու համար կոլեկտիվը վերջին յոթ տարում հինգ անգամ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Հաջողությունները ձեռք են բերվել աշխատանքի հստակ կազմակերպման, աշխատանքային, կատարողական և տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման շնորհիվ: Այդ գործում նշանակալի է սոցմրցության դերը:

Աշխատանքի հիմքում դնելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների, ինչպես նաև արհմիությունների XVII համագումարի որոշումները՝ արհկոմը, կուսկազմակերպության անմիջական ղեկավարությամբ, սոցմրցությունը կազմակերպում է հանրային արտադրության արդյունավետությունը և աշխատանքի ու արտադրանքի որակը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու նշանաբանով:

Ինչպես կոմբինատի, այնպես էլ ենթակա գործարանների արհկոմները մշտապես զբաղվում են մրցության գործարարությունն ու ներգործունությունն ապահովելու հարցերով: Դրա կազմակերպման հիմքը ներգործարանային սոցմրցության պայմաններն են, որոնք վերանայվում են յուրաքանչյուր տարի և հաստատվում կոմբինատի ադմինիստրացիայի, կուսբյուրոյի և արհկոմի կողմից:

Ներգործարանային մրցության պայմանները ներառնում են ինչպես միավորման մեջ մտնող գործարանների, դրանց արտադրամասերի, բրիգադների, բաժինների, կոլեկտիվների, այնպես էլ անհատական և ըստ մասնագիտությունների մրցությունը: Մրցության հրապարակայնությունն ապահովելու նպատակով դրա պայմանները, ստանձնած պարտավորությունները և դրանց կատարման արդյունքները ցուցադրվում են կոմբինատի տարածքում, արտադրամասերում:

Միջարտադրամասային սոցմրցությունը ծավալվում է ըստ հիմնական և օժանդակ արտադրամասերի։ Մրցության կազմակերպման այսպիսի ձև կիրառում ենք այն նպատակով, որպեսզի բոլոր կոլեկտիվների համար ապահովենք իրենց դրսևորելու հավասար հնարավորություններ։

Կուսակցությունն անչափ կարևորում է սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ առած հայրենասիրական շարժումները, խորհուրդ տալիս լայնորեն տարածել և արմատավորել դրանք, խրախուսել դրանց հեղինակներին։ Ամեն մի լավ շարժում օգնում է արտադրության մարդկանց՝ բացահայտելու և գործի դնելու արտադրության զարգացման ռեզերվները, կատարելագործելու աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները, նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրանքի որակի բարելավմանը, հումքի և էներգետիկ ռեսուրսների տնտեսմանը։ Այդ ամենն իր արտացոլումն է գտնում նաև մեզ մոտ կազմակերպվող մրցությունում։ Ընթացիկ հնգամյակի տարիներին կոմբինատի առաջավոր արտադրամասերում և բրիգադներում ծնունդ են առել մի շարք հայրենասիրական նախաձեռնություններ։ Այսպես, օրինակ, կաթնաշոռ-թթվասերի արտադրամասի՝ Օլգա Խաչատրյանի ղեկավարած կաթնաշոռի եփման բրիգադի կոլեկտիվը հանդես եկավ «Տասնմեկերորդ հնգամյակի յուրաքանչյուր տարին՝ 11 ամսում» հայրենասիրական նախաձեռնությամբ։ Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1983 թ.) պլենումի որոշումներից՝ այդ նույն կոլեկտիվը պարտավորություն ստանձնեց աշխատանքի արտադրողականությունը արտապլանային կարգով բարձրացնել 5, ինքնարժեքը լրացուցիչ իջեցնել 0,75 տոկոսով։ Այդ նախաձեռնություններն արժանացան սննդարդյունաբերության բանվորների արհմիության հանրապետական կոմիտեի նախագահության հավանությանը և լայնորեն տարածվեցին ու արմատավորվեցին ճյուղի ձեռնարկություններում։

Աշխատանքի արտադրողականությունը պլանից ավելի մեկ տոկոսով բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ 0,5 տոկոսով իջեցնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի պահանջը մեծ ոգևորություն առաջացրեց նաև կոմբինատի մյուս ստորաբաժանումներում։ Եվահա անցած տարվա հունվարին մեր կոլեկտիվը, հանրապետության մի շարք ձեռնարկությունների հետ միասին, հեղինակ դարձավ հայրենասիրական մի նոր նախաձեռնության՝ սոցմրցություն ծավալել պլանից ավելի աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ իջեցման և 1984 թ. պլանի և ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքների կատարման ու գերակատարման գործում արտադրական բարձր արդյունքների հասնելու համար։ Այդ նախաձեռնությունն արժանացավ ՀԿԿ Կենտկոմի հավանությանը և լայն արձագանք գտավ հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում։

Մեր կոլեկտիվը մասնավորապես պարտավորվեց աշխատանքի արտադրողականությունը արտապլանային կարգով բարձրացնել 1,3 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ իջեցնել 0,6 տոկոսով, ստանալ 220 հազար ռուբլու օգուտ, ապրանքային արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարել մինչև դեկտեմբերի 20-ը և պլանից դուրս իրացնել ավելի քան մեկ միլիոն ռուբլու արտադրանք։ Նախատեսվեց նաև շարունակել տեխնիկական վերազինման և տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման աշխատանքները, տնտեսել 300 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 600 հեկակալորիա ջերմաէներգիա, 50 տոննա պայմանական վառելիք, աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևի մեջ ընդգրկել բանվորների ընդհանուր թվի մոտ 83 տոկոսը։ Այդ բոլոր պարտավորություններն զգալիորեն գերակատարվեցին։

Ի դեպ, բրիգադային ձևի մասին։ Կոմբինատում աշխատանքի կազմակերպման և խթանման բրիգադային եղանակը ներդրվել է դեռևս 1981 թվականին։ Այսօր այդ ոլորտում ներգրավված է 60 բրիգադ կամ կոմբինատի բանվորների 84,2 տոկոսը։ Այլ խոսքով, այդ առթիվ մեր ստանձնած պարտավորությունն արդեն կատարել ենք։ Բրիգադային եղանակի արմատավորումը էապես բարձրացնում է բանվորների շահագրգռությունը, նպաստում աշխատանքի արտադրողականության աճին, արտադրանքի որակի բարելավմանը, խնայողության ռեժիմի հետևողական կիրառմանը և, իհարկե, աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահության ամրապնդմանը։



Տարեսկզբին ստանձնելով պետական պլանները գերազանցող պարտավորություններ՝ բրիգադները գործարար մրցություն ծավալեցին դրանք պատվով կատարելու, բարձր վերջնարդյունքի հասնելու համար։ Պարբերաբար մրցության հաղթողներ են դառնում գլխամասային ձեռնարկության կաթնաշոռ-թթվասերի արտադրամասից՝ Օ. Խաչատրյանի, կաթի արտադրամասից՝ Ս. Ղանդիլյանի և Ց. Դարբինյանի, չոր սառույցի գործարանից՝ Է. Մարության, Երևանի № 2 կաթի գործարանից՝ Ք. Ղազարյանի, Արարատի կաթի գործարանից՝ Ա. Հակոբյանի ղեկավարած բրիգադները։

Մեզ մոտ մի քանի տարի է, ինչ կիրառվում է ըստ մասնագիտության մրցությունը։ Այն ներառնում է շուրջ 30 մասնագիտություն։ Մրցության արդյունքներն ամփոփելիս որոշվում են լավագույն ռացիոնալիզատորը, վարպետ-դաստիարակը, փականագործը, ապարատավարը...

Ռացիոնալիզատորների մրցությունը նպաստում է արտադրապրոցեսների ավտոմատացմանը, ձեռքի աշխատանքի կրճատմանը, հումքի, նյութերի խնայմանը և այլն։ Տասնմեկերորդ հնգամյակի անցած տարիներին կոմբինատի ռացիոնալիզատորների առաջարկություններից 112-ը ներդրվել է արտադրության մեջ։ Դրա շնորհիվ ձեռնարկությունն ստացել է 318.600 ռուբլու պայմանական օգուտ։ Ռացիոնալիզատորական շարժման ու այդ մրցության առաջամարտիկներ են հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատոր Ս. Ավդալյանը, փականագործներ Ե. Պետրոսյանը, Հ. Սիմոնյանը, ինժեներներ Բ. Խաչատուրովը, Վ. Գրիգորյանը, Մ. Ալեքսանյանը և ուրիշներ։

Լայն զարգացում է ստացել վարպետ-դաստիարակների շարժումը։ Բարձր որակավորում ունեցող 85 վարպետ-դաստիարակներ իրենց գիտելիքներն ու փորձը հաղորդում են շուրջ 180 երիտասարդ բանվորների։ Վարպետ-դաստիարակների խորհուրդը (նախագահ՝ Ե. Մկրտչյան) պարբերաբար քննարկում է երիտասարդների շրջանում տարվող աշխատանքի վիճակը, նրանց ստանձնած սոցպարտավորությունների կատարման ընթացքը, ինչպես նաև հանգստի կազմակերպման, կենցաղին, ապրելակերպին վերաբերող հարցեր։ Թերությունների առկայության դեպքում խորհուրդն իր նկատառումներն է ներկայացնում կոմբինատի ադմինիստրացիային ու արհկոմին։

Կոմբինատի դիրեկցիան, կուսբյուրոն, արհկոմը և ԼԿԵՄ կոմիտեն, կարևոր նշանակություն տալով վարպետ-դաստիարակների շարժման կազմակերպմանն ու հետագա զարգացմանը և մեկնակետ ունենալով ՀԱՄԿԽ-ի նախագահության ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի՝ «Երիտասարդ բանվորների և կոլտնտեսականների վարպետ-դաստիարակների շարժման հետագա մասսայական զարգացման մասին» որոշումը, մշակել են վարպետ-դաստիարակների շարժման պայմանները։ Դրանք շոշափում են նրանց անելիքները, խրախուսման ձևերն ու մեթոդները, խորհրդի խնդիրներն ու հիմնական ֆունկցիաները։

ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ «Սոցիալիստական մրցությունը մասսաների ստեղծագործությունն է։ Իր բուն էությամբ այն հիմնված է մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա»։ Այսօր արտադրության մարդկանց բարձր գիտակցականության չափանիշներից մեկը նրանց ակտիվ մասնակցությունն է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը։ Կոմբինատի ստորաբաժանումներում լայն պայքար է ծավալվել կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի և հարվածայինի կոչման համար։ 1983 թ. արդյունքներով այդ կոչմանն են արժանացել յոթ արտադրամասի, 35 բրիգադի կոլեկտիվներ և անհատական մրցության 483 առաջավորներ։ Այդ կոչումը կրելու համար են պայքարում կոմբինատի կոլեկտիվը, վեց արտադրամաս, տասը բրիգադ և 150 անհատներ։

Տարիներ շարունակ կաթնաշոռ-թթվասերի արտադրամասի կոլեկտիվը, որը գերազանց աշխատանքի հիանալի օրինակներ է տալիս, պահպանում է

կոմունիստականի պատվավոր կոչումը։ Այդ արտադրամասում խիզախում է կոմունիստական աշխատանքի հարվածայինների մի ստվար ջոկատ՝ Օ. Խաչատրյանի գլխավորությամբ։

Հանրապետական և միութենական սոցմրցությունում մեր կոլեկտիվի ծավալած քրտնաջան աշխատանքը և ձեռք բերած նվաճումները լայն ճանաչում են բերել նրան ոչ միայն մեր երկրում։ Երրորդ տարին է, ինչ կոլեկտիվը մրցության մեջ է Հունգարական Ժողովրդական Հանրապետության Դյոր-Շոպրոնի մարզի կաթնարդյունաբերության աշխատողների հետ։ Երկու կողմերի պատվիրակությունները կատարում են փոխայցելություններ, ծանոթանում միմյանց նվաճումներին, ուսումնասիրում աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները, ամփոփում մրցության արդյունքները, հարկ եղած դեպքում օգնության ձեռք մեկնում միմյանց։

Սոցմրցության կազմակերպման կարևոր փուլ է դրա արդյունքների ամփոփումը։ Այդ գործը մեզ մոտ դրված է ամուր հիմքերի վրա։ Մրցության արդյունքները նախապես ամփոփվում են ներքին օղակներում, ապա՝ կոմբինատի մասշտաբով։ Բրիգադներում և արտադրամասերում այն կատարվում է յուրաքանչյուր ամսվա, իսկ կոմբինատում՝ եռամսյակի վերջում։

Կոմբինատի մասշտաբով սոցմրցության արդյունքներն ամփոփելու նպատակով ստեղծել ենք կենտրոնական հանձնաժողով՝ գլխավոր ինժեների ղեկավարությամբ։ Հանձնաժողովում ընդգրկված են կուսբյուրոյի քարտուղարը, արհկոմի նախագահը, բաժինների վարիչներ, առաջատար մասնագետներ, առաջավոր բանվորներ։ Հանձնաժողովն արտադրամասային, բրիգադային և անհատական մրցության արդյունքները հանրագումարի է բերում՝ հիմք ընդունելով տվյալ ստորաբաժանման արդյունքների ամփոփման արձանագրությունը։ Ներգործարանային մրցության պայմաններին համապատասխան, ըստ արտադրամասերի հատկացված մրցանակային տեղերի, որոշվում են հաղթող բրիգադները։ Միջարտադրամասային մրցությունում հաղթողներին որոշելու համար հանձնաժողովը հաշվի է առնում ներգործարանային սոցմրցության պայմաններով նախատեսված կետերի կատարման վիճակը։ Միջարտադրամասային մրցության հաղթողների համար սահմանել ենք մրցանակային երեք տեղ։ Առաջին տեղը գրաված կոլեկտիվին տրվում են փոխանցիկ հուշադրոշ և դրամական պարգև։ Միջգործարանային սոցմրցության հաղթողները պարգևավորվում են կոմբինատի փոխանցիկ կարմիր դրոշով և դրամական մրցանակով։

Սոցմրցության արդյունքների ամփոփման ժամանակ կենտրոնական հանձնաժողովը, վարպետ-դաստիարակների խորհրդի ներկայացմամբ, տարին երկու անգամ որոշում է նաև կոմբինատի լավագույն վարպետ-դաստիարակներին, որոնց համար նախատեսված է մրցանակային երեք տեղ։ Հաղթող ճանաչված վարպետ-դաստիարակներին տրվում են պատվոգրեր և դրամական պարգև։ Իսկ տարվա արդյունքներով ամենալավագույնի լուսանկարը փակցվում է կոմբինատի պատվո տախտակին։ Լայն ճանաչման են արժանացել վարպետ-դաստիարկներ Ն. Մկրտչյանը, Խ. Մարգարյանը, Ն. Պետրոսյանը, Պ. Ներսիսյանը և ուրիշներ։

Բացի նշված ձևերից, կոմբինատում մրցություն է ծավալվում «Լավագույն բաժին», «Լավագույն ինժեներատեխնիկական աշխատող», «Լավագույն կոմերիտական-երիտասարդական բրիգադ» կոչումների համար։ Բաժինների մրցությանը մասնակցում են պլանային, աշխատանքի և աշխատավարձի, կադրերի, տեխնիկական, գլխավոր տեխնոլոգի, մթերման, գլխավոր մեխանիկի բաժինները, հաշվապահությունը, կենտրոնական լաբորատորիան։ Այս մրցության նպատակն է բարձրացնել վարչական ստորաբաժանումների անդամների պատասխանատվությունն իրենց վստահված գործի նկատմամբ։

Տարվա արդյունքներով հաղթող ճանաչված բաժնին տրվում է փոխանցիկ հուշադրոշ և դրամական պարգև՝ աշխատավարձի ամսական դրույքի 35 տոկոսի չափով։ Լավագույն ինժեներատեխնիկական աշխատողին որոշելիս՝ հանձնաժողովը հաշվի է առնում կոմբինատի տեխնիկական բաժնի եզրակացությունը։ Վերջինս տեխնիկական խորհրդի նիստում քննարկում է ինժեներների անձնական ստեղծագործական պլան-պարտավորությունների կատարման արդյունքները և լավագույններին ներկայացնում խրախուսման։



Յուրաքանչյուր տարի մրցության առաջավորներին պարգևատրելու նպատակով ծախսվում է կոմբինատի նյութական խրախուսման ֆոնդի 11—12 տոկոսը։ Բազմազան են բարոյական խրախուսանքի ձևերը։ Մրցության հաղթողների լուսանկարները փակցվում են կոմբինատի «Աշխատանքային փառքի» գրքում և պատվո տախտակին։ Բացի այդ, սոցմրցության առաջավորներին տրվում են անվճար տուրիստական ուղեգրեր՝ Սովետական Միությունում և արտասահմանյան երկրներում շրջագայելու համար։ 1983 թ. վարպետ-դաստիարակների խորհրդի նախագահ Ն. Մկրտչյանը մեկնել է Հունգարական Ժողովրդական Հանրապետություն, 1984 թ. շինբրիգադի բրիգադավար Խ. Մարգարյանը՝ Բուլղարական Ժողովրդական Հանրապետություն։ Հաղթողներին առաջնություն է տրվում առողջարանային, հանգստյան տան և տուրիստական ուղեգրեր հատկացնելիս։

Տարվա արդյունքներով սոցմրցության հաղթողները ներկայացվում են ՀՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության «Հնգամյակի հարվածային» կրծքանշանով պարգևատրման։

Փորձը ցույց է տվել, որ մրցության արդյունավետությունը դրա հրապարակայնության մեջ է։ Այս ասպարեզում բավականին դրական աշխատանք է կատարվել։ Կոմբինատի բոլոր գործարաններում, արտադրամասերում ստեղծվել են «մրցության անկյուններ»։ Մրցության էկրաններին գրանցվում են հաղթող ճանաչված կոլեկտիվների և անհատների անունները։ Գլխամասային ձեռնարկության կանաչապատ տարածքում տեղադրված են ճաշակով ձևավորված «Մեր առաջավորները», «Աշխատանքի կազմակերպման և խթանման բրիգադային եղանակին՝ կանաչ ճանապարհ» վահանակները։ Վերջինս բաղկացած է վեց բաժնից։ Դրանք նվիրված են բրիգադային եղանակի ներդրմանը, նյութական խրախուսման ձևերի կատարելագործմանը, բրիգադների մրցության պայմաններին, որակի կառավարման համակարգին, ինժեներատեխնիկական աշխատողների պարտականություններին՝ կապված բրիգադային եղանակի ներդրման հետ, բրիգադավարի և բրիգադային խորհրդի հիմնական իրավունքներին ու պարտականություններին։

Համամիութենական սոցմրցության մեջ կոմբինատի ձեռք բերած նվաճումները արդյունք են նաև այն բանի, որ դիրեկցիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները ամենօրյա հետևողական աշխատանք են տանում բանվորների աշխատանքի ու հանգստի պայմանները բարելավելու, կոլեկտիվի սոցիալական զարգացման հարցերը լուծելու համար։

Դեռևս 1981 թվականին շահագործման հանձնվեց կոմբինատի 280 տեղանոց մսուր-մանկապարտեզը, ավարտին է մոտենում Հանքավանում պիոներական ճամբարի կառուցումը, սկսվել է սպորտային համալիրի շինարարությունը։ Վերջինիս նախահաշվային արժեքը կազմում է 100 հազար ռուբլի։ 1985 թ. շահագործման կհանձնվի 56 բնակարանանոց կոոպերատիվ բնակելի շենքը։

Կոմբինատի արհկոմը և ադմինիստրացիան, քաջ գիտակցելով կուսակցության պարենային ծրագրի կատարման գործում արդյունաբերական ձեռնարկությունների դերը, գլխամասային ձեռնարկության տարածքում կազմակերպեցին ջերմոցային օժանդակ տնտեսություն՝ 4.000 ք.մ տարածությամբ։ Կոլեկտիվի անդամներին վաճառվել է մեծ քանակությամբ թարմ բանջարեղեն։ Նշված միջոցառումները ևս էապես նպաստում են կոլեկտիվի ամրապնդմանը և ձեռնարկության առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծմանը։

Ոգեշնչված ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումի որոշումներով՝ մեր կոլեկտիվը ջանք ու եռանդ չի խնայում տասնմեկերորդ հնգամյակի տնտեսական ու սոցիալական խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Խաղաղության պաշտպանության դիրքերում

# ՎԱՐՇԱՎԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ՝ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀՈՒՍԱԼԻ ՊԱՏՎԱՐ

**Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

ԵՐԵՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ՝ 1955 թվականի մայիսի 14-ին, Լեհական Ժողովրդական Հանրապետության մայրաքաղաքում Եվրոպայի սոցիալիստական երկրները կնքեցին բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության դաշինք, որը ստացավ Վարշավայի պայմանագիր անունը։ Նրա կազմի մեջ մտան Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետությունը, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, Լեհական Ժողովրդական Հանրապետությունը, Հունգարական Ժողովրդական Հանրապետությունը, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետությունը, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետությունը, Սովետական Միությունը։ Այդ կազմակերպությունը ստեղծվեց ի հակակշիռ արևմտյան այն երկրների, որոնք 1949 թվականի ապրիլի 4-ին ստեղծեցին ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկը, իսկ 1954 թվականին՝ Արևմտաեվրոպական ռազմական միությունը։ Դրանց ակտիվ անդամներից է Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետությունը. ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ն այստեղ ունեն 200-ից ավելի ռազմական բազաներ ու օբյեկտներ, որտեղ տեղադրված են 6.000 միջուկային մարտագլխիկներ, 70-ից ավելի «Փերշինգ—2» և թևավոր հրթիռներ։ Մինչև 1987 թ. այստեղ պետք է տեղադրվի այդ տիպի 204 հրթիռ։

ՆԱՏՕ-ի կազմավորման առաջին իսկ օրից արագ թափով աճեցին նրա մասնակից երկրների ռազմական ծախսերը։ Միայն 4 տարվա ընթացքում (1949—1953 թթ.) ՆԱՏՕ-ի երկրների ռազմական ծախսերն ավելացան 3 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ը ՆԱՏՕ-ի անդամ երկրներին տրամադրեց 4.500 մարտական ինքնաթիռ, 550 ռազմական նավ, 30 հազար տանկ, 30 հազար հրանոթ և զենքի այլ տեսակներ։ ԱՄՆ-ի և նրա դաշնակիցների նպատակն էր ուղղակի պատերազմ սանձազերծել Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ։ Այս պայմաններում իրենց անվտանգության, ինչպես Եվրոպայում ու աշխարհում խաղաղության պաշտպանության համար անհրաժեշտ դարձավ միավորել եղբայրական սոցիալիստական երկրների ուժերը։ Հենց այդպիսի հզոր վահան դարձավ Վարշավայի պայմանագիրը, որը նոր տիպի միջազգային հարաբերությունների օրինակ է։ Նրանում արտահայտված բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության սկզբունքները երկրների անկախության ու սուվերենության լիակատար հարգման դրսևորում են։

Պայմանագրում շեշտված է, որ նրա մասնակիցների նպատակն է գործել բարեկամության ու համագործակցության, տնտեսական և կուլտուրական փոխադարձ կապերի հետագա ամրապնդման ոգով՝ հետևելով անկախության ու սուվերենության, փոխադարձ հարգանքի, ներքին գործերին չմիջամտելու սկզբունքներին։



1985 թ. ապրիլի 26-ին Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների կուսակցական և պետական բարձրաստիճան գործիչների հանդիպման ժամանակ նշվեց. «Պատմությունը չի իմացել մեկ այլ այսպիսի դաշինք... որտեղ հարաբերությունները հիմնված են սուվերեն պետությունների լիակատար հավասարության և ընկերական փոխօգնության վրա։ Դաշինք, որը բառիս բուն իմաստով ժողովուրդների դաշինք է։ Դաշինք, որը ոչ ոքի չի սպառնում, այլ ամբողջովին նվիրված է խաղաղության պաշտպանությանը»։ Այո՛, անցած բոլոր երեսուն տարիներին Արևելքից չեն հնչել ռազմաշունչ կոչեր, այլ արվել են խաղաղասիրական, գործարար փոխզիջման հասնելու առաջարկություններ։ Այդ պաշտպանական դաշինքի հիմնական նպատակն է պաշտպանել նրա կազմի մեջ մտնող ժողովուրդների խաղաղ ստեղծարար աշխատանքը և մարդկությանը փրկել միջուկային աղետից։

Վարշավյան դաշինքի բարձրագույն մարմինը Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեն է (ՔԿԿ), որի աշխատանքին մասնակցում են պայմանագրի անդամ բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, պետությունների և կառավարությունների ղեկավարները։ ՔԿԿ-ին տրված են մեծ լիազորություններ։ Նրա մարմիններն են՝ Արտաքին գործերի մինիստրների կոմիտեն, Պաշտպանության մինիստրների կոմիտեն, Միացյալ հրամանատարությունը, Ռազմական խորհուրդը, Միացյալ զինված ուժերի շտաբը և Միացյալ քարտուղարությունը։ Վարշավայի պայմանագրի կազմակերպությունն իր տրամադրության տակ ունի Միացյալ զինված ուժեր, որոնք կազմված են այդ նպատակով առանձնացված ազգային զինված ուժերից և ղեկավարվում են կազմակերպության մեջ մտնող պետությունների պաշտպանության մինիստրների կողմից։ Միացյալ զինված ուժերի գործունեությունը ղեկավարում են Միացյալ հրամանատարությունը, Միացյալ զինված ուժերի Ռազմական խորհուրդը և գլխավոր շտաբը։

Վարշավայի պայմանագրի երեք տասնամյակի պատմությունը, նրա ողջ գործունեությունը ցույց են տալիս, որ այն կարևոր ու բարերար դեր է խաղում միջազգային գործերում, հավատարմորեն ծառայում եղբայրական երկրների ազգային և ինտերնացիոնալ շահերին, հանդիսանում սոցիալիստական նվաճումների պաշտպանը, խաղաղության հուսալի պատվարը։ Սոցիալիզմի երկրների միասնությամբ ու համախմբվածությամբ են մեծապես պայմանավորված այդ երկրների անվտանգությունը, ժողովուրդների խաղաղ աշխատանքը, միջուկային պատերազմի կանխումը։

Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը երևան եկավ որպես պատմական օբյեկտիվ անհրաժեշտություն իմպերիալիզմի այն վտանգավոր ռազմական սպառնալիքի առկայությամբ, որն ուղղված է սոցիալիստական ընկերակցության երկրների դեմ։ Անցած տարիները կազմակերպության մասնակիցների համար եղան ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մի շարք այլ երկրների ռազմատենչ ուժերի ագրեսիվ ոտնձգությունների դեմ ուղղված համառ ու լարված պայքարի տարիներ։ Դրանք համոզիչ ցույց տվեցին, թե որքան հեռատես ու ժամանակին էր սոցիալիստական ընկերակցության երկրների պաշտպանական ջանքերի միավորումը հօգուտ խաղաղության։

Սոցիալիստական ընկերակցության երկրների ռազմաքաղաքական դաշինքն այն կենտրոնն է, որից բխում են խաղաղության պահպանմանը, միջազգային քաղաքական մթնոլորտի բարելավմանը, սպառազինությունների մրցավազքի սանձահարմանը, սոցիալիստական պետությունների և ՆԱՏՕ-ի երկրների միջև դիմակայության մակարդակի իջեցմանը ծառայող նախաձեռնությունները։ Միջազգային ներկա սուր իրավիճակում այն ցուցադրում է կոլեկտիվ կամք, հաստատակամություն և զսպվածություն, լիակատար համաձայնություն ու փոխըմբռնում, հետևողականություն խաղաղության պայքարում։ Աշխարհի խաղաղության պահպանման օգտին միջազգային համագործակցության նրանց կոչը ջերմ հավանության և պաշտպանության է արժանանում մոլորակի բոլոր մասերում։ Դրա հետ մեկտեղ, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները չեն կարող հաշվի չառնել, որ իմպե-

բիալիստական ռեակցիոն շրջանները «խաչակրաց արշավանք» են հայտարարել կոմունիզմի դեմ, սոցիալիզմը որպես սիստեմ ոչնչացնելու, Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու պլաններ են մշակում, փորձում խախտել ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի, Վարշավայի պայմանագրի և ագրեսիվ ՆԱՏՕ-ի միջև ստեղծված ռազմաստրատեգիական հավասարակշռությունը։ Այդ նպատակով, տարեցտարի բարձրացրել և բարձրանում են ՆԱՏՕ-ի ռազմական ծախսերը։ Միայն վերջին 30 տարում ագրեսիայի ու պատերազմի այդ բլոկի երկրները ռազմական նպատակներով ծախսել են մոտ 4 տրիլիոն դոլար։ ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի նրա դաշնակիցները միայն վերջին 30 տարում սանձազերծել են 100-ից ավելի լոկալ պատերազմ։ Ահա թե ինչու այնքան կարևոր են եղբայրական սոցիալիստական պետությունների քաղաքական, տնտեսական և ռազմական միասնությունն ու համախմբվածությունը։

Անցյալ տարվա ապրիլի 19—20-ը Բուդապեշտում, իսկ դեկտեմբերի 3—4-ը Բեռլինում կայացավ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների արտաքին գործերի մինիստրների հերթական նիստը, որտեղ վերստին ցուցադրվեց պատերազմի ճանապարհը փակելու վճռականությունը։ Խաղաղության և անվտանգության պահպանման դաշինքի երկրների ներկայացուցիչները նորից արձանագրեցին, որ անհրաժեշտ է ավելի ընդլայնել սոցիալիստական երկրների համագործակցությունը մոլորակի այն բոլոր ուժերի հետ, որոնք հանդես են գալիս լիցքաթափմանը վերադառնալու, ռազմական մրցավազքը սանձահարելու օգտին։

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները մեծապես կարևորում են ժողովուրդների հակապատերազմյան շարժումը՝ այն ազդեցիկ գործոններից մեկը, որն իմպերիալիզմը չի կարող հաշվի չառնել։ Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները, Սովետական Միության գլխավորությամբ, միայն վերջին 30 տարում ներկայացրել են 120-ից ավելի խաղաղասիրական առաջարկություններ։ «Վարշավայի պայմանագրի հետ են կապված մեր երկրների խոշոր նախաձեռնությունները,— Վարշավայում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— որոնք նպատակամղված են Եվրոպայի խաղաղության ամրապնդմանը, լիցքաթափմանը»։ Սոցիալիստական երկրները պահանջում են պետությունների միջև երկխոսություն վարել, բանակցությունների միջոցով լուծել վիճելի հարցերը և աշխարհը փրկել միջուկային պատերազմի աղետից։ Չէ՞ որ այսօր աշխարհում կուտակված է 50 հազարից ավելի տարբեր տիպի միջուկային զենքի միավոր, որը մի քանի անգամ կարող է ոչնչացնել մեր փոքր մոլորակը։ Սոցիալիստական երկրներն ամեն ինչ անում են աշխարհը միջուկային զենքից ազատելու, այն երբեք չգործադրելու համար։ Միակողմանիորեն ստանձնելով առաջինը միջուկային զենք չգործադրելու պարտավորություն՝ ՍՍՀՄ-ը կրկին հավաստեց, որ պատերազմի սպառնալիքի վերացման նկատմամբ հոգատարությունը գլխավորն է իր քաղաքականության մեջ։

Աշխարհը միջուկային աղետից փրկելու համար, Վարշավայի պայմանագրի երկրներն անցյալ տարվա մարտին նորից դիմեցին ՆԱՏՕ-ի երկրների ղեկավարներին՝ առաջարկելով միջուկային պատերազմի կանխումը դիտել որպես արտաքին քաղաքականության գլխավոր նպատակ, հրաժարվել միջուկային պատերազմի որևէ՝ գլոբալ կամ սահմանափակ տարբերակի պրոպագանդումից, պարտավորություն ստանձնել առաջինը միջուկային զենք չգործադրել, քայլ առ քայլ, միատեսակ անվտանգության սկզբունքի հիման վրա ձգտել միջուկային սպառազինությունների կրճատման՝ ընդհուպ մինչև դրանց իսպառ վերացումը իրենց բոլոր տարատեսակներով։

Միջազգային մթնոլորտի բարելավմանն ավելի մեծ թափ կհաղորդվեր, եթե ՆԱՏՕ-ի երկրներն ընդունեին նաև Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի՝ Բուխարեստում, Վարշավայում, Պրագայում, Սոֆիայում, Մոսկվայում, Բուդապեշտում, Բեռլինում, ինչպես նաև 1985 թվականի ապրիլի 26-ին Վարշավայում արված խաղաղասի-



րական առաջարկությունները։ Վերջիններում մասնավորապես նշվում է.

Կնքել միջազգային հարաբերություններում փոխադարձաբար ռազմական ուժ չգործադրելու պայմանագիր, որը նախատեսեր բոլոր պետությունների պարտականությունը հրաժարվել ուժի գործադրումից և ուժով սպառնալուց՝ դրա բոլոր ձևերով ու դրսևորումներով հանդերձ, ներառյալ միջուկային զենքի գործադրման արգելումը։

Կենսագործել այն առաջարկությունները, որոնց համաձայն Համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունները պարտավորություն ստանձնեն առաջինը միջուկային զենք չգործադրել միմյանց նկատմամբ, որ ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի պետությունները չընդլայնեն իրենց դաշինքների մասնակիցների շրջանակը։

Իրականացնել ոչ միջուկային պետությունների անվտանգության երաշխիքների ամրապնդման միջոցառումներ, ներառյալ հրաժարումը միջուկային զենքի գործադրումից այն պետությունների դեմ, որոնք միջուկային զենք չունեն և իրենց տերիտորիայում այդպիսիք չեն պահում։

Անհապաղ բանակցություններ սկսել երկու ռազմական դաշինքների մասնակիցների միջև ոչ միայն միմյանց վրա հարձակում չգործելու համար, այլև պայմաններ ստեղծել միաժամանակ ցրելու ինչպես Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների դաշինքը, այնպես էլ ՆԱՏՕ-ի բլոկը։ Որպես առաջին քայլ՝ լուծարքի ենթարկել դրանց ռազմական կազմակերպությունները՝ սկսելով ռազմական գործունեության փոխադարձ կրճատումից։

Իբրև առաջին քայլ միաժամանակ կրճատել երկու կողմերի միջուկային պետությունների ռազմական բյուջեները՝ նախապես համաձայնեցված ընդհանուր գումարով։ Իրականացնել միջուկային զենքի փորձարկումների լրիվ և ընդհանուր արգելում, միջուկային սպառազինությունների քանակական ու որակական սառեցում, տիեզերական տարածության ռազմականացման արգելում, քիմիական զենքի արգելում և վերացում համաշխարհային մասշտաբով։

Արևմուտքի և Արևելքի երկրների միջև կնքել այնպիսի պայմանագիր, որի համաձայն վիճելի հարցերը լուծելու համար չգործադրել ո՛չ միջուկային, ո՛չ էլ սովորական զենք։ Ավելին, Սովետական Միությունը բազմիցս առաջադրել է հատկապես Եվրոպայում միջուկազերծ գոտիներ ստեղծելու գաղափարը։ Սովետական Միությունը, Վարշավայի պայմանագրի երկրները համատեղ հանդես են գալիս այն բանի օգտին, որ միջուկազերծ գոտիներ ստեղծվեն մասնավորապես Հյուսիսային Եվրոպայում, Բալկաններում և Եվրոպայի այլ շրջաններում։ Դրանց ստեղծումն անվտանգության ամրապնդման պայքարի կարևոր միջոցներից է։ Միջուկային սպառնալիքի սանձահարման պայքարում յուրաքանչյուր ավանդ ծանրակշիռ է ու կարևոր։

Հիրավի, այժմ միակ խելամիտ ելքը դիմակայող ուժերի համաձայնությունն է սպառազինությունների, նախ և առաջ միջուկային սպառազինությունների մրցավազքը երկրագնդի վրա անհապաղ դադարեցնելու և տիեզերքում այն թույլ չտալու շուրջը։ Սակայն օրեցօր մեծանում է ոչ միայն միջուկային, այլև «աստղային պատերազմի» վտանգը։ «Աստղային պատերազմների» զենքի մշակման համար Ռեյգանի վարչակազմը նախատեսել է ծախսել 26 միլիարդ դոլար։ Սովետական Միությունը և Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները սկզբունքորեն այլ մոտեցում ունեն. նրանք հիմնականում պայքարում են տիեզերքը պատերազմի սպառնալիքի նոր աղբյուրի չվերածելու, հարվածային տիեզերական տարբեր զենքեր չստեղծելու, տիեզերքը միմիայն խաղաղ նպատակներով օգտագործելու համար։ ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ն ջանում են ամեն կերպ սահմանափակել սոցիալիզմի երկրների միջազգային ազդեցությունը, թուլացնել նրանց համախմբվածությունը և հասնել ռազմական գերազանցության։ Վերջերս, ինչպես նշվեց Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների կուսակցական և պետական ղեկավարների հանդիպման մասնակիցների կողմից ընդունված կոմյունիկեում, «Սովետական Միությունը, Վարշավայի պայմանագրի երկրները գերազանցություն չեն փնտրում ո՛չ երկրագնդի վրա և ոչ էլ տիեզերքում»։

Սակայն, ինչպես բազմիցս հայտարարել է Սովետական Միությունը, թույլ չի տրվի, որ ռազմաստրատեգիական հավասարակշռությունը խախտվի։ Սա միաժամանակ Վարշավայի պայմանագրի մասնակիցների ընդհանուր հաստատուն դիրքորոշումն է։ Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու մոլուցքով տարված՝ ՆԱՏՕ-ի խորհրդի որոշմամբ Անգլիայում, ԳՖՀ-ում և Իտալիայում 1983 թ. նոյեմբերից շարունակում են տեղադրվել միջին հեռահարության միջուկային հրթիռներ։

Սովետական Միությունն իր և իր դաշնակիցների անվտանգությունն ապահովելու նպատակով ամեն ինչ անում է, որպեսզի հեռացնի պատերազմի վտանգը, պահպանի խաղաղությունը ներկա և գալիք սերունդների համար։ Դրա վկայությունն է անցյալ տարվա հունիսի 15-ին ՏՓԽ-ի երկրների ղեկավարների ընդունած «Խաղաղության ամրապնդումը և միջազգային տնտեսական համագործակցությունը» հայտարարությունը, և այս տարվա ապրիլի 26-ի կոմյունիկեն, ուր նշվեց, թե ՎՊՄ-ի պետությունները նորից հանդես են գալիս հանուն բազմակողմանի, իրավահավասար ու փոխշահավետ միջազգային համագործակցության զարգացման, որ նրանք հիմա էլ հանդես են գալիս իրենց դաշինքը և Հյուսիսատլանտյան բլոկը ցրելու, իսկ որպես առաջին քայլ՝ դրանց ռազմական կազմակերպությունները միաժամանակ ցրելու օգտին։

Վարշավայի պայմանագրի մասնակից երկրներն այն համոզմանն են, որ քանի դեռ գոյություն ունի ՆԱՏՕ-ի ռազմական բլոկը և պահպանվում է Եվրոպայի ու համընդհանուր խաղաղությանն սպառնացող վտանգը, սոցիալիստական պետությունները կամրապնդեն իրենց պաշտպանական դաշինքը, միևնույն ժամանակ ուժեղացնելով զինաթափման և խաղաղության, ռազմական բլոկների հաղթահարման նպատակով մղվող պայքարը։

Վարշավայի պայմանագիրը 1985 թ. ապրիլի 26-ին երկարացվեց ևս 20 տարով, որը թելադրված է դաշնակից երկրների հուսալի անվտանգության, միջազգային գործերում նրանց սերտ փոխգործողության ապահովման անհրաժեշտությամբ։ Ելնելով պատերազմի սպառնալիքի աստիճանից, Վարշավայի պայմանագրի մասնակից պետություններն այսուհետ ևս անհրաժեշտ միջոցներ կձեռնարկեն իրենց կոլեկտիվ պաշտպանունակությունը պատշաճ մակարդակի վրա պահելու համար։ Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները կրկին հավաստում են, որ իրենք չեն ձգտում հասնելու ռազմական գերազանցության, բայց և թույլ չեն տա ռազմական գերազանցություն իրենց նկատմամբ։ Նրանք հանդես են գալիս ուժերի հավասարակշռությունը առավել ցածր մակարդակի վրա ապահովելու օգտին։ «Երկարաձգելով Վարշավայի պայմանագիրը,— շեշտեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— մենք կրկին արտահայտում ենք մեր հաստատուն համոզվածությունը՝ համատեղ ջանքերով կարելի է և պետք է կանխել պատերազմը։ Այսպիսին է մեր երկրների ժողովուրդների կամքը։ Դրան են նպատակամղված մեր կուսակցությունների և կառավարությունների քաղաքականությունը, սոցիալիստական պետությունների պաշտպանական դաշինքի ողջ գործունեությունը»։

Ստորագրված իրավական ակտը նորից ցույց տվեց, որ այն, անտարակույս, կնպաստի սոցիալիզմի առաջադիմական, խաղաղասիրական առաքելության իրականացմանը։ Խոսելով պայմանագրի երկարաձգման պատմական նշանակության մասին, ԼՄԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Յարուզելսկին նշեց. «Վահանը մի կողմ չեն դնում, երբ մյուս կողմը ձեռքը պարզում է սրին։ Մենք այդպիսի վրիպում թույլ չենք տա»։

Արդի միջազգային իրադրության մեջ, ավելի քան երբևէ, անհրաժեշտ է միավորել բոլոր ժողովուրդների և պետությունների, բոլոր խաղաղասեր ուժերի ջանքերը՝ անկախ նրանց քաղաքական կողմնորոշումից, որպեսզի դադարեցվի աշխարհի սողքը դեպի միջուկային աղետ։

Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունները, պառլամենտներն ու կառավարությունները



այսուհետև էլ կպայքարեն հանուն այն բանի, որ աշխարհից վանվի միջուկային պատերազմի սպառնալիքը, դադարեցվի սպառազինությունների, նախ և առաջ՝ միջուկային սպառազինությունների, մրցավազքը երկրագնդի վրա և այն կանխվի տիեզերքում, անցում կատարվի դեպի զինաթափում, վերսկսվի լիցքաթափման ու համագործակցության պրոցեսը միջազգային հարաբերություններում։

Խաղաղության պաշտպանության հուսալի պատվար է նաև սոցիալիստական երկրների տնտեսական միասնությունը։ 1949 թվականի հունվարին, երբ սոցիալիստական երկրներն ստեղծեցին տնտեսական փոխօգնության խորհուրդը, բուրժուական մամուլը այդ նոր միջպետական կազմակերպությունն անվանեց «աղքատների բաժնետիրական ընկերություն», որը մոտ ապագայում լիակատար կրախի կմատնվի։ Կյանքը հերքեց նրանց այդ «գուշակությունները»։ Արևելյան Եվրոպայի սոցիալիստական 6 երկրները՝ Բուլղարիան, ԳԴՀ-ն, Լեհաստանը, Հունգարիան, Չեխոսլովակիան, Ռումինիան և ՍՍՀՄ-ը, այնուհետև Կուբայի Հանրապետությունը, Վիետնամը և Մոնղոլիան, ստեղծելով աշխարհում ամենադինամիկ տնտեսական ուժը, լայն մասշտաբներով ծավալեցին սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի պրոցեսը։

Տնտեսական փոխօգնության խորացման համար նոր հուժկու ազդակ եղավ 1984 թվականի հունիսի 12—14-ը Մոսկվայում տեղի ունեցած ՏՓԽ-ի անդամ երկրների բարձր մակարդակի խորհրդակցությունը։ «Մեր ընկերակցությունն ամրանդվել և աճել է,— ասված է ՏՓԽ-ի դեկլարացիայում,— մեծացել է նրա միջազգային հեղինակությունը։ Ուժեղացել է նրա դրական ազդեցությունը յուրաքանչյուր եղբայրական երկրի տնտեսական կյանքի վրա»։

Այժմ ՏՓԽ-ն մի համբրաշխ, իրավահավասար ընտանիք է, որը միավորում է Եվրոպայի, Ասիայի ու Լատինական Ամերիկայի եղբայրական տասը պետությունների։ Նրանք ընդհանուր ջանքերով բազմապատիկ մեծացրել են իրենց տնտեսական պոտենցիալը։ ՏՓԽ-ի երկրների արդյունաբերության համախառն արտադրանքը 1950—1982 թվականներին աճեց 13, իսկ արտաքին առևտրի շրջանառությունը՝ երեսուն անգամ։ ՏՓԽ-ի պետություններին բաժին է ընկնում մեքենաշինության համաշխարհային արտադրանքի 34 տոկոսը, աշխարհում արտադրվող էլեկտրաէներգիայի 21, արդյունահանվող նավթի 24, գազի 35, արտադրվող պողպատի 32, գյուղատնտեսական արտադրանքի 20 տոկոսը։ Սակայն վիճակագրական պատկերը լրիվ չի լինի, եթե չհիշատակենք այն փաստը, որ միայն վերջին քառորդ դարի ընթացքում ընկերակցության երկրների աշխատավորները ստացել են 75 մլն բնակարան։ ՏՓԽ-ի պետություններին է պատկանում համաշխարհային գիտատեխնիկական պոտենցիալի գրեթե մեկ երրորդը։ ՏՓԽ-ի երկրներում արդյունաբերական արտադրության ծավալը կրկնապատիկ մեծ է, քան «ընդհանուր շուկայի» պետություններում։ Սոցիալիզմի աշխարհին խորթ են ճգնաժամային ցնցումները, սոցիալական ծրագրի կրճատումները, զանգվածային գործազրկությունը, աշխատավորների կենսամակարդակի իջեցումը։

ՏՓԽ-ի անդամ երկրների աճած տնտեսական հզորությունը դարձել է նրանց վարած խաղաղության, միջազգային լարվածության թուլացման և մյուս պետությունների հետ փոխշահավետ համագործակցության քաղաքականության նյութական հիմքը։ ՏՓԽ-ի՝ Մոսկվայում կայացած նստաշրջանի մասնակիցներն աշխարհի ժողովուրդների և պետությունների ու կառավարությունների ուշադրությունը հրավիրեցին այն բանի վրա, որ անհրաժեշտ է անհետաձգելի միջոցներ ձեռնարկել՝ ապահովելու միջազգային քաղաքական ու տնտեսական հարաբերությունների բնականոն զարգացումը հանուն մոլորակի խաղաղության ամրապնդման և մարդկության պրոգրեսի։

Սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունը, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների տնտեսական պոտենցիալի, զինված ուժերի մարտունակության հզորացումն անհրաժեշտ են սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու համար։ Եղբայր ժողովուրդների ամուր վահան է Վարշավայի պայմանագիրը, որը հուսալիորեն ծառայում է խաղաղության և սոցիալիզմի շահերին։

# Կ. ՄԱՐՔՍԻ՝ ԱՐԺԵՔԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԴՐԱ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՆԵՐԸ

Վ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

Մարքսիստական տնտեսագիտական ուսմունքի դեմ պայքարը միշտ եղել է բուրժուական քաղաքատնտեսության գլխավոր խնդիրը: Փոխվել են մարքսիզմի դեմ մղվող պայքարի ձևերն ու եղանակները, բայց անփոփոխ է մնացել ստրատեգիական գիծը, որին հետևել և մեր օրերում էլ հետևում են բուրժուական գաղափարախոսները՝ նպատակ ունենալով այս կամ այն եղանակով «հերքել» Կ. Մարքսի ուսմունքը:

Պատմական զարգացման բուն ընթացքով իր ճշմարտացիությունը հաստատած մարքսիստական տեսության լայն տարածումը բուրժուական գաղափարախոսներին ստիպում է ակտիվացնելու պայքարը մարքսիզմի դեմ: Վերջին տասնամյակներին Արևմուտքում շեշտակիորեն մեծացել է Կ. Մարքսի գիտական ժառանգությանը վերաբերող գրականության հոսանքը: Ժամանակակից բուրժուական քաղաքատնտեսության ամենաբազմապիսի դպրոցների ու ուղղությունների ներկայացուցիչները ապարդյուն ճիգեր են գործադրում ապացուցելու Կ. Մարքսի տնտեսագիտական ուսմունքի և հատկապես արժեքի ու հավելյալ արժեքի նրա տեսության հիմնարար դրույթների անհիմն լինելը:

Մարքսի քննադատների շրջանում նկատելի տեղ է գրավում բուրժուական քաղաքատնտեսության՝ համեմատաբար վերջերս ձևավորված նեոռիկարդոյականության ուղղությունը, որի բնույթն ու առանձնահատկությունները դեռևս բավարար լուսաբանված չեն սովետական գրականության մեջ:

Նեոռիկարդոյականության հիմնադիր անգլիացի տնտեսագետ Պ. Սրաֆֆան Ապրանքների արտադրությունը ապրանքների միջոցով աշխատության մեջ (1960 թ.) առաջարկել է գնագոյացման ու բաշխման իր տեսությունը, որն ուղղված է անմիջականորեն արժեքի նեոկլասիկ տեսության կանխադրույթների դեմ: Այն միաժամանակ գործիք է, որի օգնությամբ Սրաֆֆայի հետևորդները՝ նեոռիկարդոյականները, փորձում են քննադատել Կ. Մարքսի՝ արժեքի տեսությունը:

Պետք է նշել, որ նշված աշխատությունը բավական լայն արձագանք է առաջացրել Արևմուտքում և ոչ միանշանակ գնահատական ստացել ժամանակակից բուրժուական գրականության մեջ: Թեև ինքը՝ Պ. Սրաֆֆան, իր աշխատության մեջ անմիջականորեն չի հայտնում վերաբերմունքը Մարքսի տնտեսագիտական ուսմունքի նկատմամբ, սակայն բուրժուական մի շարք տնտեսագետներ պնդում են, որ նրա առաջարկած՝ գնագոյացման ու բաշխման սիստեմը վերածնում է դասական բուրժուական քաղաքատնտեսության ավանդույթները, մասնավորապես, ռիկարդոյական մոտեցումն այդ պրոբլեմներին և նույնիսկ «ավանդ» է արժեքի մարքսիստական տեսության զարգացման մեջ:

Մարքսի նեոռիկարդոյական գնահատականն առավել լրիվ շարադրված է ժամանակակից բուրժուական քաղաքատնտեսության՝ այդ ուղղության ներկայացուցիչ Յա. Ստիդմանի Մարքսը Սրաֆֆայից հետո աշխատության մեջ, որտեղ հեղինակը պնդում է, որ նեոռիկարդոյական տեսությունն իբր տալիս է էկոնոմիկայում գների և շահույթի գոյացման պրոցեսի տրամաբանորեն անբասիր բացատրություն, ուստի այդ առումով արժեքի տեսությունն ամենևին էլ պիտանի չէ: «Արժեքի տեսությունը,— նշում է Յա. Ստիդմանը,— բոլորովին ի վիճակի չէ լինելու այն հիմքը, որի միջոցով Կ. Մարքսը ձգտում էր վերլուծել կապիտալիստական էկոնոմիկայի կարևորագույն երևույթները: Դրանց կարելի է սպառիչ բացատրություններ տալ առանց որևէ արժեքային մեծությունների դիմելու»:

Գնագոյացման իրենց տեսության մեջ, որը Պ. Սրաֆֆայի հետևորդները հակադրում են Կ. Մարքսի արժեքի և արտադրության գնի տեսությանը, նրանք ելնում են էկոնոմիկայում գինը և շահույթի միջին նորման հաշվարկելու համար անհրաժեշտ պայմանների մաթեմատիկական վերլուծությունից: Իրենց մաթեմատիկական սխեմաներում նեոռիկարդոյականները նախապես տրված են ենթադրում հասարակական վերարտադրության բնական-իրեղեն համամասնությունները, այսինքն՝ բոլոր ճյուղերի արտադրանքի թողարկման ծավալները, օգտագործվող տեխնիկայի և տեխնոլոգիայի բնույթը, աշխատանքի հասարակական բաշխումը արտադրության ճյուղերի միջև, բանվորների ռեալ աշխատավարձի մեծությունը: Այսպիսի ելակետային նախադրյալներով են նեոռիկարդոյականները հաշվարկում բոլոր ապրանքների արտադրության գները և շահույթի միջին նորմայի մեծությունը: Այդ նպատակի համար կազմվում և լուծվում է միջճյուղային հաշվեկշռային հավասարումների համակարգը, որի մեջ անհայտ են բոլոր արտադրվող ապրանքների գները, շահույթի միջին նորման և դրամական աշխատավարձի դրույքը:

Գնի ու շահույթի սահմանմանը ցուցաբերվող այդպիսի ձևական-մաթեմատիկական մոտեցումը, նեոռիկարդոյականների կարծիքով, «հերքում է» Կ. Մարքսի արժեքի տեսությունը: «Արտադրության ֆիզիկական պայմանները և ռեալ աշխատավարձի մեծությունը,— շեշտում է Յա. Ստիդմանը,— բավական են որոշելու համար շահույթի նորման և ապրանքների գները՝ արտադրության ամեն տեսակ ձևերի և ճյուղերի միջև աշխատանքի հասարակական բաշխման դեպքում: Ոչ մի արժեքային մեծություն այս հաշվարկների մեջ չի մտնում»: Դրանով իսկ Մարքսի արժեքի տեսությունը, հավաստացնում են նեոռիկարդոյականները, «ոչ մի էական դեր չի խաղում շահույթի նորմայի և արտադրության գնի որոշման գործում»:

Այլ կերպ ասած, Կ. Մարքսի արժեքի տեսությունը, ինչպես պնդում են նեոռիկարդոյականները, պարզապես պետք չէ գների ձևավորման պրոցեսի հետազոտման գործում, որոնց մակարդակն ու կառուցվածքը անմիջականորեն որոշվում են «արտադրության հասարակական-տեխնիկական պայմաններով»: Հենց այդ պատճառով էլ, եզրակացնում է Յա. Ստիդմանը, «նրանք, ովքեր ձգտում են մատերիալիստական բացատրություն տալ կապիտալիստական էկոնոմիկայի երևույթներին, պետք է հրաժարվեն այդ նպատակի համար Մարքսի արժեքի տեսությունն օգտագործելուց»:

Կապիտալիստական էկոնոմիկայի կարևորագույն երևույթների ու պրոցեսների էությունը ճանաչելու համար Կ. Մարքսի արժեքի տեսության դերի ու նշանակության մասին Ստիդմանի տված այդպիսի գնահատականն զգալի չափով պայմանավորված է այդ տեսության մի շարք կարևորագույն սկզբունքների ու դրույթների նրա սեփական, խորապես սխալ մեկնաբանմամբ:

Արժեքի հասկացությունը Ստիդմանի մոտ հանգում է մաթեմատիկական մեթոդների օգնությամբ տվյալ ապրանքի մեջ իրայնացված աշխատանքի քանակի հաշվարկմանը՝ առանց հաշվի առնելու այն առանձնահատուկ սոցիալ-պատմական ձևը, որում աշխատանքը հանդես է գալիս որպես արժեքի աղբյուր: Դրանով իսկ արժեքի կատեգորիան Ստիդմանը դիտում է միայն քանակական տեսակետից: Չնայած նեոռիկարդոյականների այն պնդումներին, որ «արժեքի հասկացությունը վերաբերում է միայն ապրանքային արտադրությանը», իրենց մեկնաբանման մեջ նրանք վերացարկվում են ապրանքային արտադրության սոցիալ-տնտեսական հարաբերություններից, որոնք և կազմում

են այդ կատեգորիայի բովանդակությունը։ Յա. Ստիդմանը նույնիսկ չի էլ հիշատակում աշխատանքի երկակի բնույթի մասին ուսմունքը, այլ կերպ ասած, շրջանցում է հենց այն սկզբունքորեն նորը, որ Կ. Մարքսը ներդրել է աշխատանքային արժեքի տեսության մեջ՝ ի տարբերություն բուրժուական դասական քաղաքատնտեսության։

Արժեքը, Մարքսի ուսմունքի համաձայն, ստեղծվում է յուրահատուկ հասարակական, վերացական աշխատանքով, իսկ Ստիդմանի մոտ՝ ընդհանրապես աշխատանքով, որը չափվում է աշխատաժամանակով՝ որպես արտադրության նյութատեխնիկական առաջընթացի տարր, այսինքն՝ նրա մոտ արժեքի աղբյուր համարվում է աշխատանքը՝ որպես զուտ տեխնիկական երևույթ։ Այն, որ Յա. Ստիդմանն անտեսում է արժեքի սոցիալական բնույթը, ակնբախորեն դրսևորվում է նաև վերացական աշխատանքի կատեգորիայի նրա մեկնաբանման մեջ։ Տվյալ ապրանքի մեջ իրայնացված կոնկրետ աշխատանքի զանազան տեսակները Ստիդմանը չափակցում է, որպես դրանց ընդհանուր չափ ընտրելով աշխատաժամանակը։ Նման եղանակով աշխատանքի կոնկրետ տեսակները հավասարեցվում են մարդկային աշխատանքին ընդհանրապես, որպես աշխատաժամանակի ծախսումը, բայց ամենևին ոչ վերացական աշխատանքի՝ դրա մարքսիստական ըմբռնմամբ։ Նեոռիկարդոյականները շփոթում են աշխատանքն ընդհանրապես՝ որպես արտադրության պրոցեսի բաղկացուցիչ մաս, անկախ նրա հասարակական ձևից, վերացական աշխատանքի հետ՝ որպես ապրանքի արժեքի աղբյուրի։

Ապրանքի մեջ ներկայացված աշխատանքի զանազան տեսակների օգտակար բնույթից աբստրահվելը նեոռիկարդոյականների մոտ հանդես է գալիս որպես զուտ ձևական տրամաբանական գործողություն։ Կ. Մարքսի մոտ, ընդհակառակը, կոնկրետ աշխատանքի զանազան տեսակների հանգեցումը վերացական մարդկային աշխատանքի իրականացվում է օբյեկտիվորեն, ապրանքների արժեքների հավասարեցման միջոցով՝ շուկայում դրանց փոխանակության պրոցեսում։ Ըստ Մարքսի կոնկրետ աշխատանքը ապրանքային արտադրության պայմաններում ընդունում է մասնավոր աշխատանքի անմիջական ձև։ Աշխատանքի հասարակական բնույթը հիշյալ պայմաններում երևան է գալիս միայն ապրանքների փոխանակման պրոցեսում։ Բայց, ինչպես ապացուցել է Մարքսը, ապրանքների փոխանակությունը հավասարություն է։ Իսկ աշխատանքի զանազան տեսակների որոշակի քանակները հավասարեցնել կարելի է միայն վերացարկվելով դրանց կոնկրետ որոշակիությունից, այսինքն՝ դրանք հանգեցնելով ընդհանրապես աշխատանքի՝ որպես մարդկային աշխատուժի ծախսումի։

Իսկ Յա. Ստիդմանը Մարքսի իր մեկնաբանման մեջ «արժեք» հասկացությունը իջեցնում է մինչև յուրատեսակ անալիտիկ աբստրակցիայի մակարդակի. դրանով իսկ անուշադրության մատնելով ապրանքի մեջ եղած հակասությունները, որոնք կապիտալիզմի բոլոր հակասությունների սաղմն են։ Դրա հետևանքով նեոռիկարդոյականների տեսադաշտից դուրս են մնում մասնավոր և հասարակական աշխատանքի, կոնկրետ և վերացական աշխատանքի, արժեքի և սպառողական արժեքի միջև եղած հակասությունները։

Արժեքի մարքսյան տեսության իրենց մեկնաբանության մեջ նեոռիկարդոյականներն ընկնում են նաև մեկ այլ սխալի մեջ, ըստ որի ապրանքի արժեքի ստեղծման պրոցեսն արտադրության վերջին փուլում ծախսված և նյութական ծախսումների տարրերի մեջ իրայնացված աշխատաժամանակի զուտ մեխանիկական միավորումն է։ Ընդ որում կենդանի աշխատանքի՝ որպես արժեքի միակ աղբյուրի, ակտիվ, որոշիչ դերն անտեսվում է։ Մարքսի մոտ ապրանքների արժեքի մեծությունը որոշվում է դրանց արտադրության համար աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումներով, իսկ նեոռիկարդոյականների մոտ՝ փաստացի ծախսված աշխատանքով։ Այս դեպքում ապրանքի անհատական և հասարակական արժեքի տարբերության հարցը նույնիսկ չի էլ ծագում, քանի որ նրանք ենթադրում են, որ յուրաքանչյուր ճյուղում օգտագործվում է արտադրության միայն մեկ տեխնոլոգիական եղանակ, մի



նախադրյալ, որն անհրաժեշտ է «արժեքի» մեծության նրանց մաթեմատիկական հաշվարկների համար։ Դրանով իսկ նրանք իրենց վերլուծությունից բացառում են ներճյուղային մրցակցությունը, որը կարևոր դեր է խաղում արժեքի օրենքի գործողության մեխանիզմում։

Մարքսի արժեքի տեսության նեոռիկարդոյական ընկալումը փաստորեն հանգում է նրա մի շարք կարևորագույն դրույթների և սկզբունքների խեղաթյուրման։ Յա. Ստիդմանը մաթեմատիկական մեթոդների միջոցով ապրանքների «արժեքի» մեծությունը հասցնում է մինչև կոնկրետ թվային արտահայտության։ Ռեալ կապիտալիստական իրականության մեջ արժեքը, սակայն, ոչ ոք չի «հաշվարկում», ավելին, կապիտալիստները նույնիսկ չեն էլ կասկածում դրա գոյության մասին։ Այն մեխանիզմը, որով իրականացվում է արժեքի օրենքը, կապիտալիստների կոնկրետ պայքարն է։ Գների և շահույթների շարժը ի հայտ է բերում կապիտալի առավել շահավետ կիրառման ոլորտը։ Արժեքը կապիտալիզմի պայմաններում դրսևորվում է գների մշտական տատանման մեջ, որի ետևում թաքնված են հասարակական աշխատանքի բաշխման ու վերաբաշխման բարդ պրոցեսները, զանազան դասակարգերի և սոցիալական խմբերի եկամուտների փոփոխությունը։

Իրենց տեսական սխեմաներում նեոռիկարդոյականները ելնում են հասարակական արտադրության բնական-իրեղեն որոշակի կառուցվածքից, բայց թե ինչո՞վ է որոշվում բուն այդ կառուցվածքը և կարելի՞ է, արդյոք, դրա ձևավորումը դիտել գնից կտրված, պրոբլեմի այդ շատ էական կողմը տեղ չի գտել նեոռիկարդոյական տեսության մեջ, որը գնագոյացման բուրժուական կոնցեպցիաների այդ տարատեսակության գիտատեսական սնանկության վառ հաստատումն է։

Դա առավել ևս ակնհայտ է դառնում, եթե նկատի ունենանք, որ կապիտալիզմի օրոք և՛ պահանջարկը, և՛ առաջարկը որոշվում են արժեքային գործոններով։ Գների ընդհանուր մակարդակի ու կառուցվածքի փոփոխման դեպքում նույնը չէր մնա ապրանքների և ծառայությունների պահանջարկը, հետևաբար, նաև արտադրանքի թողարկման ծավալը զանազան ճյուղերում, կփոխվեին նաև արտադրության տեխնիկական պայմանները, ռեալ աշխատավարձը, այսինքն՝ կփոխվեին հասարակական արտադրության բնամթերային-իրեղեն բուն համամասնությունները, որոնցից նեոռիկարդոյականները ելնում են գների ու շահույթի իրենց մաթեմատիկական հաշվարկներում։

Նեոռիկարդոյականների դրույթների վերլուծությունը բացահայտում է նրանց տեսության մեջ եղած ձևական-տրամաբանական հակասությունները. գների հաշվարկների նեոռիկարդոյական ելակետն իսկ պայմանավորված է այս տեսության մեջ արտադրության՝ նախապես տրված բնամթերային-իրեղեն կառուցվածքով, որի ձևավորման պրոցեսը անհնար է բացատրել արժեքի օրենքից կտրված։

Այդ պրոցեսների սպառիչ բացատրությունը, ինչպես հայտնի է, տվել է Կ. Մարքսը։ Կապիտալի 3-րդ և 4-րդ հատորներում նա բացահայտել է տարերայնորեն գործող արժեքի օրենքի դերը հասարակական աշխատուժը և արտադրության միջոցները զանազան ճյուղերի միջև բաշխելու գործում։

Հասարակական արտադրության համամասնությունները կարգավորվում են արժեքով՝ գների ու շահույթների շարժման մեխանիզմի միջոցով։ Իսկ գների ձևավորման պրոցեսի նկատմամբ նեոռիկարդոյական մոտեցման դեպքում ընդհանրապես անհնար է բացատրել, թե ինչպես է կատարվում հասարակական աշխատուժի բաշխումը ճյուղերի միջև։

Նեոռիկարդոյական մոդելի առանձնահատկությունն այն է, որ բոլոր ապրանքների գները հաշվարկվում են միաժամանակ՝ ելնելով ճյուղերի միջև արտադրողական ուժերի որոշակի բաշխումից։ Միակ գինը, որ ընդունում են նեոռիկարդոյականները, հավասարակշռության գինն է։ Իսկ եթե ենթադրենք, որ արտադրության ոլորտների միջև հասարակական աշխատանքի նախապես տրված բաշխման դեպքում առաջանում է պահանջարկի ու առաջարկի անհամապատասխանություն, շուկայական գների շեղում նեոռիկարդոյական «հա-

վասարակշռության գնից», ապա միանգամայն ակնհայտ է դառնում, որ դա էկոնոմիկայի մեջ առաջ կբերեր տեխնիկատնտեսական փոխադարձ կապերի փոփոխություններ, որոնց կհամապատասխաներ արդեն իր «հավասարակշռության գինը»։ Բայց ի՞նչ կերպ է իրականացվում անհավասարակշռության վիճակից անցումը հավասարակշռության. դա նեոռիկարդոյականները չեն բացատրում, ավելին չեն էլ կարող բացատրել։

Այստեղ պետք է նշել, որ Սրաֆֆայի հետևորդները ի վիճակի չեն պատասխան տալու այն հարցին, թե ինչպես է իրականացվում գների բուն ձևավորման պրոցեսը էկոնոմիկայում։ Յա. Ստիդմանի մաթեմատիկական հավասարումները, օրինակ, ցույց են տալիս, թե ինչպիսին պետք է լինի հարաբերակցությունը բոլոր ապրանքների գների, դրամական աշխատավարձի և շահույթի միջին նորմայի միջև հավասարակշռության որոշ իդեալական վիճակում՝ զանազան ճյուղերի միջև հասարակական աշխատուժի ու արտադրության միջոցների տրված բաշխման դեպքում։

Կապիտալիստական ռեալ իրականության մեջ մրցակցության պրոցեսը տարերայնորեն կարգավորում է գները, որոնց շարժումը, ինչպես գիտականորեն հիմնավորել է Կ. Մարքսը, ենթարկվում է արժեքի օրենքին։ Իսկ նեոռիկարդոյականները սահմանափակվում են ապրանքների գները մաթեմատիկական մեթոդների օգնությամբ հաշվարկելով։ Ուստի նրանք ի վիճակի չեն պատասխան տալու այն հարցին, թե տնտեսական ազդակները ինչպես են հանգում հավասարակշռության այդ գներին, որը և քննարկվող պրոբլեմի էական կողմն է։ Գների նեոռիկարդոյական տեսության համեմատական վերլուծությունը ցույց է տալիս, որ իր էությամբ այն արտադրության ծախքերի վուլգար տեսության յուրատեսակ տարբերակն է, որին հետևում են արդի բուրժուական տնտեսագետներից շատերը։ Էկոնոմիկայի պատճառական-հետևանքային կապերի և տնտեսական երևույթների էության բացահայտումը նեոռիկարդոյականները դարձյալ փոխարինում են արտադրության գների և միջին շահույթի ձևական մաթեմատիկական հաշվարկով։

Կ. Մարքսը գիտականորեն հիմնավորել է, որ արտադրության գինը և շահույթը համապատասխանաբար արժեքի ու հավելյալ արժեքի փոխակերպված ձևերն են։ Իսկ նեոռիկարդոյականները գների իրենց վերլուծության մեջ սահմանափակվում են լոկ այն պնդումով, որ արտադրության տեխնիկական պայմանները և ռեալ աշխատավարձը «որոշում են» գինը և շահույթը։ Իրականում, սակայն, նրանք հաշվարկում են միայն գինը և շահույթը, բայց դրանո՛վ ամենևին չի բացատրվում, թե ինչ են գինը և շահույթը, և թե ինչու դրանք ունեն այս, այլ ոչ թե մի այլ մեծություն։ Այն հարցին, թե՝ ի՞նչն է ընկած գնի հիմքում, նեոռիկարդոյական տեսությունը պատասխան չի տալիս։ Յա. Ստիդմանի մոտ, օրինակ, ապրանքի գինը դրա արտադրության ծախքերի մեջ մտնող ապրանքների գների և միջին շահույթի գումարն է։ Այստեղ հարց է ծագում՝ իսկ ինչո՞վ է որոշվում արտադրության գործոնների գինը։ «Պարզվում է», որ դարձյալ գներով։ Այսպիսով, ստացվում է մի յուրատեսակ կախարդական շրջան՝ մեկ ապրանքի գինը որոշվում է մյուս ապրանքների գներով։ Սա այլ բան չէ, քան արտադրության ծախքերի վուլգար տեսության՝ պարզապես բառային նոր ձևակերպումով։ Ընդ որում չբացահայտված է մնում կարևորագույն տնտեսական կատեգորիաների էությունը։ Այս իմաստով նրանց տեսությունն իր էությամբ ոչնչով չի տարբերվում ժամանակակից բուրժուական տնտեսագիտական մյուս կոնցեպցիաներից։

Արժեքի մարքսյան տեսության իրենց քննադատության մեջ նեոռիկարդոյականները չեն սահմանափակվում միայն այն պնդումներով, որ գների ձևավորման պրոցեսը կարող է բացատրվել նաև առանց արժեքի մարքսյան տեսության օգնության։ Նրանք փորձում են հավատացնել, որ գների փոփոխության օրինաչափությունները ևս ոչ մի կերպ կապված չեն արժեքի փոփոխության հետ։ Արժեքի մարքսյան տեսության նրանց քննադատությունն այդ ուղղությամբ ստանում է կապիտալիզմի օրոք տեխնիկայի ընտրության չափանիշի հարցի քննարկման ձև։



Նեոռիկարդոյականների կարծիքով կապիտալիստները, կատարելագործելով իրենց ձեռնարկություններում կիրառվող տեխնիկան և տեխնոլոգիան, որոնելով տեխնիկական լուծումների առավել արդյունավետ տարբերակներ, հետապնդում են շահույթի նորման բարձրացնելու նպատակ։ Բայց Յա. Ստիդմանի մոտ շահույթի ո՞ր նորման առավելագույնի հասցնելու մասին է խոսքը։ Նա, անշուշտ, նկատի ունի շահույթի միջին նորման առավելագույնի հասցնելը, քանի որ կապիտալիստական իրականության մեջ յուրաքանչյուր կապիտալիստ, արմատավորելով նոր տեխնիկա, ձգտում է բարձրացնել շահույթի իր ստացած անհատական նորման։ Իսկ նեոռիկարդոյական տեսության մեջ ինչպե՞ս է իրականացվում լավագույն տեխնոլոգիաների ընտրությունը՝ շահույթի միջին նորման առավելագույնի հասցնելու վերը նկարագրված չափանիշին համապատասխան։ Այս հարցի պատասխանը նեոռիկարդոյական տեսաբանների մոտ հանգում է հետևյալին. էկոնոմիկայի զանազան ճյուղերում արտադրության տեխնոլոգիական եղանակների օգտագործման յուրաքանչյուր հնարավոր տարբերակի համար հաշվարկվում են արտադրվող բոլոր ապրանքների գները և շահույթի միջին նորմայի մեծությունը։ Տեխնոլոգիաների նման ընտրության դեպքում ապրանքների արժեքը հայտնի է լինում միայն այն ժամանակ, երբ հայտնի լինեն արտադրության այն մեթոդները, որոնք պետք է կիրառվեն։ Իսկ արտադրության մեթոդների ընտրությունը, սակայն, որոշվում է միայն շահույթի ամենաբարձր միջին նորմայի որոշման պրոցեսում։ Հետևաբար, արժեքը կարող է հայտնի լինել այն բանից հետո միայն, երբ շահույթի նորման արդեն որոշված է։ Այսպիսով, շահույթի նորմայի սահմանումը պետք է նախորդի ապրանքների արժեքի մեծության որոշմանը, ուստի վերջիններն առաջինների վրա չեն ազդում։

Տեխնիկայի ընտրության չափանիշում, որ առաջարկում են նեոռիկարդոյականները, ենթադրվում է, որ արտադրության նոր մեթոդները էկոնոմիկայի ճյուղերում կօգտագործվեն միայն այն դեպքում, եթե դրանք բարձրացնեն շահույթի միջին նորման։ Այսպիսով, տեխնիկական առաջընթացը նեոռիկարդոյականների մոտ հանգեցնում է ոչ թե շահույթի միջին նորմայի իջեցման, այլ, ընդհակառակն, նրա աճի։ Ժամանակակից բուրժուական այդ տնտեսագետները խոստովանում են, որ տեխնոլոգիական նոր եղանակների կիրառումը կնվազեցնի արտադրության ծախքերը, բայց պնդում են, որ այդ դեպքում միաժամանակ կաճի նաև շահույթի միջին նորման։ Սակայն նրանք չունեն ապացույցներ, որոնք հաստատեն այդ դրույթը։

Ստիդմանի դատողություններից հետևում է, որ զանազան ճյուղերում արտադրության նոր մեթոդների արմատավորման նպատակահարմարությունը գնահատելիս անհրաժեշտ է ապրանքների գները և միջին շահույթը վերահաշվարկել արտադրության նոր մեթոդների օգտագործման բոլոր հնարավոր զուգակցություններում և ընտրել արտադրական այն համակարգը, որի գների կառուցվածքին համապատասխանում է շահույթի ամենամեծ միջին նորման։ Ստիդմանի արտահայտություններից հետևում է, որ եթե, օրինակ, արտադրության որևէ նոր մեթոդի համատարած օգտագործումը ճյուղում առաջ բերեր շահույթի միջին նորմայի նվազում, ապա ոչ մի կապիտալիստ այն չէր օգտագործի։

Հետազոտելով այդ պրոբլեմը, Կ. Մարքսը պնդել է ուղղակի հակառակը. «Ոչ մի կապիտալիստ արտադրության մի նոր մեթոդ չի կիրառում կամովին, որքան էլ որ ավելի արտադրողական լինի այն և որքան էլ բարձրացնի հավելյալ արժեքի նորման, եթե հիշյալ մեթոդը նվազեցնում է շահույթի նորման։ Բայց արտադրության ամեն մի այսպիսի նոր մեթոդ էժանացնում է ապրանքները։ Ուստի կապիտալիստն ապրանքներն սկզբնապես ծախում է նրանց արտադրության գնից բարձր, գուցե և նրանց արժեքից բարձր գնով։ Նա գրպանում է այն տարբերությունը, որ գոյանում է իր ապրանքների արտադրության ծախքերի և ավելի բարձր արտադրության ծախքերով արտադրված մնացած ապրանքների շուկայի գների միջև» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մ. 1, Պետհրատ, 1947, էջ 248)։

Մրցապայքարը ձեռնարկատերերին ստիպում է արմատավորել նոր տեխնիկա՝ արտադրության ծախքերը պակասեցնելու համար։ Մյուս կողմից, այն ձեռնարկատերերը, որոնք առաջինն են արմատավորում նոր տեխնիկան, կարող են ընդլայնել իրենց ապրանքների վաճառահանման շուկան, դրանք վաճառելով անհատական արժեքից բարձր, բայց հասարակական արժեքից ոչ ցածր։

Մարքսը նշել է. «Արժեքն աշխատաժամանակով որոշելու այդ միևնույն օրենքը, որը նոր մեթոդը գործադրող կապիտալիստին զգալի է դարձնում այն ձևով, որ նա պետք է ապրանքը նրա հասարակական արժեքից ցածր գնով վաճառի, այդ նույն օրենքը, որպես կոնկուրենցիայի հարկադրական օրենք, ստիպում է մեր կապիտալիստի ախոյաններին իրենց մոտ արտադրության նոր եղանակ մտցնել (Նույն տեղը, հ. 1, էջ 336)։ Կապիտալիստներն ստիպված են այդ բանն անել, հակառակ դեպքում շուկայից նրանց դուրս կմղեն մրցակիցները։

Այսպիսով, կապիտալիզմի օրոք նոր տեխնիկա արմատավորելու անմիջական խթան է մրցակցությանը դիմանալու և հավելյալ արժեք ստանալու մղումը, այլ ոչ թե միջին շահույթը ամբողջ էկոնոմիկայում մեծացնելու ձգտումը, ինչպես պնդում են նեոռիկարդոյականները։ Արտադրության նոր մեթոդը պետք է ապահովի արտադրության ծախքերի նվազեցումը, հակառակ դեպքում ոչ մի կապիտալիստ այն չի օգտագործի։

Իհարկե, ոչ մի կապիտալիստ նոր տեխնիկա արմատավորելիս իր գործողություններում չի առաջնորդվում Յա. Ստիդմանի առաջարկած պրոցեդուրայով։ Յուրաքանչյուր ձեռնարկատեր, համոզված լինելով, որ եթե տվյալ պահին գոյություն ունեցող գների պայմաններում արտադրության նոր մեթոդը նրան հնարավորություն է ընձեռում նվազեցնելու արտադրության ծախքերը, այն կարմատավորի, քանի որ դա նրան կտա շահույթի ավելի բարձր անհատական նորմա, քան միջին հաշվով՝ էկոնոմիկայում, և կամրապնդի իր դիրքերը մրցապայքարում։ Բայց ակնհայտ է, որ նոր տեխնիկայի արմատավորումն այդ դեպքում կհանգեցնի աշխատանքի արտադրողականության աճի և, հետևաբար, կառաջացնի ապրանքների արտադրության համար աշխատաժամանակի ծախսումների կրճատում։ Մրցապայքարի արդյունքը կլինի արտադրության նոր մեթոդների համատարած արմատավորում, հետևաբար, արժեքի իջեցում, իսկ մյուս կողմից, մրցակցության և շուկայական գների ազդեցության տակ, դա առաջ կբերի կապիտալի տեխնիկական և օրգանական կառուցվածքի աճ՝ որպես աշխատանքի արտադրողականության հետևանք։ Իբրև հետևանք,— նշում է Կ. Մարքսը,— «տեղի է ունենում շահույթի նորմայի անկում— գուցե սկզբում արտադրության հենց այս ոլորտում (այսինքն՝ որտեղ արմատավորվել են արտադրության նոր մեթոդները։— Վ. Մ.), իսկ այնուհետև շահույթի նորման հավասարվում է մյուսների հետ,— հետևաբար շահույթի նորմայի անկումը միանգամայն անկախ է կապիտալիստների կամքից» (Նույն տեղը, հ. 3, մ. 1, էջ 248)։

Այսպիսով, մրցապայքարը հանգեցնում է, մի կողմից, ապրանքների և, համապատասխանաբար, շուկայական գների իջեցման, մյուս կողմից, շահույթի միջին նորմայի նվազեցման։ Դա կապիտալիստների անջատ-անջատ գործողությունների վերջնական հետևանքն է, շահույթի իրենց անհատական նորմաները բարձրացնելու և մրցապայքարից բարեհաջող դուրս գալու ձգտումը։

Այդ պրոցեսի շարժիչ ուժը կապիտալիստների մրցակցությունն է։ Այսպիսով, շահույթի նորմայի սահմանումը և իրական միջին շահույթի հաստատումը, որը դրսևորվում է գների ու շահույթների մշտական շարժման մեջ, տրամաբանորեն չի նախորդում շահույթի մեծության սահմանմանը, ինչպես այդ փորձում են ապացուցել նեոռիկարդոյականության ներկայացուցիչները։ Ընդհակառակն, դա արժեքի օրենքի գործողության հետևանքն է։

Այսպիսով, և՛ տեսական, և՛ գործնական առումով բացարձակապես սնանկ են նեոռիկարդոյականների փորձերը՝ հերքելու Կ. Մարքսի արժեքի տեսության հիմնարար դրույթները։

---

# ԱՐԴԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴԱԲԱՆԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

**Մ. ԱՍԱՏՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ԱՐԴԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ առանձնակի կարևորվում է տեսական փիլիսոփայական պրոբլեմատիկան։ Առաջին հայացքից խիստ վերացական բնույթի փիլիսոփայական դատողություններում արտացոլվում են դասակարգային պայքարի գլխավոր խնդիրները, երկու համաշխարհային սիստեմների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի արմատական շահերի բախումը։

Քննադատելով XX դարի սկզբին լայնորեն տարածված Մախի և Ավենարիուսի էմպիրիոկրիտիցիզմը՝ իմպերիալիզմի դարաշրջանի հետադիմական փիլիսոփայական հոսանքներից մեկը, Վ. Ի. Լենինը ուսուցանում էր. «...էմպիրիոկրիտիցիզմի իմացաբանական սխոլաստիկայի հետևում չի կարելի չտեսնել կուսակցությունների պայքարը փիլիսոփայության մեջ, մի պայքար, որ վերջին հաշվով արտահայտում է ժամանակակից հասարակության թշնամական դասակարգերի տենդենցներն ու գաղափարախոսությունը։ Նորագույն փիլիսոփայությունը նույնպե՛ս կուսակցական է, ինչպես և երկու հազար տարի սրանից առաջ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 18, էջ 471)։

Արդի բուրժուական փիլիսոփայությունը և մասնավորապես փիլիսոփայական մեթոդաբանությունը խոր ճգնաժամ են ապրում։ Իմպերիալիզմի գաղափարախոսներն աշխատում են ստեղծել այնպիսի ուսմունքներ, որոնք առավելագույն չափով բավարարեն ռեակցիոն բուրժուազիայի սոցիալական և հոգևոր պահանջմունքները։ Բոլոր նորագույն բուրժուական փիլիսոփայական ուսմունքները ձգտում են ապացուցել առհասարակ փիլիսոփայության և առաջին հերթին մարքս-լենինյան փիլիսոփայության՝ աշխարհը գիտականորեն բացատրելու և վերափոխելու անզորությունը և դրանով ընդհանուր աշխարհհայացքային հիմքեր ստեղծել, մի կողմից, կապիտալիզմի սոցիալական արատները սքողելու, իսկ մյուս կողմից, սոցիալիստական հասարակության դեմ հակակոմունիստական քննադատություն ծավալելու համար։

Իրենց գաղափարախոսության այդ ստրատեգիական խնդիրներն իրագործելու նպատակով բուրժուական փիլիսոփայությունն աշխարհայացքի հիմնական պրոբլեմների լուծման նոր եղանակների որոնումները կենտրոնացրել է մեթոդաբանական պրոբլեմների, հատկապես մեթոդաբանական սխոլաստիկայի շուրջը։

Հետևաբար, փիլիսոփայական մեթոդաբանության բուրժուական ըմբռնումների մարքս-լենինյան սկզբունքային քննադատությունը, դրանց հասարակական դերի խոր բացահայտումը գաղափարախոսական պայքարի կարևորագույն խնդիրներից են, որոնց հանգամանորեն անդրադարձավ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը։

Փիլիսոփայական մեթոդաբանության հանգուցային պրոբլեմների լուծման ուղիների ընտրության ժամանակ բուրժուական մտածողները չեն կարող հաշվի չառնել որոշ գործոնների ազդեցությունը։ Նախ, գիտության և տեխնիկայի աննախադեպ զարգացումը և դրա հետ կապված մարդու հզորության վիթ-

խարի աճն է, որը ծնում է գիտության ու դրա մեթոդների, ուստի և բանականության բացարձակացման միտում, փիլիսոփայության մեթոդաբանական պրոբլեմները մասնավոր գիտությունների մեթոդաբանության օրինակով լուծելու ձգտում։ Երկրորդ, գիտության և տեխնիկայի զարգացմանը զուգընթաց բուրժուական երկրներում ուժեղանում են աշխատավորների շահագործումն ու գործազրկությունը, զանգվածային բնույթ են ընդունում հուսահատությունը, անվստահությունն ու վախը ապագայի նկատմամբ։ Իսկ դա առաջացնում է կապիտալիզմի արատները գիտության վրա բարդելու և փիլիսոփայական մեթոդների պրոբլեմները հակագիտական, իռացիոնալիստական ոգով լուծելու միտում։

Այդ ամենի հետևանքով ձևավորվեցին փիլիսոփայական մեթոդների մշակման սցիենտիստական և հակասցիենտիստական ծրագրերը։ Սցիենտիզմը գիտությունը, հատկապես ճշգրիտ գիտությունները, համարում է ամենազոր, մարդկության բոլոր կնճռոտ հարցերի լուծման միակ միջոց։ Ավանդական փիլիսոփայությունը, ինչպես նաև մի շարք այլ գիտություններ, ըստ սցիենտիստների, գիտություն չեն, ուստի անպտուղ ու անզոր են։ Այստեղից էլ հետևում է փիլիսոփայությունը վերակառուցելու և իրական գիտություն դարձնելու նրանց ծրագիրը։

Հակասցիենտիստները նույնպես գտնում են, որ փիլիսոփայությունը գիտություն չէ, սակայն դա մեկնաբանում են հօգուտ փիլիսոփայության վերգիտականության և ջանք չեն խնայում բացարձակացնելու դրա աշխարհայացքային, արժեքային տարրերը, վերագրելով այդ տարրերին հակագիտական բնույթ։

Արդի բուրժուական փիլիսոփայության հայտնի սցիենտիստական ուղղություններից է նեոպոզիտիվիզմը, որը ձևավորվեց XIX և XX դարերի սահմանագծում, բնագիտության և մաթեմատիկայի մեծագույն նվաճումների ազդեցության ներքո։ Այդ նվաճումները տրամաբանության և փիլիսոփայության առջև դրեցին մի շարք բարդ պրոբլեմներ։ Պարզվեց, որ տրամաբանությունն ի վիճակի է լուծելու մաթեմատիկայի հիմունքներում ծագած պարադոքսները և դա վերածնեց համընդհանուր մաթեմատիկա ստեղծելու լայբնիցյան գաղափարը, համընդհանուր մաթեմատիկա, որն ունակ է լինել բոլոր մասնավոր գիտական ու փիլիսոփայական պրոբլեմների լուծման համապարփակ մեթոդ։

Նեոպոզիտիվիզմի հիմնադիրներից մեկի՝ Բ. Ռասելի կարծիքով սիմվոլիկ տրամաբանությունը փիլիսոփայության էությունն է։ Նա համոզված էր, որ այդ տրամաբանության մեթոդները կարող են փիլիսոփայությունը դարձնել մաթեմատիկայի ու ֆիզիկայի պես ճշգրիտ գիտություն։ Սկսվում է մաթեմատիկական տրամաբանության մեթոդների էքստրապոլյացիան փիլիսոփայության բնագավառ և նոր տարբերակով կատարվում է վերադարձ անցյալի ռացիոնալիզմի իդեալին, որը ժխտում էր փիլիսոփայության մեթոդների յուրահատկությունը՝ հանգեցնելով դրանք մաթեմատիկայի աքսիոմատիկ մեթոդին։

Մաթեմատիկական տրամաբանության մեթոդներով փիլիսոփայության պրոբլեմները հետազոտելով՝ Բ. Ռասելը եկավ այն եզրակացության, թե փիլիսոփայությունը, ինչպես և տրամաբանությունն ու մաթեմատիկան, զուտ անալիտիկ, «բառային», այսինքն՝ լոկ լեզվական արտահայտությունները վերլուծող գիտություն է, որը ոչ մի տեղեկություն չի տալիս աշխարհի երևույթների մասին։ Փիլիսոփայությունը տրամաբանական վերլուծության է ենթարկում գիտության լեզուն և իմաստալից դրույթներն առանձնացնում անիմաստ ասույթներից։ Առանձնացման միջոցն էլ, ըստ նեոպոզիտիվիստների, ասույթների վերիֆիկացումն է, ստուգումը զգայական տվյալներով։ Իմաստալից են համարվում սոսկ վերիֆիկացման ենթակա գիտական ասույթները։

Փիլիսոփայությունը, ըստ Ռասելի, որպես գիտական ասույթների իմաստի մասին գիտություն, սկզբունքորեն տարբերվում է բնական ու հասարակական գիտություններից, որոնք ձգտում են ճշմարտության և աշխարհի



երևույթների մասին տալիս են դրական գիտելիքներ (ուստի այդ գիտություններն ունեն սինթետիկ բնույթ)։ Գիտելիքների աճը տվյալ գիտություններում տեղի է ունենում փորձնական մեթոդների հիման վրա։ Մինչդեռ փիլիսոփայությունը փորձնական մեթոդների հետ ոչ մի առնչություն չունի։ Դրա խնդիրն է ստեղծել կատարյալ, ձևայնացված տրամաբանական լեզու և այդ լեզվի միջոցով վերլուծել գիտական գիտելիքը։ Նեոպոզիտիվիստները փորձել են ստեղծել նման տրամաբանական լեզու, բայց բոլոր փորձերն անհաջողության են մատնվել։ Դա ստիպել է նրանց դիմել բնական լեզվի տրամաբանական վերլուծությանը և հիմք դնել, այսպես կոչված, լեզվաբանական փիլիսոփայությանը։ Սակայն լեզվաբանական փիլիսոփայության դերը փիլիսոփայական մեթոդների մշակման մեջ պարզելու համար հարկ է անդրադառնալ նեոպոզիտիվիզմի նախորդ տարատեսակությունների, մասնավորապես տրամաբանական ատոմիզմի և տրամաբանական պոզիտիվիզմի ըմբռնումներին։

Այդ տարատեսակությունները ժխտում են ավանդական փիլիսոփայության գիտականությունը և մեթոդների յուրահատկությունը։ Դրանց տեսակետից, փիլիսոփայական մեթոդներն էապես տարբերվում են փորձնական, այսպես կոչված, սինթետիկ գիտությունների մեթոդներից, բայց նման են տրամաբանության և մաթեմատիկայի մեթոդներին, որոնք ունեն տեսական, վերլուծական բնույթ։ Տարբերությունը լոկ այն է, որ փիլիսոփայական մեթոդները հետամուտ են գիտական լեզվի վերլուծությանը։

Տրամաբանական ատոմիզմի և պոզիտիվիզմի կողմնակիցները փիլիսոփայական մեթոդների վերաբերյալ ստեղծեցին սուբյեկտիվ-իդեալիստական էմպիրիզմի ուսմունքը, որը ժխտելով աշխարհի երևույթների օբյեկտիվ, մարդուց անկախ գոյությունը և հանգեցնելով դրանք մարդկային զգայություններին, մարդու փորձը մեկնաբանում է որպես զգայությունների հոսք և համարում է գիտելիքի միակ աղբյուր, էկլեկտիկորեն միացնելով տրամաբանական ապրիորիզմի հետ, ըստ որի տրամաբանությունը նախափորձնական գիտություն է, ուստի և նրա տված գիտելիքները փորձից անկախ են։ Այդ ուսմունքը փիլիսոփայության ընդհանուր մեթոդը համարում է տրամաբանական վերլուծության մեթոդը, որի բաղկացուցիչ մասերն են վերլուծական, ապրիորի, ձևական, ռեդուկցիոն և ֆենոմենոլոգիական մեթոդները։ Գիտական գիտելիքների իմացաբանական վերլուծության նպատակով մաթեմատիկական տրամաբանության կառուցվածքային մեթոդների կիրառումը պայմանավորեց նեոպոզիտիվիստների լիակատար հեռացումը գիտելիքների ծագման ու զարգացման պրոցեսից, հանգեցրեց ծագումնաբանական մեթոդի անտեսման։ Վերլուծական մեթոդի բացարձականացման հետևանքով թերագնահատվեց սինթետիկ, համադրական ու համակարգային մեթոդների դերը։ Բ. Ռասելը ժխտում էր փիլիսոփայական համակարգերը, սակայն թույլատրելի էր համարում համակարգային հետազոտությունները առանձին փիլիսոփայական պրոբլեմների սահմաններում (տե՛ս Б. Рассел. История западной философии, М., 1959, стр. 841):

Վերլուծական մեթոդը, ըստ նեոպոզիտիվիստների, սերտորեն կապված է ռեդուկցիայի, հանգեցման մեթոդի հետ, որի իմաստը բարդ, տեսական, վերիֆիկացման, այսինքն՝ զգայական ստուգման չենթարկվող գիտական ասույթների մետաֆիզիկական հանգեցումն է վերիֆիկացմանը մատչելի, ատոմար փաստերին կամ արձանագրական նախադասություններին։ Դրանով ռեդուկցիայի մեթոդը հաստատում էր նեոպոզիտիվիզմի սուբյեկտիվ-իդեալիստական էմպիրիզմը, ըստ որի գիտական ճանաչողությունը գործ ունի ոչ թե արտաքին, նյութական աշխարհի, այլ լեզվում ամրագրված զգայական տվյալների հետ։

Լեզվի երևույթների, ֆենոմենների նկարագրմանը հանգեցնելով տրամաբանական վերլուծության նպատակը՝ նեոպոզիտիվիստները անիմաստ ու կեղծ գիտական հայտարարեցին բացատրության մեթոդի հետ անխզելիորեն կապված մարքս-լենինյան փիլիսոփայության հիմնական կատեգորիաները, ինչպես, օրինակ, մատերիայի, պատճառականության, էության և այլն։

Գիտության լեզվի տրամաբանական վերլուծության կրած անհաջողությունները որոշ նեոպոզիտիվիստների ստիպեցին ծագած դժվարությունները հաղթահարել բնական լեզվի տրամաբանական վերլուծության միջոցով։ Դրա հիման վրա Անգլիայում առաջ եկավ և շատ բուրժուական երկրներում տարածվեց լեզվաբանական փիլիսոփայությունը։ Այս ուսմունքի հիմնադիրն է Լ. Վիտգենշտայնը։ Ըստ նրա, փիլիսոփայությունը իրականության մասին ոչ մի դրական գիտելիք չի տալիս, դրա արդյունքները լոկ բացասական-քննադատական են։ Վիտգենշտայնը գրել է. «Մենք չենք կարող առաջադրել որևէ բնույթի տեսություն։ Մեր կշռադատություններում չպետք է լինի ոչ մի հիպոթետիկ բան։ Մենք պետք է դեն նետենք ամեն տեսակի բացատրությունները, դրանց տեղը պետք է զբաղեցնի սոսկ նկարագրությունը» (L. Wittgenstein, Philosophical Investigations, Oxford, 1968, p. 47e)։ Այստեղից Վիտգենշտայնը հանգում է այն եզրակացության, որ փիլիսոփայությունը զուրկ է պրոբլեմներից, այսպես կոչված փիլիսոփայական պրոբլեմները լեզվի ապակողմնորոշիչ տարրերի ծնած խառնաշփոթի հետևանքներն են։ Ուստի դրանք ոչ թե լուծվում, ոչ թե նոր գիտելիք են տալիս, այլ կծիկի պես սոսկ քանդվում, կռահվում և անհետանում են։ Եվ դա կատարվում է այն բանի կարգավորման միջոցով, ինչ մենք միշտ գիտենք (տե՛ս Ibid., p.p. 47e, 51e)։ Նրա կարծիքով փիլիսոփայությունը լեզվական հարատև խառնաշփոթի մշտական վերացման մեթոդ է։ Նա գրել է. «Ես ձեզ կարող եմ տալ միայն մեթոդ»։ Բայց դա մի չափազանց տարօրինակ մեթոդ է, որովհետև այն ոչ մի պրոբլեմ չի լուծում, ոչ մի գիտելիք չի տալիս, ոչ մի ճշմարտություն չի բացահայտում։ Փիլիսոփայությունը մեթոդի մեջ տարրալուծելուց հետո նա հայտարարում է, որ իրականում նույնիսկ չի կարելի այն մեթոդ համարել։ «Փիլիսոփայական մեթոդ գոյություն չունի,— նշել է Վիտգենշտայնը,— բայց իրոք գոյություն ունեն մեթոդներ, որոնք նման են բազմազան թերապիաների»։

Դրանով նա ցանկանում է ասել, որ փիլիսոփայական մեթոդները բուժման մեթոդների պես նպատակ ունեն վերացնելու լեզվական հիվանդությունների անհատական դեպքերը, ուստի և չեն պահանջում գիտելիքներ այդ հիվանդությունների ընդհանուր հատկությունների ու մեխանիզմների մասին։ Վերոհիշյալ մեթոդները չունեն և ոչ մի ճանաչողական բովանդակություն, փիլիսոփայական գիտելիքների ստացման միջոցներ չեն, քանզի նման գիտելիքներ առհասարակ չկան և, այսպիսով, չափազանց պայմանականորեն կարող են մեթոդներ կոչվել։

Այսպես կոչված փիլիսոփայական մեթոդները լեզվի պարզեցման, տրամաբանապրագմատիկական վերլուծության մեթոդի առանձին կողմերն են, բայց հանդես են գալիս և որպես հարաբերականորեն ինքնուրույն մեթոդներ։ Դրանք հետփորձնական բնույթ ունեն, հիմնված են լեզվական արտահայտությունների օգտագործման կոնկրետ դեպքերի վերլուծության վրա, բայց փորձնական մեթոդներ չեն, որովհետև զուրկ են վերջինների կարևորագույն հատկանիշից՝ նոր գիտելիք չեն տալիս, հետևապես սինթետիկ բնույթ չունեն։

Այդ մեթոդներից են ցուցադրման, նկարագրման, լեզվական խաղերի. ընտանեկան նմանության և մյուս մեթոդները։ Դրանց շարքում գլխավորը, թերևս, նկարագրման մեթոդն է, որն արտահայտում է, ըստ Վիտգենշտայնի, փիլիսոփայության ընդհանուր նպատակը։ «Փիլիսոփայությունը,— գրել է նա,— չպետք է և ոչ մի կերպ միջամտի լեզվի առկա օգտագործմանը. ի վերջո այն կարող է լոկ նկարագրել լեզուն։ Այն թողնում է ամեն ինչ իր տեղում»։ Հետևապես Վիտգենշտայնի ձևակերպած փիլիսոփայական միջոցները, որոնք իրենց էությամբ մեթոդներ չեն, սակայն համապատասխան տերմինի բացակայության պատճառով մեթոդներ են անվանվում, լիովին անզոր են՝ բնական լեզվի գործառմանը միջամտելու և լեզվի մեջ որևէ փոփոխություն կատարելու իմաստով։

Փիլիսոփայության և դրա մեթոդների վերաբերյալ վիտգենշտայնյան հայացքները չափազանց վտանգավոր են, որովհետև փաստորեն ժխտում են փիլիսոփայության գիտություն լինելու և մեթոդներ ունենալու իրավունքը,



իրականության վրա ինչ-որ ձևով ազդելու և այն փոփոխելու կարողությունը։ Եվ տվյալ առումով լեզվաբանական փիլիսոփայությունը նեոպոզիտիվիզմի նախորդ տարատեսակությունների համեմատ նույնիսկ խոշոր հետադարձ քայլ է։ Նեոպոզիտիվիզմն անցյալում գոնե ընդունում էր փիլիսոփայության և դրա մեթոդների գիտականությունը։ Իսկ լեզվաբանական փիլիսոփայությունը վճռականորեն ժխտում է դա և հանգեցնում փիլիսոփայության՝ որպես գիտության, ինքնավերացմանը։ Նման դիրքորոշման հետևանքով լեզվաբանական փիլիսոփայությունը նկատելիորեն մոտենում է իռացիոնալիզմի, հակասցիենտիզմի դպրոցներին։

Անդրադառնալով արդի բուրժուական փիլիսոփայության հիշյալ դպրոցներին, հարկ է նշել, որ դրանց փիլիսոփայական մեթոդաբանությունը ծանր ճգնաժամի մեջ է։ Վերջինս դրսևորվում է փիլիսոփայական մեթոդների անվերջ որոնումների, դրանց շուրջը ծավալվող սուր բանավեճերի, դրանք գիտական և առհասարակ բանական մեթոդներին արմատապես հակադրելու, ամենահետադեմ կրոնամիստիկական հայացքների ջատագովության մեջ։ Ըստ իռացիոնալիստների, փիլիսոփայությունը գիտելիքի բարձրագույն ձևն է, որն ունակ է լուծելու գիտության մեթոդներին անմատչելի, իր բնույթով իռացիոնալ մարդկային կեցության հիմնական հարցերը։ Կեցության խորագույն գաղտնիքների լուծումը, նրանց համոզմամբ, հնարավոր է լոկ գիտական մեթոդներին լիովին հակադիր հզորագույն իռացիոնալ, ինտուիտիվ մեթոդների օգնությամբ։ Դա, իհարկե, չի բացառում այն, որ իռացիոնալիզմի զանազան դպրոցները որոշ չափով տարբեր են մեկնաբանում հիշյալ մեթոդների բնույթն ու կիրառման ոլորտը։

«Կյանքի փիլիսոփայության» մեջ առանձնանում են երկու մոտեցումներ, որոնց հիմնադիրները Վ. Դիլթեյը և Հ. Բերգսոնն են։ Դիլթեյն այն կարծիքին էր, որ բանական մեթոդները բնորոշ են միայն բնական գիտություններին, որոնք դրանց օգնությամբ լոկ բացատրում են իրերը։ Իսկ պատմական գիտությունները գործ ունեն անհատի հոգևոր կյանքի հետ, ուստի և պետք է ձգտեն դրա անմիջական հասկացմանը, որը զուտ սուբյեկտիվ, իռացիոնալ պրոցես է։ Դիլթեյը գրել է. «Բնությունը մենք բացատրում ենք, հոգևոր կյանքը մենք հասկանում ենք» (В. Дилтей. Описательная психология, М., 1924, стр. 8)։ Պատմական գիտությունների, հատկապես փիլիսոփայության, մեթոդները նպատակամղված են պատմական իրադարձությունների անմիջական ինտուիտիվ ապրմանը, նկարագրմանը, մեկնաբանմանը և հասկացմանը։ Հասկացման այդ իռացիոնալ մեթոդը Դիլթեյն անվանեց հերմենևտիկա և հայտարարեց բոլոր հումանիտար գիտությունների գլխավոր մեթոդ։

Իսկ Բերգսոնը, ավելի հետևողական դիրք գրավելով, փիլիսոփայական մեթոդները որպես իռացիոնալ մեթոդներ հակադրեց բոլոր գիտությունների մեթոդներին՝ որպես բանական մեթոդների և վեր դասեց դրանցից։ Նա պնդում էր, որ բուն իրականությունը զուտ տևողություն, լինելիության կենդանի պրոցես կամ անտարրալուծելի հոսք է։ Մատերիան ու բանականությունը այդ տևողության մեռյալ արգասիքները, թափոններն են։ Գիտական մեթոդները հենվում են բանականության վրա և ձգտում են պրակտիկ նպատակներով ճանաչել մատերիական իրերը։ Այդ բանական մեթոդների էությունը իրերի՝ ոչ մատերիական տևողության անկենդան արգասիքների վերլուծությունը, մասնատումը, ստացված տվյալների ընդհանրացումն ու համադրումն է։ «Արդի գիտությունը, ինչպես և հնադարյանը,— նշել է Բերգսոնը,— օգտվում է կինեմատոգրաֆիական մեթոդից։ Այն չի կարող այլ կերպ վարվել. ամեն մի գիտություն ենթարկված է այդ օրենքին» (А. Бергсон. Творческая эволюция, М., 1914, стр. 282)։

Իռացիոնալ կենսական հոսքի ըմբռնման միակ միջոցը վերբանական ինտուիցիան է, որը նա մեկնաբանում է որպես ներհայեցողական ապատրամաբանական ակտ։ Սակայն ինտուիցիան բանականությանը բացարձակապես հակադրելու և փիլիսոփայության բացարձակ մեթոդ դարձնելու Բերգսոնի անհիմն ձգտումը զրկեցին այն ճանաչողության մեթոդի հատկություններից և

դարձրին անկիրառելի։ Այս առնչությամբ Ռասելը նշել է. «Հայտնաբերելով (իր համար) ինտուիցիան, Բերգսոնը գործի չի դնում այն ճանաչողության դրական նպատակներով» (Б. Рассел. История западной философии, стр. 807)։ Դրան կարելի է լոկ ավելացնել, որ հնարավոր էլ չէր գործի դնել այն։ Ինտուիցիայի՝ որպես մեթոդի, անկիրառելիության պատճառով նա ստիպված դիմեց արտահայտման նախագիտական, օրինակ, դիցաբանական և ոչ գիտական, մասնավորապես գեղարվեստական միջոցներին, հատկապես համանմանությանը, այլաբանությանը և այլն։ Այսպիսով, Բերգսոնը և «կյանքի փիլիսոփայության» մյուս ներկայացուցիչները փիլիսոփայությունն իջեցրին հասարակական գիտակցության նախագիտական և ոչ գիտական ձևերին։ Նրանց փորձերի իմացաբանական արմատներից մեկը ճանաչողության համադրական մեթոդների բացարձականացումն ու հակադրումն է վերլուծական մեթոդներին։

Է. Հուսեռլի ֆենոմենոլոգիայում կամ տրանսցենդենտալ իդեալիզմում ինտուիցիան հանդես է գալիս որպես փիլիսոփայական մեթոդի միջուկ։ Փիլիսոփայության խնդիրը նա հանգեցնում է զուտ գիտակցության կառուցվածքների, ներքին օրինաչափությունների նկարագրմանը։ Տվյալ խնդիրը լուծելու համար այն պետք է մի կողմ թողնի բնությունը (դրա մասին բոլոր գիտելիքները) և գիտակցության էմպիրիկ փաստերն ու բոլոր տեսակի մեկնաբանությունները։ Զուտ գիտակցության մեջ թափանցելու միակ միջոց Հուսեռլը համարում էր ֆենոմենոլոգիական մեթոդը, որը մի շարք մեթոդների միասնություն է։ Դրանց թվին են պատկանում ֆենոմենոլոգիական ռեդուկցիայի, գիտակցության ֆենոմենների մեջ «անմիջականորեն ներթափանցելու», դրա էությունը մտահայելու և այլ մեթոդները։

Ֆենոմենոլոգիական մեթոդը, ըստ Հուսեռլի, ի վիճակի է ստեղծել մի գիտություն, որն «առանց մաթեմատացնող մեթոդների, առանց մտահանգումների ու ապացուցումների ապարատի կարող է ստանալ ամեն մի հետագա փիլիսոփայության համար վճռական նշանակությամբ օժտված ամենաճշգրիտ տարբերակումների մի հոծ բազմություն» (Э. Гусерль. Философия строгая наука, «Логос», кн. 1, М., 1911, стр. 56)։ Նրա համոզմամբ, տվյալ մեթոդը այն կատարյալ փիլիսոփայական մեթոդն է, որը փիլիսոփայությունը դարձնում է ճշգրիտ գիտություն, չտալով դրան տեսական ձև և նույնիսկ հակառակ այդ ձևին։ Սակայն դժբախտությունն այն է, որ Հուսեռլը, մշակելով իր մեթոդը, ստիպված էր ապացուցել իր ուսմունքը, ուստի և դավաճանել իր ինտուիտիվիստական-ֆենոմենոլոգիական սկզբունքներին։

Իռացիոնալիզմն ու հակասցիենտիզմը փիլիսոփայության մեթոդաբանության մեջ ավելի ուժեղ է դրսևորվում էկզիստենցիալիստների մոտ։ Մ. Հայդեգերը գտնում է, որ փիլիսոփայության մեթոդը խիստ ուրույն է, քանի որ այն հոգևոր, իռացիոնալ կեցության գիտակցումն է։ Գիտության բանական մեթոդները գործ ունեն գոյավորի, առարկայական աշխարհի հետ, հետևապես շեղում են մարդուն կեցությունից, մատնելով նրան ինքնախաբեության։ Լոկ փիլիսոփայությունն է ի վիճակի մարդուն տալ իր կեցությանը հասու լինելու ուղիների որոնումները։ Բայց քանի որ կեցությունը իռացիոնալ ու անըմբռնելի է, փիլիսոփայությունը պետք է դիմի ինտուիցիային և թողնի կեցության իմաստին վերաբերող հարցերի վերջնական պատասխանը ստանալու հույսը, մնալով մշտապես հարցնողի համեստ դերում։

Այդ խնդիրը, ըստ Հայդեգերի, կարող է լուծել սոսկ ֆենոմենոլոգիական հերմենևտիկայի մեթոդը, որը նա մշակեց Հուսեռլի ֆենոմենոլոգիական ու Դիլթեյի հերմենևտիկական մեթոդները միացնելու և դրանց հակագիտական, իռացիոնալիստական կողմերը ուռճացնելու միջոցով։ Տվյալ մեթոդի հիման վրա նա ստեղծեց իր «հիմնարար գոյաբանությունը» որպես ուսմունք զգացող գիտակցության ապրիորի կառուցվածքի ու տարրերի կամ էկզիստենցիալների (տագնապի, վախի, հոգսի և այլն) մասին, որը, չլուծելով ժողովրդին հուզող և ոչ մի պրոբլեմ, կյանքի և ոչ մի դժվարություն, չշոշափելով մարդկային անձի ռեալ օտարումը կապիտալիզմի պայմաններում, ցրում է լոկ դրանք հաղթահարելու պատրանքը։ «Հիմնարար գոյաբանությունը» իր



բովանդակությամբ, կառուցվածքով, մեթոդներով ու խնդիրներով գիտության լիակատար հակադրությունն է։

Կրոնի մոլի ջատագով, կաթոլիկական էկզիստենցիալիստ Գ. Մարսելի համոզմամբ փիլիսոփայությունը աստվածաբանության աղախինն է և, որպես այդպիսին, գիտության բացարձակ հակադրությունը։ Լինելով լիովին իռացիոնալ՝ այն զուրկ է պրոբլեմներից և զբաղվում է խորհրդավոր գաղտնիքներով։ Դրա գլխավոր մեթոդը էկզիստենցիալ փորձից առաջացող հուզական ինտուիցիան է, որը բացահայտում է իռացիոնալ էկզիստենցիայի և խորհրդավոր գաղտնիքների անանց ու անլուծելի բնույթը։ Հետևապես, այդ մեթոդը ևս չունի ճանաչողական բնույթ։

Փիլիսոփայական մեթոդաբանության մարսելյան և առհասարակ էկզիստենցիալիստական ըմբռնումները սուբյեկտիվ-իդեալիստական մեկնաբանություն ստացած մետաֆիզիկական մեթոդի արդի դրսևորումներից են, որոնք ելնում են, մի կողմից, ճանաչողության ոչ տրամաբանական (ինտուիտիվ), նախատրամաբանական (դիցաբանական), գեղարվեստական և այլ ձևերից, իսկ մյուս կողմից՝ փիլիսոփայական մեթոդների յուրահատկությունը բացարձակացնելուց և գիտական, բանական մեթոդներին հակադրելուց։

Փիլիսոփայական մեթոդների պրոբլեմը առաջնակարգ է արդի բուրժուական փիլիսոփայության դեռևս լիովին չձևավորված ուղղություններից մեկում՝ հերմենևտիկայում։ Սակայն դրա ներկայացուցիչների միջև առայժմ չկա միասնական կարծիք այդ պրոբլեմի շուրջը։ Ոմանք հերմենևտիկան մեկնաբանում են որպես հումանիտար գիտությունների, փիլիսոփայության մեթոդ։ Օրինակ, Է. Բետին համարում է այն տեքստերը հասկանալու և մեկնաբանելու մեթոդ «ուրիշի սուբյեկտիվության մեջ փոխադրվելու» միջոցով։ Այս տեսակետի էությունը փիլիսոփայական մեթոդը նեղ, սուբյեկտիվ-իդեալիստորեն մեկնաբանվող և բնագիտական մեթոդներին հակադրվող հասարակագիտական մեթոդների միջև տարրալուծելն է։

Մյուս տեսակետը հերմենևտիկային տալիս է համընդհանուր նշանակություն։ Է. Հայնթելն այն կարծիքին է, որ բնագիտական մեթոդները համընդհանուր չեն, որովհետև բնության իրերի բացատրման մեթոդներն են և դրանց իմաստային մեկնաբանությունը չեն տալիս։ Բացատրվող մեթոդների փոխադրումը հումանիտար գիտությունների բնագավառը անօրինական է։ Համընդհանուր մեթոդ կարող է լինել միայն հերմենևտիկան, որն ունակ է տալու անխտիր բոլոր երևույթների իմաստային մեկնաբանությունը։

Մի այլ տեսակետի համաձայն հերմենևտիկան ուսմունք է կեցության մասին։ Դրա կողմնակիցները փորձում են մշակել հերմենևտիկական գոյաբանություն և այդ նպատակով ջանում են համադրել հերմենևտիկական «խոսքը» և հեգելյան դիալեկտիկան՝ «լոգոսը»։ Հ. Գադամերի կարծիքով, հերմենևտիկական ճանաչողությունը ծագում է հերմենևտիկական փորձից, որը կապված է մարդկային վերջավոր կեցության հետ, որտեղից բխում է մարդկային ճանաչողության վրա լեզվում, տեքստերում ամրագրված ավանդույթների և հեղինակությունների վիթխարի ազդեցությունը։ Ռացիոնալիզմի պնդմանը հակառակ, մտածողությունը միշտ հենվում է որոշակի նախադրյալների վրա, որոնք պայմանավորում են նախնական ըմբռնումը, որն իսկական նախապաշարմունք է։ Գադամերը պնդում է, որ ավանդույթներն ու հեղինակությունները ոչ միայն բացասական, այլև դրական երևույթ են։ Անհատը ավանդույթի հետ երկխոսության մեջ է մտնում լեզվի միջոցով, որը և անհատից անկախ և նրա «կենսական կյանքն» հանդիսացող իրական կեցությունն է։ Լեզվական ռեալությունը Գադամերը հայտարարում է առարկայական, որովհետև ամեն մի բառ, ըստ նրա, իրի հայելին է։ Բայց այդ ռեալության հերմենևտիկական ճանաչողությունը, ի տարբերություն գիտության, հանգեցնում է ոչ թե իրերի տիրապետմանը, այլ սոսկ ինտուիտիվ հասկացմանը։ Եվ պատահական չէ, որ հերմենևտիկական հասկացման մեթոդը իդեալիստորեն ըմբռնված լեզվական ռեալության նկատմամբ կիրառելու հետևանքով ստացված գիտելիքները Գադամերը որակում է որպես զուտ բառա-

չին, հայեցողական գիտելիքներ, որոնք ոչ միայն անկարող են վերափոխել բնությունն ու հասարակությունը, այլև ընդհանրապես զուրկ են նման ֆունկցիաներից (տե՛ս հերմենևտիկայի վերաբերյալ նույն տեղը, П. П. Гайденко. Философская герменевтика и ее проблематика)։

Այսպիսով, արդի բուրժուական փիլիսոփայությունը և փիլիսոփայական մեթոդները, ինչպես և անցյալում, կրում են հայեցողական բնույթ, նպատակամղված են աշխարհի լոկ մեկնաբանմանը։ Սակայն տվյալ դեպքում հատակորեն դրսևորվում են մի շարք կարևոր յուրահատկություններ։

Առաջին, բուրժուական փիլիսոփաներն այսօր բացահայտորեն ցուցադրում են իրենց մեթոդաբանության հայեցողականությունը՝ հանդես գալով որպես հայեցողականության մոլի ջատագովներ։ Մեծ ջանքեր գործադրելով հիմնավորելու այն դրույթը, որ փիլիսոփայական մեթոդների կիրառման շնորհիվ ստացված արդյունքները կամ ընդհանրապես գիտելիքներ չեն, կամ էլ խիստ յուրատեսակ, գեթ ինչ-որ չափով աշխարհը փոխելու անկարող գիտելիքներ են, բուրժուական փիլիսոփաները քարոզում են պասիվություն և դրանով կատարում են իմպերիալիզմի գլխավոր դասակարգային պատվերներից մեկը՝ խլացնել ժողովրդական զանգվածների բողոքը կապիտալիզմի շահագործողական կարգերի դեմ, թուլացնել նրանց հասարակական ակտիվությունն ու հեղափոխական կամքը։

Երկրորդ, եթե անցյալում, օրինակ, նոր դարաշրջանում (XVII—XIX դ.դ.) փիլիսոփաներն աշխատում էին գիտության մեթոդները փիլիսոփայության մեջ կիրառելու միջոցով դարձնել այն իսկական, իր ճշգրտությամբ նույնիսկ մաթեմատիկային չզիջող գիտություն, որը կարողանար բացատրել աշխարհը, ապա արդի բուրժուական փիլիսոփայությունը կտրականապես հրաժարվում է նման ձգտումից՝ դեն նետելով գիտականության իդեալը։ Այդ փիլիսոփայության համար խիստ բնորոշ են սուբյեկտիվ իդեալիզմի ոգով մեկնաբանված կեցության ինտուիտիվ «հասկացման», «պարզեցման», «ունկնդրման» և այլ ոչ գիտական ու հակագիտական, իռացիոնալիստական մեթոդները։ Դրանք ներկայացվում են որպես փիլիսոփայական մեթոդաբանության բարձրագույն իդեալ, որը, ազատելով փիլիսոփայությունը գիտականության բոլոր հատկանիշներից և հաղորդելով նրան հակագիտական բնույթ, իբրև թե բարձրացնում է այն բոլոր գիտություններից վեր՝ դարձնելով մարդկային և հասարակական գերագույն հոգևոր արժեքների կրողն ու արտահայտիչը։

Երրորդ, եթե անցյալում բուրժուական փիլիսոփայությունը գերազանցապես ժխտում էր փիլիսոփայության ուրույն, առանձնահատուկ մեթոդների գոյությունը կամ ընդհանրապես դրանց յուրօրինակությունը՝ հանգեցնելով դրանք գիտական մեթոդներին, ապա ժամանակակից բուրժուական փիլիսոփայությունը հիմնականում բացարձակացնում է փիլիսոփայական մեթոդների առանձնահատկությունները և երբեմն այն աստիճան · է հակադրում գիտական մեթոդներին, որ, ինչպես Լ. Վիտգենշտայնը, հրաժարվում է դրանք մեթոդներ համարել։

Վերջապես, չորրորդ, ժամանակակից բուրժուական փիլիսոփաները, գիտություն չհամարելով և գիտությունից վեր դասելով փիլիսոփայական մեթոդներն ու փիլիսոփայությունն ամբողջապես, ջանում են հասնել երկու կարևորագույն նպատակի. մի կողմից, իրենց մեթոդների և ուսմունքների արատներն ու սնանկությունը ոչ միայն քողարկել, այլև ներկայացնել որպես խոշոր արժանիքներ, իսկ մյուս կողմից՝ վարկաբեկել մարքս-լենինյան փիլիսոփայությունը, ներկայացնելով վերջինիս իրական արժանիքները, հատկապես գիտականությունն ու հեղափոխական-վերափոխիչ նշանակությունը որպես արմատական թերություններ, որպես իր իսկության կորուստ։

Հետևապես, փիլիսոփայական մեթոդները գիտական մեթոդներին հակադրելն ի վերջո իր սուր ծայրով ուղղված է մարքս-լենինյան փիլիսոփայության և հատկապես մեթոդաբանության դեմ և այդ պատճառով դրա համակողմանի փաստարկված քննադատությունն արդի գաղափարախոսական պայքարի առաջնահերթ խնդիրներից է։

---



# ՀԱԿԱՀԻՏԼԵՐՅԱՆ ԿՈԱԼԻՑԻԱՅԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Ս. ՊԱՊՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՀԻՏԼԵՐՅԱՆ ՖԱՇԻԶՄԻ և ճապոնական միլիտարիզմի դեմ տարած հաղթանակը ետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանում շարունակում է հեղափոխականացնող ազդեցություն ունենալ երկրագնդի ժողովուրդների ճակատագրի, համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա։ Այդ իսկ պատճառով երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության պրոբլեմները, նախ և առաջ հիտլերյան ֆաշիզմի ջախջախման գործում Սովետական Միության վճռական ներդրումը, մինչև օրս միջազգային ասպարեզում գաղափարախոսական սուր պայքարի առարկա են։

Չնայած Սովետական Միության և հակահիտլերյան կոալիցիայի մյուս պետությունների կողմից գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախումից հետո արդեն չորս տասնամյակ է անցել, այնուամենայնիվ, ոչ մի կերպ չի դադարում գաղափարական լարված պայքարը երկրորդ համաշխարհային պատերազմի ծագման, ընթացքի և արդյունքների բոլոր արմատական պրոբլեմների շուրջը։ Բուրժուական հետազոտողներն աղավաղում են պատերազմի դասերը՝ նպատակ ունենալով արդարացնել ամերիկյան վարչակազմի և ՆԱՏՕ-ի գծով նրա դաշնակիցների ներկայիս ագրեսիվ կուրսը։

Բուրժուական պատմագիտությունը ձգտում է իմպերիալիզմի վրայից հանել պատերազմի նախապատրաստման և սանձազերծման համար պատասխանատվությունը։ Արևմտյան գիտնականներ — Ջոուեսը, Արենդտը, Ռիչը և ուրիշներ փորձում են ֆաշիզմը ներկայացնել որպես «օտար մարմին» կապիտալիստական սիստեմում, յուրատեսակ «հեղափոխական շարժում», «մոդեռնիստական գաղափարախոսություն»։ Նրանք համառորեն ձգտում են անցկացնել այն գաղափարը, թե տասնյակ միլիոն մարդկանց ոչնչացման պատասխանատվությունն ընկնում է անձնապես Հիտլերի, Մուսոլինիի, Տոձիոյի և ֆաշիզմի մյուս պարագլուխների վրա։ Դրանով Արևմուտքում հույս ունեն քողարկել այն իրողությունը, որ նացիզմը իմպերիալիզմի ծնունդն է, միաժամանակ ձգտելով արդարացնել արդի նեոֆաշիզմը և ռևանշիզմը ու մինչև անգամ դրա՞նք ներկայացնել որպես «ազգային», «ժողովրդական» շարժումներ։

Հակառակ երկրորդ համաշխարհային պատերազմի դասերին, բուրժուական բազմաթիվ հետազոտողներ փորձում են արդարացնել արևմտյան տերությունների ագրեսորին «խաղաղեցնելու» քաղաքականությունը, այն ներկայացնելով որպես կապիտալիստական երկրների ժողովրդական զանգվածների ...ակնկալություններ։ Այսպես, անգլիական պատմաբան Ջ. Ռեյը Նևիլ Չեմբեռլենի 30-ական թվականների գործունեությունը բնութագրում է որպես «երկարատև պայքար հանուն խաղաղության պահպանման»։

Այսուհանդերձ, բուրժուական գիտնականների և քաղաքագետների գլխավոր նպատակն է «ապացուցել», որ ֆաշիզմի դեմ տարած հաղթանակում ոչ թե Սովետական Միությունն է կատարել վճռական դերը, այլ ԱՄՆ-ը։ Ղեկավարվելով զուտ քաղաքական նկատառումներով, նրանք պնդում են, որ

իբր «հաղթանակի ճարտարապետ» և «դեմոկրատիայի զինանոց» հանդիսացան Միացյալ Նահանգները։

Երկրորդ համաշխարհային պատերազմին այս կամ այն չափով մասնակցեցին 61 պետություններ, որոնք ունեին սոցիալ-քաղաքական տարբեր հասարակարգ, կանգնած էին հասարակական զարգացման տարբեր աստիճանների վրա և, բնականաբար, նրանցից յուրաքանչյուրի ռեալ ներդրումը հաղթանակի գործում զգալիորեն պայմանավորված էր տվյալ պետության մոբիլիզացիոն հնարավորություններով, նրա աշխարհագրական դիրքով և այլն։

Ինչքան էլ ճգնեն պատմության բուրժուական «մեկնաբանները», նրանք այնուամենայնիվ չեն կարող հերքել, որ սովետա-գերմանական ռազմաճակատը չորս տարվա ընթացքում երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր և վճռական ճակատն էր ոչ միայն իր լայնատարածությամբ, պատերազմող կողմերի պայքարում ներգրավված երկրների թվով, պայքարի լարվածությամբ, այլև նախ և առաջ, այնտեղ ձեռք բերված արդյունքներով։

Պատերազմում ՍՍՀՄ-ի հարկադրված մասնակցելը, որի ընթացքում մեր երկիրը հռչակեց իր նպատակները՝ գերմանական ֆաշիզմի լիակատար ոչնչացում, Եվրոպայի ժողովուրդների ազատագրում հիտլերյան ստրկությունից, ամբողջովին փոխեց երկրորդ համաշխարհային պատերազմի բնույթը, այն վերջնականապես դարձավ արդարացի, ազատագրական պատերազմ։ Ֆաշիստական երկրների ավազակային խմբավորման դեմ պատերազմի քաղաքական բնույթն էլ հենց ստեղծեց այն նախադրյալները, որոնք անհրաժեշտ էին պետությունների և ժողովուրդների հակահիտլերյան կոալիցիայի կազմավորման համար։

Բուրժուական մեկնաբանները հաճախ փորձում են հավասարության նշան դնել սովետա-գերմանական ռազմաճակատում տեղի ունեցած վիթխարի իրադարձությունների և պատերազմի մյուս ռազմաճակատներում կատարված անհամեմատ ավելի փոքր նշանակություն ունեցող գործողությունների միջև՝ ձգտելով նսեմացնել Սովետական Միության, նրա զինված ուժերի դերը։ Սակայն մյուս ռազմաճակատների իրադարձությունները համարյա բոլոր դեպքերում գլխավոր ռազմաճակատում տեղի ունեցող լարված պայքարի անմիջական հետևանք էին։

Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրեի միջազգային հարաբերությունների պատմությունը հարուստ է բազմաթիվ այնպիսի փաստերով, որոնք անհերքելիորեն հաստատում են Սովետական Միության դեմ պրովոկացիաների օգնությամբ պատերազմ հրահրելու արևմտյան տերությունների ձգտումները։ Նման քաղաքականություն իրականացնելով, Լոնդոնի, Փարիզի և Վաշինգտոնի ռեակցիոն կառավարողները, այսպես կոչված «արևմտյան դեմոկրատիաները», իրար ետևից ֆաշիստական ագրեսորների ձեռքն էին հանձնում Կենտրոնական և Արևելյան Եվրոպայի երկրները։ Միջազգային ռեակցիան դրանով ձգտում էր սրբաշահել հիտլերյան կլիկին և ագրեսիվ պատերազմի մղել դեպի Արևելք։ Այդ քաղաքականության կիզակետը Մյունխենն էր։ Իր ֆաշիստական մրցակիցների ձեռքերով թուլացնել կամ խեղդել Սովետական Միությունը, այնուհետև ամբողջ թափով նետվել ՍՍՀՄ-ի դեմ մղված պատերազմում թուլացած իր իմպերիալիստական մրցակիցների վրա և համաշխարհային տիրապետության հասնել՝ այդպիսին էր «արևմտյան դեմոկրատիաների» քաղաքական ստրատեգիան։ Այդ իսկ պատճառով նախապատերազմական տարիներին Սովետական Միությանը չհաջողվեց ստեղծել կոլեկտիվ անվտանգության ամուր համակարգ։ Մեր երկիրն ստիպված եղավ 1939 թվականի օգոստոսի 23-ին ստորագրել չհարձակման մասին Գերմանիայի առաջարկած պայմանագիրը։ Արևմտյան կառավարողներին, այդպիսով, չհաջողվեց 1939 թվականին Հիտլերի ագրեսիան ուղղել Սովետական Միության դեմ և նախապայմաններ ստեղծել՝ «բոլշևիզմի դեմ խաչակրաց արշավանք» կազմակերպելու համար։ Դը Գոլն իր հուշագրություններում նշել է, որ պատերազմի սկսվելուց հետո էլ Ֆրանսիայի որոշ ազդեցիկ շրջաններ «ավելի շատ մտահոգված էին նրանով, թե ինչպես կարելի է հարված հասցնել Ռուսաստանին, քան թե Գերմանիայի դեմ հաջողությամբ պայքարելու գործով»։



Տանելով հեշտ ու թեթև հաղթանակներ եվրոպական մի շարք պետությունների նկատմամբ, ագրեսորները որոշեցին արշավանք սկսել Սովետական Միության դեմ։ Գերմանաֆաշիստական ղեկավարությունը ոչ առանց հիմքի ենթադրում էր, որ Սովետական Միության պարտությամբ անհրաժեշտ նախադրյալներ կստեղծվեն Բրիտանական կայսրության արագ և լիակատար ջախջախման համար։ Ֆաշիստական ագրեսորները մահացու սպառնալիք ստեղծեցին բազմաթիվ երկրների, այդ թվում՝ Անգլիայի, Ֆրանսիայի և արևմտաեվրոպական ուրիշ պետությունների ազգային շահերի համար։ Դեռևս, այսպես կոչված, «տարօրինակ պատերազմի» օրերին (1939—1940 թթ.) Գերմանիայի արտաքին գործերի մինիստրությունը մշակեց գաղտնի հուշագիր Անգլիայի և Ֆրանսիայի դեմ տարած հաղթանակից հետո աշխարհի տնտեսական վերակառուցման մասին, որով նախատեսվում էր ստեղծել «մեծ գերմանական տնտեսական ոլորտ», որի մեջ Ավստրիայից, Չեխոսլովակիայից և Լեհաստանից բացի կմտնեին նաև Արևմտյան Եվրոպայի երկրները (առաջին շրջանում՝ Բելգիան, Հոլանդիան, Նորվեգիան և Լյուքսեմբուրգը)։

Արևմտյան պետությունների առավել հեռատես քաղաքական և ռազմական գործիչներն արդեն այն ժամանակ գիտակցում էին հիտլերյան ագրեսիայի սպառնալիքի մասշտաբները։ Ռազմական մինիստրին ուղղած նամակում ԱՄՆ-ի բանակի շտաբի պետ գեներալ Ջ. Մարշալը գրում էր, որ եթե ֆաշիստական Գերմանիային հաջողվի իրականացնել իր պլանները Սովետական Միության և Մեծ Բրիտանիայի նկատմամբ, ապա ամերիկյան ժողովուրդը «ստիպված կլինի... դեմ առ դեմ հանդիպել թշնամուն արևմտյան կիսագնդում, երբ նրա վերահսկողության տակ կլինի երկրագնդի մեծ մասը»։

Միջիմպերիալիստական հակասությունների ծայրահեղ սրությունն ու անհաշտելիությունը, ֆաշիստական պետությունների քաղաքականության հակամարդկային էության մերկացումը ստիպում էին «Արևմտյան դեմոկրատիաների» կառավարող շրջաններին ավելի վճռական միջոցների դիմել։ Այդ էին համառորեն պահանջում աշխատավոր զանգվածները։ Բացահայտ մյունխենականներին Անգլիայում փոխարինեց Ու. Չերչիլի կառավարությունը։ Հաշվի առնելով ժողովրդի տրամադրությունը, Չերչիլը հայտարարում էր. «Մենք մարտնչում ենք հանուն այն բանի, որպեսզի ազատագրենք աշխարհը նացիստական բռնապետությունից»։ Ֆաշիստների օկուպացրած երկրներում լայնորեն ծավալվում էր դիմադրության շարժումը։

Հասկանալի է, որ ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շրջանները չփոխեցին իրենց հայացքները սոցիալիզմի և Սովետական Միության նկատմամբ։ «Ամեն մի պատերազմ,— նշում էր Վ. Ի. Լենինը,— անխզելիորեն կապված է այն քաղաքական կարգի հետ, որից նա բխում է։ Այն նույն քաղաքականությունը, որը մի որոշակի տերություն, այդ տերության ներսում մի որոշակի դասակարգ վարել է երկար ժամանակամիջոցում պատերազմից առաջ, այդ նույն դասակարգը անխուսափելիորեն ու անվերապահորեն շարունակում է վարել պատերազմի ժամանակ, փոխելով միայն գործողության ձևը» (ԵԼԺ, հ. 32, էջ 101)։

Հակահիտլերյան կոալիցիայի ստեղծումը ամենևին չէր բացառում գաղափարախոսական հակասությունները նրա սոցիալիստական և կապիտալիստական մասնակիցների միջև։ Բնորոշ է, որ Չերչիլը 1941 թվականի հունիսի 22-ին ռադիոյով ունեցած իր ելույթը սկսեց հետևյալ խոսքերով. «Վերջին քսանհինգ տարվա ընթացքում ոչ ոք չի եղել կոմունիզմի այնպիսի հետևողական հակառակորդ, ինչպիսին ես եմ եղել»։ Սակայն Անգլիայի ու ԱՄՆ-ի և, մյուս կողմից, ֆաշիստական բլոկի պետությունների միջև եղած միջիմպերիալիստական մրցակցությունը ստիպեց անգլիական և ամերիկյան կառավարող շրջաններին համաձայնելու հակահիտլերյան կոալիցիայի ստեղծմանը։

Պատերազմի մեջ ՍՍՀՄ-ի ընդգրկումից հետո էլ իմպերիալիստական բուրժուազիան շարունակում էր հետապնդել քաղաքական այնպիսի նպա-

տակներ, որոնք հիմնովին տարբերվում էին ազատագրական, դեմոկրատական այն իդեալներից, որոնց ձգտում էին ֆաշիզմի դեմ մարտնչող ժողովուրդները։ Բուրժուազիայի իսկական նպատակների մասին բազմիցս նշվել է ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շրջանների նշանավոր ներկայացուցիչների ելույթներում։ Օրինակ, սենատոր Հ. Տրումենը, որ հետագայում դարձավ ԱՄՆ-ի փոխպրեզիդենտ, ապա նաև պրեզիդենտ, 1941 թվականի հունիսի 23-ին հայտարարեց. «Եթե կտեսնենք, որ հաղթում է Գերմանիան, ապա մենք կօգնենք Ռուսաստանին, իսկ եթե կսկսի հաղթել Ռուսաստանը, այդ դեպքում պետք է օգնել Գերմանիային և, այդպիսով, թող նրանք, որքան հնարավոր է, իրար շատ սպանեն»։

Պատերազմի ընթացքի և նրա արդյունքների վրա վճռական ազդեցություն ունեցավ սոցիալիստական պետության մասնակցությունը։ Ֆաշիստական ագրեսորների դեմ մղվող պայքարում Սովետական Միության հռչակած հստակ նպատակները համապատասխանում էին բոլոր ժողովուրդների իղձերին և որոշեցին երկրորդ համաշխարհային պատերազմի բնույթը։ Սովետական Միությունը ձգտում էր ոչ միայն վերացնել իր վրա կախված մահացու սպառնալիքը, այլև՝ ազատագրել Եվրոպայի ու Ասիայի ժողովուրդներին ֆաշիստական զավթիչներից և օգնել նրանց ազգային պետությունների վերականգնման գործում. Եվրոպայի ազատագրված ժողովուրդներին լիակատար ազատություն ընձեռել պետական կառուցվածքի ընտրության հարցում. բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռնարկել՝ ֆաշիստական հանցագործներին խստորեն պատժելու, ո՛ր երկրում էլ նրանք թաքնված լինեն, նրանց կատարած չարագործությունների համար. Եվրոպայում հիմնել այնպիսի կարգ, որը լիովին բացառեր Գերմանիայի կողմից նոր ագրեսիա սանձազերծելը. ստեղծել Եվրոպայի ժողովուրդների տնտեսական, քաղաքական և մշակութային երկարատև համագործակցություն, որը հիմնված լինի փոխադարձ վստահության և փոխօգնության վրա՝ հանուն հիտլերականների կողմից ավերված տնտեսության և մշակույթի վերականգնման։

Սովետական Միության հռչակած ու հետևողականորեն իրականացվող նպատակները, որոնք բխում էին սոցիալիստական հասարակարգի էությունից և համապատասխանում ողջ ազատասեր մարդկության իղձերին, մեծապես նպաստեցին ժողովուրդների իրոք հակաֆաշիստական կոալիցիայի ստեղծմանը։

Համաձայն Սովետական Միության հետ կնքած պայմանագրի՝ ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները ստիպված էին որոշակի պարտավորություններ ստանձնել. ֆաշիզմի դեմ պատերազմը վարել մինչև հաղթական ավարտ և ապահովել ետպատերազմյան կարգավորումը դեմոկրատական հիմունքներով։

Ֆաշիստական Գերմանիայի և նրա դաշնակիցների նկատմամբ հաղթանակը ձեռք բերվեց հակաֆաշիստական կոալիցիայի մասնակիցների միացյալ ջանքերով։ Սակայն միանգամայն տարբեր էր կոալիցիայի մասնակիցներից յուրաքանչյուրի դերը, որը որոշվում էր առաջին հերթին նրանով, թե ռազմական, քաղաքական և տնտեսական ինչպիսի ներդրում էր կատարվում ընդհանուր պայքարում։ Ֆաշիստական խմբավորման հիմնական, առաջատար ուժի՝ նացիստական Գերմանիայի, ջախջախման գործում վճռական դերը կատարեց Սովետական Միությունը։ Գերմանական ֆաշիզմի ստրատեգիական և քաղաքական պլանների լիակատար ձախողումը իրականացվեց սովետա-գերմանական ռազմաճակատում տեղի ունեցած ճակատամարտերի հետևանքով, որով և վերջնականապես որոշվեց հաղթանակի բախտը։

Թշնամու գերազանցող ուժերի դեմ մղված լարված պայքարում, որը տեղի էր ունենում հսկայական տարածություններում, սովետական զինված ուժերը ձգտում էին բեկում մտցնել պատերազմում և հասնել ստրատեգիական նախաձեռնության։ Հիտլերյան բանակը արյունաքամ էր լինում մարտերում։ Գերմանական հրամանատարության տվյալներով վերմախտի միայն ցամաքային ուժերը մինչև 1945 թվականի մարտը Արևելյան ճակատում կորցրին 6 միլիոն 315 հազար սպանված, անհայտ կորած և վիրավոր։ Հիտլերականները չկարողացան լրացնել այդ հսկայական կորուստները մինչև անգամ մյուս ռազմաճակատներն անպաշտպան թողնելու գնով։ Սովետական զինված ուժերի դեմ պատերազմի տարբեր փուլերում կռվում էին հիտլերյան ցամաքային զորքերի 60-ից մինչև 80 տոկոսը։



Անգամ Արևմտյան Եվրոպայում 1944 թվականի հունիսի 6-ին, երկրորդ ռազմաճակատի բացումից հետո, Արևելյան ռազմաճակատը առաջվա պես կլանում էր գերմանական ֆաշիզմի մարդկային և նյութական ռեսուրսների հիմնական զանգվածը։ Սովետական բանակն իր հզոր հարվածներով ուժասպառ էր անում Գերմանիայի և նրա դաշնակիցների բանակները, որոնց ընդհանուր կորուստներն արևելքում կազմեցին շուրջ 10 միլիոն մարդ։ Այդ կորուստները, հիտլերյան գեներալ Յոդլի խոստովանությամբ, 1945 թվականի հունվարին լիովին սպառեցին ֆաշիստական Գերմանիայի ռեզերվները։

Գերմանական ֆաշիզմի ջախջախման գործում Սովետական Միության վճռական դերը ժամանակին անվերապահորեն ընդունում էին Միացյալ Նահանգների և Անգլիայի կառավարությունների ղեկավարները։ Այսպես, ԱՄՆ-ի պրեզիդենտը ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահին 1943 թվականի փետրվարի 23-ին ուղղած նամակում նշում էր. «Կարմիր բանակը և ռուս ժողովուրդը, անշուշտ, ստիպեցին Հիտլերի զինված ուժերին շարժվել վերջնական պարտության ուղիով և երկար ժամանակով նվաճեցին Միացյալ Նահանգների հիացմունքը»։ Այն փաստը, որ Սովետական Միությունը վճռական ներդրում կատարեց ֆաշիստական հորդաների դեմ մղված պայքարում, պատերազմի տարիներին բազմիցս խոստովանել է Ու. Չերչիլը, թեև հետագայում նա փորձում էր աղավաղել այդ ակնհայտ ճշմարտությունը։ 1945 թվականի փետրվարի 23-ին Չերչիլը գրում էր. «Կարմիր բանակը իր քսանյոթերորդ տարեդարձը տոնում է պանծալի հաղթանակով, որն առաջ բերեց նրա դաշնակիցների անսահման հիացմունքը և որը վճռեց գերմանական միլիտարիզմի ճակատագիրը։ Ապագա սերունդները կզգան իրենց պարտքը կարմիր բանակի առջև նույնպիսի անվերապահությամբ, ինչպես անում ենք մենք, ականատես լինելով այդ հոյակապ հաղթանակներին»։

Ձգտելով նսեմացնել ՍՍՀՄ-ի ռազմական հաղթանակը, պատմության կեղծարարները միաժամանակ փորձում են տարածել այն դրույթը, որ իբր սովետական զինված ուժերը հանդերձավորելու և երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր ռազմաճակատում նրանց համար ռազմական հաղթանակներ ապահովելու գործում վճռական դեր խաղացին լենդ-լիզի գծով ամերիկյան ռազմական մատակարարումները, արևմտյան դաշնակիցների, այսպես կոչված, «անշահախնդիր» օգնությունը ռազմաստրատեգիական նյութերով և զենքով։

Այդ դրույթը դուրս չի գալիս Արևմտյան Եվրոպայում և Միացյալ Նահանգներում հրատարակվող գրքերի և հանդեսների էջերից, տեղ է գտել դպրոցական դասագրքերում, մշտապես պրոպագանդվում է Արևմուտքի մասսայական ինֆորմացիայի միջոցներով։ Այսպես, ամերիկյան պատմաբան Գ. Պետչերը Եվրոպայի անկումը և վերելքը գրքում պնդում է, որ առանց ԱՄՆ-ի և Անգլիայի օգնության Սովետական Միությունը չէր կարող շրջադարձ կատարել պատերազմում։ Իսկ նրա հայրենակից Լ. Ռոուզը հայտարարում է, թե սովետական բանակի հզորության հարաճուն ուժեղացումը և նրա ռազմական հաղթանակները ֆաշիստական կոալիցիայի երկրների դեմ պատերազմի եզրափակիչ փուլում անհնարին կլինեին առանց «ամերիկյան շռայլ օգնության»։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին դաշնակիցների կողմից լենդ-լիզով կատարված մատակարարումները կազմեցին Սովետական Միությունում թողարկված արդյունաբերական արտադրանքի չորս տոկոսը։ Անհրաժեշտ է նշել, որ իրենց որակով լենդ-լիզով ուղարկված ինքնաթիռներն ու տանկերը զգալիորեն զիջում էին սովետական մարտական տեխնիկային։ Այնուամենայնիվ, մենք չենք թերագնահատում այդ օգնությունը։ Սակայն պատմական ճշմարտությունն այն է, որ Սովետական Միությունը ջախջախեց ֆաշիստա-

կան Գերմանիայի գլխավոր ուժերը նախ և առաջ շնորհիվ հայրենական զենքի և մատակարարման սեփական միջոցների։

Պատերազմի նախօրյակին (1940 թ.) Սովետական Միությունում ձուլվում էր 14,9 մլն տոննա չուգուն, 18,3 մլն տոննա պողպատ և արդյունահանվում էր 165,9 մլն տոննա քարածուխ։ Ֆաշիստական Գերմանիան օկուպացված երկրների հետ միասին 1940—41 թթ. ձուլեց 31,8 մլն տոննա պողպատ, մոտ 20 մլն տոննա չուգուն և արդյունահանեց 404 մլն տոննա քարածուխ։ Դա գերազանցում էր Սովետական Միության քարածխի արտադրությունը մոտ երկուսուկես անգամ, պողպատինը՝ մոտ 1,5 և չուգունինը՝ 1,3 անգամ։ Սովետական էկոնոմիկան դեռևս փոխադրված չէր ռազմական ռելսերի վրա։ Սովետական տերիտորիայի զգալի մասի զավթումը մեր երկրի համար ավելի աննպաստ դարձրեց այդ հարաբերակցությունը։ Մինչև 1941 թվականի նոյեմբերը Սովետական Միությունը կորցրեց քարածխի արդյունահանման 63 տոկոսը, չուգունի ձուլման՝ 68, պողպատի ձուլման՝ 58 և ալյումինի արտադրության 60 տոկոսը։ 1942 թվականի ամռանը տեղի ունեցած սովետական զորքերի նահանջից հետո ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ կորուստներն ավելի մեծ դժվարություններ ստեղծեցին։

Սակայն սոցիալիստական սիստեմի առավելությունները հնարավորություն ընձեռեցին կարճ ժամկետներում առավելագույնս մոբիլիզացնելու մեր բոլոր տնտեսական ռեսուրսները։ 1941 թվականի 3—4 ամիսների ընթացքում հիմնականում ավարտվեց արդյունաբերության փոխադրումը ռազմական ուղու վրա։ Դեպի արևելք էվակուացված գործարաններն արդեն 1942 թվականի սկզբին արտադրանք տվեցին։ Հատկանշական է, որ պատերազմական ժամանակի ծրագրով արդյունաբերության վերակառուցումը ԱՄՆ-ում և Անգլիայում տևեց մեկուկես-երկու տարի։ Սովետական Միության արդյունաբերությունն արագորեն բազմապատկեց ռազմական արտադրանքի թողարկման տեմպերը։ 1942 թվականին նա արտադրեց 25 հազար ինքնաթիռ, մոտ 23 և կես հազար տանկ և ավելի քան 34 հազար 76 միլիմետր տրամաչափի դաշտային հրանոթ։

Ռազմական արտադրանքի համեմատաբար ավելի բարձր տեմպերը ՍՍՀՄ-ին հնարավորություն ընձեռեցին պատերազմի վերջին տարիներին զգալիորեն գերազանցելու գերմանական արդյունաբերությունը պատերազմի տեխնիկական բոլոր միջոցների թողարկման գործում։ 1943—1945 թթ. ՍՍՀՄ-ում տարեկան միջին հաշվով թողարկվում էր 120 հազար հրետանի, 40 հազար ինքնաթիռ, 30 հազար տանկ, իսկ Գերմանիայում 1944 թ. թողարկվել է 37.950 ինքնաթիռ, 27.300 տանկ։ Նշենք նաև, որ սովետական կառավարությունը զինեց և հանդերձավորեց սովետական տերիտորիայում կազմավորված լեհական, չեխոսլովակյան, ֆրանսիական և ռումինական զորամասերը։

Այս տվյալները վճռականորեն հերքում են բուրժուական հետազոտողների այն պնդումները, թե միայն շնորհիվ Ամերիկայի Միացյալ Նահանգների ռազմական մատակարարումների Սովետական Միությունը կարողացավ իր զինված ուժերին անհրաժեշտ զենք ու հանդերձանք ապահովել։

Միացյալ Նահանգները, այսպես կոչված, ետադարձ լենդ-լիզով, Սովետական Միությունից ստացան 7,3 մլրդ դոլարի արժողությամբ տարբեր ապրանքներ և ծառայություններ։ ԱՄՆ-ի առևտրի նախկին մինիստր Ջ. Ջոնսը այդ կապակցությամբ նշել է. «ՍՍՀՄ-ից ստացվող մատակարարումներով մենք ոչ միայն վերադարձնում էինք մեր ծախսերը, այլև ստանում շահույթ, որն այնքան էլ հաճախ չի պատահում մեր պետական օրգանների կողմից կարգավորվող առևտրական հարաբերություններում»։ Հայտնի է նաև պրեզիդենտ Ֆ. Դ. Ռուզվելտի 1944 թվականի մայիսի 20-ի ելույթը, որի ժամանակ նա նշեց, թե «Սովետական Միությունը գլխավորապես օգտվում է իր սեփական գործարաններում պատրաստված զենքից»։

Սովետական զինված ուժերն ամբողջովին կամ մասնակիորեն ազատագրեցին Եվրոպայի և Ասիայի մոտ 200 միլիոն բնակիչ ունեցող 13 պետություններ։ Այդ երկրների ժողովուրդները միշտ կհիշեն սովետական մարտիկների սխրանքը, որոնք իրենց ազատագրեցին ֆաշիստական ստրկությունից։

Բուրժուական մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության մեկնաբանները ներկայումս ամեն կերպ ձգտում են հիմնովին աղավաղել և խեղաթյուրել պատերազմի տարիներին Սովետական Միության հետ համագործակցության էությունն ու բնույթը։ Բուրժուական գրչակները ճգնում են նենգափոխել Սովետական Միության, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի ղեկավարների՝ Թեհրանում, Յալթայում և Պոտսդամում կայացած հանդիպումների ժամանակ ընդունված որոշումների բովանդակությունը։

Վերջերս համաշխարհային հասարակայնությունը լայնորեն նշեց Յալթայի կոնֆերանսի 40-ամյակը։ Ղրիմում երեք տերությունների ղեկավարների հանդիպումը նշանավորեց հակահիտլերյան կոալիցիայի երկրների ժողովուրդների վճռականությունը՝ հաղթականորեն ավարտելու պատերազմը նացիզմի և միլիտարիզմի դեմ։ Յալթայում ընդունված որոշումները կանխորոշեցին XX դարի երկրորդ կեսի միջազգային կյանքի զարգացումը։ Լիովին և վերջնականապես դատապարտվեցին միլիտարիզմը, ֆաշիզմն ու ագրեսիան։ «Մեր վճռական նպատակն է,— հայտարարեցին երեք տերությունները,— ոչնչացնել գերմանական միլիտարիզմն ու նացիզմը և երաշխիք ստեղծել, որ Գերմանիան այլևս երբեք չի կարողանա խախտել ամբողջ աշխարհի խաղաղությունը»։

Վաշինգտոնի վարչակազմը, միջազգային ամբողջ ռեակցիան կուզենային այսօր ժողովուրդների հիշողությունից ջնջել պատերազմական տարիների համագործակցությունը Սովետական Միության հետ։ Նրանք ձգտում են նենգափոխել պատերազմի դասերը և «համոզել» հասարակ մարդկանց՝ սոցիալիզմի դեմ «խաչակրաց արշավանք» կատարելու անհրաժեշտությունը։

Հակահիտլերյան կոալիցիայի պետությունների համագործակցությունը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, որի առանձին փուլերն են Թեհրանը (1943 թվականի նոյեմբերի 28-ից դեկտեմբերի 1-ը), Յալթան (1945 թ. փետրվարի 4—11-ը) և Պոտսդամը (1945 թվականի հուլիսի 17-ից օգոստոսի 2-ը), չնայած իր դժվարություններին և ստվերոտ կողմերին, այնուամենայնիվ, կատարեց իր առջև դրված խնդիրը՝ մեծապես նպաստեց ընդհանուր թշնամու դեմ տարած հաղթանակի նվաճմանը։

Սովետական Միությունը հավատարիմ է Թեհրանի, Յալթայի և Պոտսդամի համաձայնագրերով ստանձնած պարտավորություններին։ Նա առաջվա պես պատրաստ է համագործակցել Արևմուտքի երկրների հետ միջազգային կյանքի բոլոր հարցերում։ Սովետական Միության բոլոր գործողությունները նպատակ ունեն դադարեցնել սպառազինությունների մրցավազքը, կանխել միջուկային աղետը։ Հանուն կայուն խաղաղության և համակողմանի համագործակցության մղվող պայքարում մենք հենվում ենք սոցիալիստական ընկերակցության երկրների միասնության, համաշխարհային հասարակայնության գերակշիռ մեծամասնության ջերմ պաշտպանության վրա։

«Իսկ ինչ վերաբերում է կապիտալիստական պետությունների հետ հարաբերություններին,— նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի մարտյան պլենումում,— ապա... մենք անսասանորեն կընթանանք խաղաղության և խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականության կուրսով։ Բարի կամքին Սովետական Միությունը միշտ կպատասխանի բարի կամքով, վստահությանը՝ վստահությամբ»։

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՎԱԼՅՈՒՏԱՅԻՆ ՃԳՆԱԺԱՄԸ ԵՎ ՄԻՋԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՐՈՒՄԸ

**Թ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ**

*ՊԵՏԱԿԱՆ ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ժամանակակից փուլը բնորոշվում է միջիմպերիալիստական հակասությունների խորացումով։ Դրա ցայտուն արտահայտություններից մեկը վալյուտային արդի ճգնաժամն է, նրա այնպիսի սրումը, որը վկայում է կապիտալիզմի ոչ միայն վալյուտա-ֆինանսական, այլև ամբողջ համակարգի խրոնիկական ճգնաժամի մասին։*

*«Ինչ վերաբերում է կապիտալիզմի աշխարհին,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում,— ապա մենք այդ հասարակական սիստեմի ընդհանուր ճգնաժամի զգալի խորացման վկաներն ենք։ Առավել մեծ չափով են կորցնում իրենց արդյունավետությունը այն մեթոդները, որոնց օգնությամբ կապիտալիզմին հաջողվում էր ետպատերազմյան ժամանակաշրջանում պահպանել իր զարգացման հարաբերական կայունությունը։ Իմպերիալիզմը խճճվել է ներքին ու միջպետական հակամարտությունների, ցնցումների, բախումների մեջ»։*

*Կապիտալիզմի վալյուտային համակարգի ճգնաժամը չի կարելի դիտել որպես մի երևույթ, որն առնչվում է միայն միջազգային հաշվարկների հետ։ Այն նախ և առաջ կապիտալիզմի համաշխարհային համակարգի տնտեսական և քաղաքական զարգացման արդյունք է, որի մեջ առավել ցայտուն են արտահայտվում կապիտալիզմի հիմնական տնտեսական հակասությունները, հատկապես արտադրության հանրային բնույթի և յուրացման մասնավոր ձևի միջև, ինչպես նաև աշխատանքի և կապիտալի, արտադրության և սպառման միջև։ Տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափության օրենքի գործողության և միջիմպերիալիստական մրցակցության ծավալման հետևանքով կապիտալիզմի աշխարհում մեկ կենտրոնի փոխարեն, որը գոյություն ուներ մինչև 50-ական թվականների կեսերը, ձևավորվել է երեք կենտրոն (ԱՄՆ, Արևմտյան Եվրոպա, Ճապոնիա), որոնց միջև տնտեսական մրցակցությունը գնալով ուժեղանում է։ Հարկ է նշել նաև իմպերիալիստական տերությունների ռազմաքաղաքական մրցակցության խորացման մասին։*

*Ինչ վերաբերում է վալյուտա-ֆինանսական համակարգին, ապա այն, հանդիսանալով «երկրորդական, երրորդական, ածանցյալ»՝ արտադրության նկատմամբ (ըստ Կ. Մարքսի), միաժամանակ հակադարձ ազդեցություն է գործում արտադրության ոլորտի վրա։ Դա նախ և առաջ արտահայտվում է նրանում, որ վալյուտա-ֆինանսական ճգնաժամը սովորաբար նախորդում է տնտեսական ճգնաժամին, և հետագայում վալյուտա-ֆինանսական համակարգի աշխուժացումը բարենպաստ պայմաններ է ստեղծում տնտեսական ճգնաժամից դուրս գալու համար։*

*Վալյուտային ասպարեզում ներկայումս նկատվում է դեռևս Վ. Ի. Լենինի կողմից բացահայտված միանգամից երկու գլխավոր միտումների դրսևորում,*



*որոնք որոշում են միջազգային հարաբերությունները կապիտալիզմի համակարգում՝ համաշխարհային կապիտալիստական տնտեսության ինտերնացիոնալացումը և ազգային իմպերիալիզմների պայքարը։*

*Առաջին միտումը տանում է դեպի վալյուտային պրոբլեմների լուծման փորձեր՝ միջազգային, գլոբալ մակարդակով, որն իր արտացոլումն է գտնում տարբեր վալյուտային մեխանիզմների ստեղծման և կիրառման մեջ (օրինակ, վալյուտաների, այսպես կոչված, «լողացող» կուրսերի համակարգը), երկրորդը՝ դեպի վալյուտային խմբավորումների ձևավորում (օրինակ, Եվրոպական վալյուտային համակարգի ստեղծումը) և «վալյուտային նացիոնալիզմի» ուժեղացումը, այսինքն՝ մյուս երկրների հաշվին սեփական վալյուտան ամրապնդելու ձգտումը՝ առանց նրանց շահերը հաշվի առնելու։ Դրա վառ վկայությունն է ԱՄՆ-ի արհամարհանքն իր գործընկերների հանդեպ՝ բանկային տոկոսի, հետևաբար և դոլարի կուրսի արհեստական բարձրացումը մյուս կապիտալիստական երկրների վալյուտաների նկատմամբ։*

*Վալյուտային ասպարեզում, ինչպես և կապիտալիզմի արտաքին տնտեսական մյուս հարաբերություններում, տեղի է ունենում կենտրոնաձիգ և կենտրոնախույս ուժերի մշտական պայքար։ Առաջինների համար օբյեկտիվ հիմք է հանդիսանում կապիտալիզմի համաշխարհային տնտեսությունում պետական մոնոպոլիստական միտումների ուժեղացումը, իսկ երկրորդների համար՝ քաղաքական և տնտեսական զարգացման անհամաչափության օրենքի դրսևորումը։*

*Ինչպես հայտնի է, կապիտալիզմի ետպատերազմյան վալյուտային համակարգի հիմքերը դրվել են 1944 թ. Բրետոն-Վուդսի կոնֆերանսում, այսպես կոչված, ոսկու-վալյուտային ստանդարտի ձևով։ Ոսկին շարունակում էր կատարել արժեքի չափի իր ֆունկցիան, սակայն դադարեց միջազգային վճարամիջոց և շրջանառության միջոց լինելուց։ Միջազգային հաշվարկների ասպարեզում ոսկին կատարում էր համաշխարհային փողի իր դերը, որպես տարբեր երկրների միջև վճարային հարաբերությունների վերջնական կարգավորման միջոցի։ Միաժամանակ, ոսկու հետ միասին (որպես նրա «օգնականներ») միջազգային հաշվարկներում զգալի չափով սկսեցին օգտագործվել նաև, այսպես կոչված, ռեզերվային վալյուտաները՝ ամերիկյան դոլարը և անգլիական ֆունտ ստեռլինգը։*

*Այդուհանդերձ, կապիտալիզմի վալյուտային համակարգում ազգային վալյուտաների փոխանակումը ոսկով իրականացվում էր հիմնականում դոլարի միջոցով, և կապիտալիստական պետությունների մեծ մասը իրենց ազգային դրամական միավորների ոսկու պարունակությունը և պարիտետը ուղղակի կամ անուղղակի որոշում էր դոլարի միջոցով։ Փաստորեն կապիտալիզմի ետպատերազմյան վալյուտային համակարգը, ոսկու հետ կապված գործառնությունների սահմանափակման պայմաններում, հիմնված էր ամերիկյան դոլարի վրա։ Դա վկայում էր ետպատերազմյան շրջանում կապիտալիստական աշխարհի ուժերի հարաբերակցության, մասնավորապես, մյուս երկրների նկատմամբ ԱՄՆ-ի տնտեսական պոտենցիալի հսկայական գերակշռության մասին։*

*ԱՄՆ-ի հովանու ներքո ստեղծված՝ Միջազգային վալյուտային ֆոնդը (ՄՎՖ) և Վերակառուցման ու զարգացման միջազգային բանկը (ՎԶՄԲ) կապիտալիզմի վալյուտային համակարգի հիմնական մարմիններն են և միջազգային հաշվարկների մեջ մշտապես կողմնորոշվում են դեպի դոլարի երկրի շահերը։ ԱՄՆ-ը, ունենալով կապիտալիստական աշխարհի ոսկու պաշարների 75 տոկոսը և նրա թողարկած արդյունաբերական արտադրանքի շուրջ 55 տոկոսը, բնականաբար, առաջատար դեր էր խաղում և այժմ էլ խաղում է վերոհիշյալ կազմակերպություններում։ Օգտագործելով իր տնտեսական հզորությունը, ԱՄՆ-ը հասավ նրան, որ ետպատերազմյան (1946—1949 թթ.) տարիներին իրականացվեց մյուս կապիտալիստական երկրների վալյուտաների դևալվացիա՝ դոլարի նկատմամբ, պահանջելով, որ նրանց արտահանումը Արևմտյան Եվրոպայում վճարվի բացառապես դոլարներով* (Современная

капиталистическая система, Киев, 1981, стр. 58—71)։ Այսպիսով, վալյուտային համակարգի կայունացման և այդ տարիներին Արևմտյան Եվրոպայի երկրների քայքայված էկոնոմիկայի վերականգնման նպատակով օգնության ակնկալիքների փոխարեն, ԱՄՆ-ը իրականացրեց այդ երկրների վալյուտաների դևալվացիա՝ դրանք «ամրակցելով» դոլարին։

Արևմտյան Եվրոպայի երկրներն այս պայմաններում, չունենալով դոլարային ակտիվներ, հարկադրված էին դիմելու ԱՄՆ-ին՝ վարկեր և փոխառություններ ստանալու նպատակով (վարկերը և փոխառությունները դարձյալ արտահայտված էին դոլարներով)։ Եվ, այսպես, արդեն 50-ական թվականների սկզբին անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին, այսպես կոչված, եվրոդոլարների շուկայի ձևավորման համար, որին նպաստում էին Արևմտյան Եվրոպայում ամերիկյան ռազմական բազաների տեղաբաշխումը և անդրօվկիանոսյան կապիտալի ներհոսքը։ 1964 թվականի եվրոդոլարների շուկայում կուտակված միջոցները գնահատվում էին 9 մլրդ դոլար, 1970-ին՝ 57, իսկ 1981 թվականին՝ ավելի քան 1,3 տրիլիոն դոլար («Внешняя торговля», 1981 г., № 6, стр. 33—36)։ Բրետոնվուդսյան համաձայնությունից շատ չանցած, կապիտալիզմի վալյուտային համակարգը սկսեց ճեղքվածքներ տալ։ Ներքին և արտաքին հակասությունները, միջիմպերիալիստական մրցակցության երեք կենտրոնների գոյացումը, արտադրության և մրցապայքարի պայմանների փոփոխությունը, ոսկու պաշարների վերաբաշխումը, ինֆլյացիան և էկոնոմիկայի ռազմականացումը հանգեցրին կապիտալիզմի վալյուտային համակարգի թուլացման, ապա և ճգնաժամի։ Սկսվեց «փախուստ» դոլարից։ Մեծացավ հիմնական կապիտալիստական վալյուտաների անկայունությունը և աստիճանաբար սկսվեց ոսկու դուրս մղումը միջազգային վճարային շրջանառությունից։

Այնուհանդերձ, ոսկու դերը չափազանց բարձր է կապիտալիստական էկոնոմիկայում, և այն մնում է որպես տարբեր երկրների վճարային հաշվեկշիռների հավասարեցման վերջնական միջոց։ Դրանով է բացատրվում պայքարը ոսկու համար, որը շարունակվում է գլխավոր կապիտալիստական երկրների միջև։

Դոլարի ճգնաժամի կապակցությամբ ոսկու «հեղինակությունը», որպես միջազգային դրամական ակտիվների առավել կայուն օղակի, է՛լ ավելի բարձրացավ։ Արևմտյան երկրների բանկերի մեծ մասը չէր ցանկանում հրաժարվել ոսկու օգտագործումից նույնիսկ իրենց պարտքերը մարելու դեպքում։ Վալյուտային հակասությունների սրման կապակցությամբ, 1971 թվականին ԱՄՆ-ը ստիպված էր հրաժարվելու ոսկին դոլարի հետ փոխանակելուց՝ իր ոսկու պաշարները պահպանելու նպատակով։ Հետագայում նա ակտիվ քաղաքականություն էր վարում ոսկին լրիվ դուրս մղելու միջազգային հաշվարկներից, մի բան, որ, ըստ նրա, պետք է նպաստեր դոլարի դիրքերի ամրապնդմանը։ ԱՄՆ-ի այդ քաղաքականությունն իր արտացոլումը գտավ 1976 թ. Յամայկայի կոնֆերանսի որոշումներում, որոնց համաձայն ոսկին լրիվին դուրս հանվեց միջազգային հաշվարկային շրջանառությունից, վերացվեց ոսկու պաշտոնական գինը և վալյուտաների ոսկյա պարիտետը, այսինքն՝ միջազգային վալյուտաների փոխհարաբերություն ըստ ոսկու պարունակության։ Ուստի, այժմ էլ ոսկու պաշարները գնահատվում են ոչ թե վալյուտայով, այլ անմիջապես նրա կշռային միավորով (միլիոն ունցիաներով)։

Ոսկու գինը ետպատերազմյան շրջանում ռեկորդային մակարդակի հասավ 1980 թ. հունվարին (850 դոլար)։ Այնուհետև նկատվեց ոսկու գնի անկման միտումը, սակայն նույնիսկ անկման փուլում այն զգալիորեն գերազանցում էր 70-ական թվականների սկզբի և կեսերի մակարդակը։ 1982 թ. հունվարին Նյու Յորքի շուկայում ոսկու գինը տատանվում էր 371-ից 403 դոլարի։ 1982 թ. նոյեմբերից այն նորից սկսեց աճել՝ 1983 թ. փետրվարին հասնելով 503 դոլարի։ Այդ նույն ժամանակահատվածում ոսկու գինը Լոնդոնի շուկայում կազմեց 509 դոլար։ Այս կտրուկ աճը վկայում է այն բանի մասին, որ ոսկու գինը շուկայի կառավարող չափանիշից վերածվում է կառավարվող չա-



փանիշի, և դա առաջարկի և պահանջարկի դինամիկայի մեջ առաջ է բերում որակական փոփոխություններ։

Միջազգային վալյուտային ֆոնդի միջոցառումները ոսկու և կապիտալիստական աշխարհի վալյուտային հարաբերությունների վերաբերյալ չլուծեցին և չէին կարող լուծել այս ասպարեզում եղած հակասությունները, այլ միայն ժամանակավորապես թուլացրին դրանց դրսևորումը։ Այդ հակասությունները դրսևորվում են այն բանում, որ ԱՄՆ-ը չի ցանկանում 1982 թ. Վերսալյան կոնֆերանսի որոշումների համապատասխան ճշգրտել ամերիկյան դոլարի կուրսը և հաշվային դրույքը։

Համաշխարհային կապիտալիստական էկոնոմիկայի ինտեգրացման պայմաններում հաստատագրված պարիտետների մեխանիզմը, որը Բրետոնվուդսյան համակարգի անկյունաքարերից մեկն էր, ակնհայտ հակասության մեջ մտավ կապիտալիստական իրականության հետ։

Ետպատերազմյան վալյուտային համակարգի ճգնաժամը իր գագաթնակետին հասավ 1971 թվականին։ Դոլարները շարունակում էին հեղեղել Արևմտյան Եվրոպան՝ օրըստօրե սպառնալով ամերիկյան ոսկու պաշարներին։ Միայն 1971 թվականի օգոստոսի առաջին կեսին ԱՄՆ-ի ոսկու պաշարները կրճատվեցին 1,42 մլրդ դոլարով, որի հետևանքով ԱՄՆ-ի կառավարությունը օգոստոսի 15-ին պաշտոնապես դադարեցրեց ոսկու փոխանակումը դոլարով։

Կարճաժամկետ կապիտալների չթուլացող ճնշման հետևանքով 1971 թվականի օգոստոսի 21-ին Արևմտյան Եվրոպայի բոլոր երկրները, բացի Ֆրանսիայից, անցան վալյուտաների, այսպես կոչված, «լողացող» կուրսերի։ Շուտով դրանց միացավ նաև Ճապոնիան։ Այսպիսով, այդ կուրսերի համակարգում դրսևորվեց կապիտալիստական երկրների յուրօրինակ արձագանքը ամերիկյան դոլարի արժեզրկման և դրա ինֆլյացիայի նկատմամբ։

Այդ համակարգը թեպետև սկզբից կիրառվեց որպես ժամանակավոր միջոցառում, սակայն հետագայում այն պաշտոնապես օրինականացվեց ՄՎՖ-ի՝ Յամայկայի կոնֆերանսում (1976 թ.)։ Սա նշանակում է, որ 1944 թ. Բրետոն-Վուդսում հիմնադրված կապիտալիզմի վալյուտային համակարգը դադարեց գոյություն ունենալուց։ Սկսած 1973 թ. մարտից՝ գործնականում բոլոր կապիտալիստական երկրներն անցան վալյուտաների նոր համակարգին և, չնայած վերջինիս ժամանակավոր բնույթի վերաբերյալ բոլոր խոստումներին, այն մինչև այժմ էլ մնում է կապիտալիստական երկրների վալյուտային հարաբերությունների հիմքը։ Այս համակարգի մեջ ժամանակավոր լուծում գտան հակասությունները առանձին երկրների ազգային տնտեսությունների և միջազգային մակարդակով դրանց արտադրողական ուժերի հանրացման անհրաժեշտության միջև։

Անցումը վալյուտային կայուն, հաստատագրված կուրսերից դրանց լողացող կուրսերի, իհարկե, չի նշանակում կապիտալիստական պետության տնտեսական դերի որոշակի թուլացում։ Կապիտալիստական պետություններն իրենց տնտեսական գործունեությամբ պարզապես փորձում են ավելի շատ, քան նախկինում, հենվել շուկայական գործոնների հաշվառման վրա, իսկ այդ գործոններից ամենակարևորը տվյալ դեպքում վալյուտային կուրսերի տատանումն է պահանջարկի և առաջարկի ազդեցության տակ (Горбунов С. В., «Валютные курсы при капитализме», М., 1979 г., стр. 147)։

Ճկուն (լողացող) կուրսերն արտացոլում են վալյուտա-վարկային հարաբերությունների ոլորտում պետական-մոնոպոլիստական կարգավորման քաղաքականությունը, որի նպատակն է զրկել իրենց մրցակիցներին որևէ առավելությունից՝ համաշխարհային շուկայում։

Վալյուտաների նոր կուրսի էական առավելություններից մեկն էլ այն է, որ այս միջոցով որոշակի միտումներ են դրսևորվում տվյալ երկրի արտաքին տնտեսական սեկտորում, որոնք համապատասխանում են տնտեսական քաղաքականության ընդհանուր ուղղությանը։ Սակայն, ինչպես պրակտիկան է վկայում, դա միշտ չէ, որ հաջողվում է։ Միևնույն ժամանակ այդ համակարգը թեև որոշակի չափով սահմանափակում է սպեկուլյատիվ կապիտալների

անցանկալի տեղափոխումները, սակայն հաճախ ի վիճակի չի լինում չեզոքացնել դրանք։ Կապիտալիզմի վալյուտային նոր համակարգը, մասնակիորեն վերացնելով որոշ թերություններ, այնուհանդերձ, անկարող է լուծել նյութական արտադրության և փոխանակության պրոցեսում արմատավորված հակասությունները։

1980 թ. երկրորդ կեսից նկատվում է ԱՄՆ-ի դոլարի դիրքերի որոշակի կայունացում մի շարք կապիտալիստական երկրների վալյուտաների նկատմամբ, բացառությամբ ֆունտ ստեռլինգի և ճապոնական իենայի։ 1985 թ. մարտի 1-ի դրությամբ դոլարի կուրսը վերջին 10 տարվա ընթացքում հասավ ամենաբարձր մակարդակի (1 դոլարը, ռուբլու համեմատ, 92 կոպեկ)։ Սակայն դոլարի կուրսի բարձրացումը բնավ չի վկայում ԱՄՆ-ի վալյուտա-ֆինանսական դրության առողջացման մասին։ Այն ավելի շատ դոլարային ակտիվների բացարիկ եկամտաբերության հետևանք էր Արևմտյան Եվրոպայի երկրների արտաքին հաշվարկների ցուցանիշների վատթարացման ընդհանուր ֆոնի վրա, բարձր հաշվային դրույքի պայմաններում։

ԱՄՆ-ի վարչակազմը, բացահայտ անտարբերություն ցուցաբերելով պարտնյորների շահերի նկատմամբ, հրաժարվեց արևմտաեվրոպական թուլացած վալյուտաների կուրսերի պաշտպանման միջոցառումներին մասնակցելուց։ Դրա հետևանքով ծախսերի ամբողջ ծանրությունն ընկավ այդ երկրների վրա։ Վաշինգտոնի վալյուտա-ֆինանսական էգոիստական քաղաքականության հետևանքներից մեկն էլ ֆրանսիական կառավարության 1982 թ. հունիսի որոշումն է՝ եվրոպական վալյուտային միության շրջանակներում ֆրանկի դևալվացիայի վերաբերյալ։

ԱՄՆ-ում պահպանվող բանկային տոկոսի բարձր հաշվային դրույքը առաջացնում է կապիտալների մեծ ներհոսք, դրանով իսկ թուլացնելով Ֆրանսիայի էկոնոմիկան, հանգեցնելով ֆրանկի կուրսի անկման։ Արևմտաեվրոպական երկրների բոլոր փորձերը՝ այս հարցում ազդելու Վաշինգտոնի քաղաքականության վրա, մնացին ապարդյուն։ ԱՄՆ-ը կտրականապես հրաժարվեց իր հաշվային դրույքի իջեցման որևէ պարտավորություն ստանձնելուց։

Այսպիսով, վալյուտաների նոր համակարգի՝ թղթի վրա գեղեցիկ թվացող ակադեմիական մոդելը, որը կոչված էր մեկ հարվածով լուծելու միջազգային վճարային մեխանիզմի բոլոր հակասությունները, ակնհայտորեն արգելակվում է կապիտալիստական իրականության խորդուբորդություններում, ուստի և դոլարի ճգնաժամը բնավ «պատմական հուշ չէ», այլ դաժան իրականություն (Смыслов Д. В., Кризис современной валютной системы капитализма и буржуазная политэкономия, М., 1979 г., стр. 361):

Վալյուտային կուրսերի կարգավորման պրակտիկան վկայում է, որ արդի ժամանակաշրջանում ավելի ու ավելի լայն չափեր են ընդունում կապիտալիստական երկրների կոլեկտիվ միջոցառումները՝ ուղղված վալյուտային կուրսերի կայունության պահպանմանը։

Վալյուտային կուրսերի կարգավորման այդպիսի միացյալ մեխանիզմի մշակման ուղղությամբ կարևոր քայլեր հանդիսացան կապիտալիստական առաջատար երկրների ղեկավարների խորհրդակցությունները Ռամբույեում՝ 1975 թ., Յամայկայում՝ 1976 թ., Վերսալում՝ 1982 թ., Բոննում՝ 1985 թ.։

Սակայն ձեռնարկված միջոցներն ի վիճակի չեղան կանխելու վալյուտային կուրսերի տատանումները։ Եվ բոլոր ջանքերն անզոր գտնվեցին այն անկումների առջև, որ կրեցին իտալական լիրան ու անգլիական ֆունտ ստեռլինգը 1976 թ., բելգիական և ֆրանսիական ֆրանկը՝ 1982 թ.։

Ինչպես վկայում է վերջին տարիների փորձը, վալյուտային կուրսերի միջազգային կարգավորման ուղղությամբ համատեղ որոշումների ընդունումը հաճախ հակասում է առանձին կապիտալիստական երկրների ազգային շահերին։ Անհնար է ապահովել վճարային հաշվեկշիռների համահարթեցում՝ առանց «ապրանքային պատերազմի», որը խարխլում է վալյուտային պրոբլեմների լուծմանն ուղղված համագործակցության արդի միտումները։

Վալյուտաների ներկայիս համակարգը խորացնում է միջիմպերիալիստա-



կան մրցակցության հակասությունները՝ կապված հիմնական կապիտալիստական երկրների վճարային հաշվեկշիռների և վալյուտային կուրսերի ասպարեզում ազգային քաղաքականության ուժեղացման հետ։

Այստեղ տեղին է հիշել Կարլ Մարքսի այն հետևությունը, որ «վճարման բալանսը ընդհանրական ճգնաժամի պահին աննպաստ է ամեն մի ազգի համար, համենայն դեպս՝ առևտրապես զարգացած յուրաքանչյուր ազգի համար...» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մ. 2, Երևան, Պետհրատ, 1949, էջ 31)։

Ֆրանսիայի և ԳՖՀ-ի նախաձեռնությամբ ստեղծվել է եվրոպական վալյուտաների համակարգ, որն սկսել է գործել 1979 թ. մարտ ամսից։ Այդ համակարգի նպատակն է սահմանափակել և վերահսկողության տակ առնել Եվրոպական վալյուտային համակարգի (ԵՎՀ) անդամ երկրների վալյուտային կուրսերի տատանումները։ Այդ համակարգի մեխանիզմի նոր տարրերից մեկը «ԷԿՅՈՒ» վալյուտային միավորն է, որը ինչ-որ չափով նման է արդեն գոյություն ունեցող հատուկ փոխառու միջոցին (ՀՓՄ)։ «ԷԿՅՈՒ»-ի արժեքը հաշվարկվում է եվրոպական տնտեսական համագործակցության մեջ մտնող մասնակից երկրների վալյուտաների «զամբյուղի» հիման վրա։ Առանձին վալյուտաների տատանումները «ԷԿՅՈՒ»-ի կուրսի նկատմամբ չպետք է գերազանցեն ±2,25 տոկոսին։ Միայն Իտալիայի համար, որպես բացառություն, այդ տատանումները թույլատրվում են ±6 տոկոսի սահմաններում։ Այսպիսով, ստեղծվել է միջազգային կոլեկտիվ ֆոնդ՝ 25 մլրդ «ԷԿՅՈՒ» կամ շուրջ 32,5 մլրդ դոլար։ Նախատեսվում է սահմանել անմիջական կապ «ԷԿՅՈՒ»-ի և ոսկու միջև, որը կհանձնվի այդ համագործակցության մեջ մտնող երկրների տնօրինությանը, համատեղ վալյուտա-տնտեսական միջոցառումների համար։ Վերջինիս հաջողությունը պայմանավորված է մասնակից երկրների ոչ միայն զուտ վալյուտային, այլև ներքին տնտեսական քաղաքականության ներդաշնակության աստիճանով։

Վերջին տարիների իրադարձությունները բնութագրվում են նրանով, որ անցում է կատարվում վալյուտային կուրսերի պետական մոնոպոլիստական կարգավորման ավելի ճկուն, լիբերալ մեթոդների, որոնք իրականացվում են պետության խիստ վերահսկողության ներքո։ Դա ոչ միայն չի հակասում պետական մոնոպոլիստական կարգավորմանը, այլև վերջինիս անհրաժեշտ ձևերից մեկն է։

Էկոնոմիկայի մեջ վալյուտային հարաբերությունների ասպարեզում կապիտալիստական պետության միջամտության աճի միտումն իր արտացոլումն է գտնում ինչպես միջազգային վճարամիջոցների կարգավորման ակտիվության բարձրացման, այնպես էլ առանձին երկրների միջպետական կազմակերպությունների ստեղծման և համաձայնությունների կնքման գործում։

Կապիտալիզմի պայմաններում վալյուտային համակարգի գործողության և արտադրողական ուժերի կողմից այդ համակարգին ներկայացվող պահանջների միջև առաջանում են սուր հակասություններ, քանի որ կապիտալիզմի արտադրական հիմքը ենթակա է մշտական փոփոխությունների, այն դեպքում, երբ վալյուտային հարաբերությունների համակարգը, ըստ էության, առավել պահպանողական տարր է։

Արտադրողական ուժերի զարգացման և վալյուտային քարացած մեխանիզմի միջև եղած հակասությունների հետագա սրումը վալյուտային հարաբերությունների համակարգում առաջ է բերում ճգնաժամային միտումների աճ։ Հետևաբար, էկոնոմիկայի վրա պետական կարգավորման ազդեցության արդյունավետությունն առաջին հերթին պայմանավորված է արտադրողական ուժերի զարգացման բնույթով և այդ մեխանիզմի համապատասխանության աստիճանով։

Ժամանակակից կապիտալիզմի պայմաններում ազգային արժեքների անմիջական համադրելիության այդպիսի լայն և միաժամանակ ոչ միատարր, անկայուն բազայի առկայությունը տարբեր երկրների վալյուտաների միջև փոխանակային համամասնությունների տարերային, քաոսային տատանումների աղբյուր է և բացասաբար է անդրադառնում կապիտալիստական եր-

կրների արտաքին տնտեսական գործունեության վրա։ Դրանում ակնհայտորեն նորովի է դրսևորվում կապիտալիզմի հիմնական հակասությունը արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև։

Ցամայկյան համակարգը օրինականացրեց վալյուտային բազմակենտրոնացումը, այսինքն՝ միջազգային ռեզերվային ֆունկցիաների անցումը դոլարից նաև մյուս վալյուտաներին՝ ԳՖՀ-ի մարկին, Ճապոնիայի իենային, շվեցարական ֆրանկին, «ԷԿՅՈՒ»-ին։ Կապիտալիստական վալյուտային համակարգի այդ փոփոխությունը տանում է դեպի միջազգային հաշվարկային միջոցների և լուծարքային ռեսուրսների կազմի դիվերսիֆիկացիայի արագացում։ Ինչպես հաստատում են վերջին տարիների իրադարձությունները, կապիտալիստական երկրների վալյուտա-ֆինանսական ճգնաժամի կարգավորման ուղղությամբ կատարվող միջոցառումները չեն տալիս ցանկալի արդյունք։ Վալյուտային համակարգի «կայունացումը» փաստորեն իրականացվում է շարունակվող ճգնաժամի և նրա հետագա խորացման պայմաններում («Экономические науки», № 4, 1981 г.)։

«Սակայն այսօրվա կապիտալիստական աշխարհում կան նաև այլ միտումներ, այլ քաղաքագետներ, որոնք ավելի ռեալիստորեն են հաշվի առնում միջազգային ասպարեզում տիրող դրությունը» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը, 14—15 հունիսի, «Հայաստան» հրատ., 1983 թ., էջ 27)։

Բուրժուական տնտեսագետները ստիպված են խոստովանել այդ հակասությունները։ «Անհնար է ժխտել,— գրում է ճապոնացի տնտեսագետ Նորիո Սորին,— որ շուկայական և ոչ շուկայական սեկտորների արտասովոր ցիկլը ստագֆլյացիայի հիմնական պատճառն է... Թվում է, այնուամենայնիվ, որ ավելի կարևոր է վերլուծել այն տնտեսական ֆոնը, որտեղ ցիկլը... տանում է դեպի ինֆլյացիա» (Osaka city University, Economic Review № 17, p. 36)։

Ինֆլյացիան, վալյուտային կուրսերի կտրուկ աճը և անկումը, ոսկու գնի անհամաչափ տատանումները է՛լ ավելի են սրում միջպետական հակասությունները։ Միջիմպերիալիստական մրցակցության սրումը ներկայումս տեղի է ունենում այնպիսի պայմաններում, երբ դարաշրջանի գլխավոր հակասությունն է հանդիսանում երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև եղած հակասությունը։

Համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդումն իր արտացոլումն է գտնում նաև վալյուտա-ֆինանսական համակարգում։ Ինչպես նշվեց Վարշավայի պայմանագրի անդամ պետությունների Պրագայի (1983 թ.) քաղաքական դեկլարացիայում, Տնտեսական փոխօգնության երկրների վալյուտա-ֆինանսական հարաբերությունները զարգանում են նոր տիպի միջազգային հարաբերությունների շրջանակներում՝ հիմնված սոցիալիստական պետությունների ինտերնացիոնալ համերաշխության կամավոր, իրավահավասար համագործակցության վրա, որի ձևավորումը հանդիսացավ սոցիալիզմի խոշորագույն նվաճումներից մեկը։

Այդ հարաբերությունների բնույթը որոշվում է այն խնդիրներով, որոնք ծառացած են ՏՓԽ-ի երկրների առջև՝ իրենց ժողովրդական տնտեսության զարգացման տարբեր փուլերում, և այն խնդիրներով, որոնք այդ երկրները միացյալ ուժերով լուծում են իրենց փոխադարձ տնտեսական համագործակցության համակարգի կատարելագործման և սոցիալիստական տնտեսական ինտեգրացման ընթացքում։

Նոր հասարակական հիմքի վրա, արտադրության և ապրանքաշրջանառության ծավալման հետ մեկտեղ, ՏՓԽ-ի բոլոր երկրներում դրամաշրջանառության կայունացման նպատակով անցկացվեցին բանկային և դրամական ռեֆորմներ։ Ստեղծվեց պետական ֆինանսների և վարկի նոր, սոցիալիստական համակարգ, որտեղ մեծ դեր խաղաց ՍՍՀՄ-ը։ Սոցիալիստական շինարարության ուղին թևակոխած երկրները լայնորեն օգտագործեցին արտադրության միջոցների հանրային սեփականության և սոցիալիստական ար-



տադրահարաբերությունների վրա հիմնված սոցիալիզմի ֆինանսական համակարգի ստեղծման և կատարելագործման սովետական փորձը։

Ի հակադրություն սոցիալիզմի՝ կայուն տնտեսական հիմքի վրա գործող վալյուտային համակարգի, կապիտալիստական երկրների վալյուտային համակարգը ենթակա է անընդհատ ճգնաժամերի, հետևաբար, կապիտալիստական վալյուտային համակարգի ժամանակավոր կայունացումն արդի պայմաններում հնարավոր է միայն մասնակի ռեֆորմների իրականացման միջոցով։ Սակայն համաշխարհային կապիտալիստական տնտեսության ներքին պրոբլեմների սրումը ավելի է դժվարացնում վալյուտային ռեֆորմի իրականացումը։ Վալյուտային անկայունության աճը վկայում է կապիտալիզմի միջազգային վալյուտա-ֆինանսական հարաբերությունների համակարգի խոր արատների մասին։ Դրամական հարաբերությունների ոչ մի ռեֆորմ ի վիճակի չէ ապաքինելու կապիտալիստական արտադրաեղանակի ծնունդ հանդիսացող այդ անբուժելի հիվանդությունը։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, էկոնոմիկայի պետական մոնոպոլիստական կարգավորումը չի կարող լուծել կապիտալիզմի վալյուտա-ֆինանսական պրոբլեմները. «Միջոցներ ձեռնարկելով ինֆլյացիայի դեմ, բուրժուական կառավարությունները նպաստում են արտադրության լճացմանը և գործազրկության աճին, աշխատելով կանգնեցնել արտադրության ճգնաժամային անկումը, նրանք է՛լ ավելի են ուժեղացնում ինֆլյացիան» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, Երևան, 1981 թ., էջ 31)։

Իմպերիալիզմի ինչպես ներքին, այնպես էլ միջպետական անհաշտ հակամարտությունների արդյունք հանդիսացող ինֆլյացիայի, տնտեսական անկման, գործազրկության և վճարային հաշվեկշիռների զգալի ճեղքվածքների պայմաններում բուրժուական կառավարությունները ջանքեր են գործադրում կարգավորելու վալյուտային հարաբերությունները։ Սակայն դրանք ի վիճակի չեն կայունացնելու վալյուտա-ֆինանսական համակարգը, քանզի վերջինիս ճգնաժամը կապիտալիզմի բնորոշ արատներից մեկն է՝ միաժամանակ հանդիսանալով նրա ընդհանուր ճգնաժամի օրգանական մասը։

---

# ԳԼՈԲԱԼ ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

**Դ. ՍԱՐԳՍՅԱՆ**
**Երկրաբանահանքաբանական գիտությունների թեկնածու**

ՇՐՋԱԿԱ ՄԻՋԱՎԱՅՐԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ և առողջացումը, բնական ռեսուրսների արդյունավետ օգտագործումը մարդկանց համար կենսական կարևոր նշանակություն ունեն։ Դրանց հաջող լուծման խնդրում ժողովուրդների և կառավարությունների շահագրգռությամբ է պայմանավորված երկկողմ ու բազմակողմ հիմքի վրա միջազգային լայն համագործակցության անհրաժեշտությունը։

Այդ գլոբալ պրոբլեմին հատկապես մեծ ուշադրություն է նվիրվում Սովետական Միությունում և մյուս սոցիալիստական պետություններում։ Մեր երկիրը, օգտվելով տնտեսությունը պլանաչափորեն վարելու՝ սոցիալիստական կարգի ընձեռած հնարավորություններից ու առավելություններից, հետևողականորեն իրականացնում է բնապահպան և բնական ռեսուրսների արդյունավետ օգտագործման կարևոր միջոցառումներ։ Արծարծվող հարցին հատուկ ուշադրություն է նվիրվել ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում։ «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում» ասված է. «Ուժեղացնել բնության, հողի և նրա ընդերքի, մթնոլորտային օդի, ջրամբարների, կենդանական և բուսական աշխարհի պահպանությունը։ Ապահովել բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և վերարտադրությունը»։

Կյանքը բոլոր պետություններից պահանջում է արդյունավետորեն համագործակցել հօգուտ յուրաքանչյուր ժողովրդի և համայն մարդկության առջև ծառացած կոնստրուկտիվ խնդիրների լուծման։ Ուստի և ՍՄԿԿ-ն ու սովետական կառավարությունը մեծ նշանակություն են տալիս շրջակա միջավայրի պահպանության բնագավառում միջազգային համագործակցության հետագա ընդլայնմանն ու խորացմանը։ Այդպիսի համագործակցության համար կայուն հիմք է ծառայում մեր երկրում իրականացվող բնապահպան քաղաքականությունը։ Այն իր արտացոլումն է գտել ՍՍՀՄ սահմանադրության, կուսակցական ու կառավարական մի շարք կարևոր որոշումներում և ծրագրային փաստաթղթերում, որոնցով դրվել են ՍՍՀՄ-ում բնության օգտագործման և շրջակա միջավայրի պահպանության կառավարման համապետական համակարգի ստեղծման հիմքերը։

Այդ դիրեկտիվ ցուցումների հիման վրա ընդունվել են հողի, ջրային ռեսուրսների, մթնոլորտային օդի, ընդերքի, բուսական աշխարհի պահպանության վերաբերյալ ակտեր, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության դինամիկ զարգացման ներդաշնակումը շրջակա միջավայրի պահպանությանն ու բարեփոխմանը, կարգավորում հասարակության ու բնության փոխհարաբերությունները։

Շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման բնագավառում ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության վարած քաղաքականությունը սոցիալիստական հասարակության պայմաններում հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն ապահովելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ զարգացումը, այլև չեզոքացնելու մարդու տնտեսական գործունեության կողմնակի երևույթների բացասական ազդեցությունը բնության և բնակչության առողջության վրա։

Երկրում բնության պահպանության կառավարումն առավել կատարելագործելու և դրա վերաբերյալ ընդունված որոշումների կատարման ընթացքի նկատմամբ վերահսկողությունն ուժեղացնելու նպատակով կազմվել է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահության՝ շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հանձնաժողով։

Շրջակա միջավայրի պահպանության բնագավառի միջազգային համագործակցությունն անանջատ է արդիականության այնպիսի քաղաքական պրոբլեմների կարգավորումից, ինչպիսին են՝ զինաթափումը, քիմիական զենքի արգելումը, բնության ու կլիմայի վրա ներգործելու գեոֆիզիկական նոր միջոցների մշակումը։

Այս առնչությամբ հարկ է հիշեցնել, որ ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 1980 թվականին կայացած 35-րդ նստաշրջանը, Սովետական Միության նախաձեռնությամբ, հավանություն տվեց «Երկրի բնությունը ներկա և գալիք սերունդների համար պահպանելու՝ պետությունների պատմական պատասխանատվության մասին» փաստաթղթին։ Այդտեղ նշված է, որ մեր մոլորակի բնության պահպանությունը, մարդկանց համար բարենպաստ էկոլոգիական կենսապայմանների ապահովումը սերտորեն կապված են միջազգային լարվածության լիցքաթափումը շարունակելու և ամրապնդելու, ինչպես նաև մարդկության կյանքից պատերազմը բացառող պայմաններ ստեղծելու հետ։

ՍՍՀՄ-ի նախաձեռնությամբ վերջին տարիներս ընդունվել են նաև միջազգային կարևոր այլ փաստաթղթեր, որոնք պետությունների ջանքերը մոբիլիզացնում են կանխելու համար այն վնասը, որ երկրի կենսոլորտին կարող են պատճառել սպառազինությունների մրցավազքը, պատերազմի նոր միջոցների ստեղծումն ու փորձարկումը։

Տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության պայմաններում շրջակա միջավայրի պահպանությունը և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը միջազգային համագործակցության կարևորագույն ուղղություններից են, քանի որ շրջակա միջավայրի վրա ներազդող գործոնները իրենց հետևանքներով դուրս են գալիս մեկ պետության սահմանների շրջանակներից։

Ամենից առաջ հարկ է նշել սպառազինությունների մրցավազքը և դրա հետ կապված ծախսերը, որոնց բացասական սոցիալ-տնտեսական հետևանքները լրջորեն խոչընդոտում են հարցի դրական լուծմանը։ Սպառազինությունների մրցավազքը, քիմիական և մանրէաբանական զենքի նորանոր տեսակների ստեղծումը, տիեզերքը ռազմական նպատակներով օգտագործելու պլանները կլանում են մարդկային ու նյութական վիթխարի ռեսուրսներ։ Ընդ որում գիտության ու տեխնիկայի բնագավառներում հատկապես մեծ չափերի են հասնում ռազմական նպատակներին հատկացվող միջոցները։ Այսպես, աշխարհի՝ գիտության բնագավառի աշխատողների 25 տոկոսն զբաղված է ռազմական նպատակներին առնչվող աշխատանքով։

Շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման բնագավառում միջազգային սերտ համագործակցության անհրաժեշտության մասին է խոսվում նաև Եվրոպայի անվտանգությանը և համագործակցությանը նվիրված Հելսինկիի խորհրդակցության (1975 թ.) Եզրափակիչ ակտի հատուկ բաժնում։ Փաստաթղթում նշվում է, որ բնության պահպանությունը և դրա ռեսուրսների արդյունավետ օգտագործումը՝ ի բարօրություն ներկա ու գալիք սերունդների, մեծ նշանակություն ունեն բոլոր երկրների տնտեսական զարգացման համար։ Այդտեղ թվարկված են համագործակցության հիմնական ուղղությունները. այն է՝ վերահսկողություն իրակա-

նացնել մթնոլորտի և ջրի մաքրության, հողերի պահպանության նկատմամբ, բարձրացնել մարդկանց կենսապայմանների և իրականացվող հիմնարար հետազոտությունների մակարդակը, ինչպես հարկն է ուսումնասիրել միջավայրը, կանխատեսել ու գնահատել դրա փոփոխությունները, ձեռնարկել իրավաբանական ու վարչական միջոցներ։

Միջազգային համագործակցության համար կարևոր նշանակություն ունի դրան մասնակից երկրներում բնության պահպանության կառավարման համակարգի առկայությունը։ ՄԱԿ-ի անդամ հանդիսացող հարյուրից ավելի պետություններ ներկայումս իրենց կառավարական մարմինների կառուցվածքում ստեղծել են շրջակա միջավայրի պահպանության կառավարման մասնագիտացված հաստատություններ։ Տարբեր երկրներում տարբեր կերպ են կոչվում դրանք (մինիստրություններ, դեպարտամենտներ, գործակալություններ, կոմիտեներ, խորհուրդներ, վարչություններ, հանձնաժողովներ) և օժտված են տարբեր ֆունկցիաներով։ Սակայն այդ մարմինները հիմնականում տնօրինում են երկրի էկոլոգիական քաղաքականության մշակման ու իրականացման, պետական մարմինների ողջ համակարգի բնապահպան համագործակցության կոորդինացման, բնության պահպանության կանոնների, հրահանգների, դրույթների, ստանդարտների հրատարակման և նման այլ խնդիրներ։ Գիտական հիմնարկությունների հետ պայմանագրեր կնքելու, ֆինանսավորման միջոցով կազմակերպում են գիտական աշխատանքներ, իրականացնում վերահսկողություն բնական միջավայրի վիճակի և բնության օգտագործման օրենսդրության պահանջների կատարման նկատմամբ, պայքար մղում իրավախախտումների դեմ։ Սովետական Միությունն ավելի քան 40 կազմակերպությունների շրջանակներում ակտիվ մասնակցում է բնության պահպանության հարցերի շուրջ միջազգային համագործակցությանը։ Այդպիսի համագործակցությունը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու կանխատեսումների որակը, լուծելու բազմաթիվ գլոբալ էկոլոգիական հարցեր, միասնականացնելու կատարվող դիտարկումների մեթոդիկան, ստանալու անհրաժեշտ գիտատեխնիկական ինֆորմացիա, ամրապնդելու ՍՍՀՄ-ի դիրքերը միջազգային ասպարեզում։

Շրջակա միջավայրի պահպանությունն ու բարեփոխումը, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն ու վերարտադրությունը ՏՓԽ-ի անդամ երկրների բեղմնավոր համագործակցության խնդիրներից են, որի նպատակն է բնական պայմանների և հասարակության պահանջմունքների միջև կայուն հավասարակշռության ապահովումը։ ՏՓԽ-ի անդամ երկրները համաձայնեցված, գիտականորեն հիմնավորված ստրատեգիայի հիման վրա մշակում են այդ բնագավառում համագործակցելու երկարաժամկետ ծրագրեր։ Օրինակ, մշակվել ու կենսագործվում է շրջակա միջավայրի պահպանության և բարելավման լայն ծրագիր, որն ընդգրկում է 14 պրոբլեմների վերաբերող ավելի քան 150 թեմա։

Սոցիալիստական երկրներն ակտիվ մասնակցում են նաև ՄԱԿ-ի հովանու ներքո իրականացվող միջազգային մասշտաբի բնապահպան միջոցառումներին։ Խոսքը վերաբերում է ամենից առաջ ՅՈՒՆԵՍԿՕ-ի շրջանակներում տարբեր երկրների կողմից գործադրվող ջանքերին։ 1971 թվականի նոյեմբերից սկսած՝ իրականացվում է ՅՈՒՆԵՍԿՕ-ի՝ Մարդը և կենսոլորտը միջազգային ծրագիրը, որը կրում է միջճյուղային բնույթ։ Նրա նպատակն է ուսումնասիրել կենսոլորտի և դրա էկոլոգիական շրջանների կառուցվածքն ու այդտեղ տեղի ունեցող պրոցեսները, հետևողականորեն հետազոտել մարդու գործունեության ազդեցությամբ կենսոլորտի կրած փոփոխությունները և մարդկանց վրա դրանց ներգործությունը, մշակել շրջակա միջավայրի որակի գնահատման ցուցանիշներ, ապահովել բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և պահպանության վերաբերյալ գիտելիքների ու անհրաժեշտ ինֆորմացիայի տարածումը։

Առաջնային թեմաների և ուղղությունների առանձնացմամբ ՅՈՒՆԵՍԿՕ-ն ապահովում է հետազոտությունների կոորդինացումը, գիտատեխնիկական



ինֆորմացիայի օպերատիվ փոխանակումը, միջազգային նախագծերի, դասընթացների, խորհրդակցությունների և կոնգրեսների վարկավորումը։ Ներկայումս այդ ծրագրի շրջանակներում իրականացվում է 14 նախագիծ, որոնց մշակմանը մասնակցում, իսկ մի քանիսի իրականացման գործը գլխավորում են սոցիալիստական երկրները։ Այսպես, «Արոտավայրային էկոհամակարգեր», «Ջրային էկոհամակարգեր», «Տունդրային էկոհամակարգեր», «Կենսոլորտային արգելոցներ» և այլ նախագծերի իրականացման գործում առաջատար դեր է խաղում Սովետական Միությունը։

Միջազգային մասշտաբով առաջնային են համարվում արևադարձային անտառներին, արոտավայրերին, կենսոլորտային արգելոցներին, իբրև բնակության միջավայր քաղաքային համակարգերին վերաբերող և ամայացման պրոբլեմների հետ կապված նախագծերը։

ՅՈՒՆԵՍԿՕ-ն առանձնակի ուշադրություն է նվիրում կենսոլորտային արգելոցների միջազգային ցանցի զարգացման նախագծին, որոնք դիտվում են որպես մարդու տնտեսական գործունեության և բնական գլոբալ պրոցեսների ազդեցությամբ շրջակա միջավայրի ու ամբողջ կենսոլորտի վիճակի փոփոխության գնահատման չափանիշներ։

Հաշվի առնելով կենսոլորտային արգելոցների ստեղծման և կառավարման բնագավառում ՍՍՀՄ-ի կուտակած փորձն ու հաջողությունները՝ 1983 թվականի սեպտեմբեր-հոկտեմբերին ՅՈՒՆԵՍԿՕ-ի հովանավորությամբ Մինսկում կայացավ կենսոլորտային արգելոցներին նվիրված առաջին միջազգային կոնգրեսը։ Այստեղ ճշգրտվեցին կենսոլորտային արգելոցների գլոբալ ցանցի զարգացման աշխատանքային սկզբունքները, քննարկվեցին գիտական հետազոտությունների և մոնիտորինգի կազմակերպման հարցերը, ինչպես նաև կենսոլորտային արգելոցների, հատկապես զարգացող երկրների պահպանվող տարածքների հատուկ, մշակութային և տնտեսական ֆունկցիաները։ Համապատասխան կադրերի պատրաստման պրոբլեմի լուծման համար մեծ նշանակություն ունեցավ շրջակա միջավայրի բնագավառի աշխատողների՝ կրթության հարցերին նվիրված միջկառավարական կոնֆերանսը, որը կայացավ Մարդը և կենսոլորտը ծրագրի շրջանակներում, 1979 թվականի հոկտեմբերին, Թբիլիսիում։ Տարբեր տիպի էկոլոգիական համակարգերի գծով Սովետական Միության տարբեր վայրերում կատարվող հետազոտություններն զգալի ներդրում են այդ ծրագրի իրականացման գործում։ Ռեգիոնալ կոմպլեքս հետազոտությունների ապահովման նպատակով ստեղծվել են սույն ծրագրի իրականացման սովետական կոմիտե և նմանօրինակ հանրապետական կոմիտեներ, որոնց շրջանակներում գործում են համապատասխան աշխատանքային խմբեր։ Ծրագրով նախատեսվող հետազոտությունների կազմակերպման գործում կարևոր դեր են խաղում ՏՓԽ անդամ երկրների ազգային կոմիտեների գործունեության կոորդինացմանը նվիրված խորհրդակցությունները։

Բնապահպանական աշխատանքների հիմքում դրված են Գլխավոր ասամբլեայի 27-րդ նստաշրջանի համապատասխան որոշումները և շրջակա միջավայրի պրոբլեմներին նվիրված Ստոկհոլմի կոնֆերանսում (1972 թ. հունիս) ՄԱԿ-ի ընդունած գործողությունների պլանը։

Սովետական Միությունն ակտիվ մասնակցում է ՅՈՒՆԵՊ-ի՝ շրջակա միջավայրի գծով ՄԱԿ-ի ծրագրի իրականացման աշխատանքին։ Երկրում ստեղծվել է ՍՍՀՄ—ՅՈՒՆԵՊ-ի գործերի հանձնաժողով, որը կոորդինացնում է ծրագրին մասնակից սովետական գիտական հիմնարկությունների և առանձին գիտնականների ու մասնագետների գործունեությունը և ուղղություն տալիս դրան։

Արդյունաբերության բուռն զարգացումը և դրա հետ կապված արդյունաբերական արտանետումների ավելացումը, օգտակար հանածոների արդյունահանման մեծածավալ աշխատանքները, որ հանգեցրել են հսկայական տարածքների էրոզիայի ու աղտոտման, բնական և մարդու գործունեության հետևանք հանդիսացող այլ երևույթներ աշխարհը կանգնեցրել են էկոլոգիական համակարգի պահպանության գլոբալ պրոբլեմի լուծման անհրաժեշտության

առաջ։ Այս առնչությամբ շրջակա միջավայրի պահպանության ու վերականգնման, էկոլոգիական համակարգերի փոփոխությունների կանխատեսման պրոբլեմները դարձել են գիտության ամենակարևոր խնդիրները, որոնց լուծումը պահանջում է ակտիվ համագործակցություն նաև էկոլոգիական ինֆորմացիայի փոխանակման բնագավառում։

Գիտատեխնիկական ինֆորմացիայի փոխանակումն առանձնապես մեծ նշանակություն ունի միջճյուղային կոմպլեքս պրոբլեմների լուծման համար, որոնցից են, ամենից առաջ, շրջակա միջավայրի պահպանությունը և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը։ Քանի որ այդ խնդրին վերաբերող տեսական ու գործնական մշակումներ են կատարվում գիտության ու տեխնիկայի բոլոր ճյուղերում, և մշակումների արդյունքները հրապարակվում են տարբեր լեզուներով կամ կուտակվում են աշխարհի բոլոր երկրների բազում հիմնարկություններում, ապա կարևոր նշանակություն են ստանում այն ինֆորմացիոն ծառայություններն ու համակարգերը, որոնք ապահովում են ինֆորմացիայի հավաքումը, մշակումը և ինֆորմացիոն հրատարակությունների, տեղեկագրերի ձևով դրանց մասսայականացումը։

Շրջակա միջավայրի պահպանության հարցերով տարբեր տիպի ինֆորմացիոն համակարգեր են գործում տեղական, ազգային և գլոբալ մակարդակներով։ Գլոբալ մակարդակի առավել զարգացած ու հանրաճանաչ համակարգը շրջակա միջավայրի վերաբերյալ ինֆորմացիայի աղբյուրների միջազգային տեղեկատու համակարգն է՝ ԻՆՖՈՏԵՐՐԱ-ն, որը, Ստոկհոլմի վերը նշված կոնֆերանսի որոշումներին համապատասխան, ստեղծվել է որպես շրջակա միջավայրի գծով ՄԱԿ-ի ծրագրի բաղկացուցիչ մաս։

ՍՍՀՄ-ում ԻՆՖՈՏԵՐՐԱ-ի գծով ծավալված աշխատանքների նպատակն է հասնել այն բանին, որ սովետական գիտնականների ու մասնագետների համար այն դառնա շրջակա միջավայրի վերաբերյալ ինֆորմացիա ստանալու կարևոր աղբյուր, նպաստի այդ բնագավառում ձեռք բերված սովետական առաջավոր փորձի տարածմանը և զարգացող երկրներում շրջակա միջավայրի ինֆորմացիոն ծառայությունների ստեղծմանը։

Շրջակա միջավայրի պրոբլեմների ուսումնասիրման առումով աշխույժ համագործակցություն է իրականացվում ՄԱԿ-ի Եվրոպական տնտեսական հանձնաժողովի շրջանակներում (ԵՏՀ)։ Ընդսմին Հելսինկիի խորհրդակցության Եզրափակիչ ակտի ստորագրումից հետո այդ հանձնաժողովի գործունեությունն ավելի լայն թափ ստացավ։ Համաեվրոպական խորհրդակցության որոշումները դարձան բնության պահպանության բնագավառում եվրոպական երկրների, ԱՄՆ-ի և Կանադայի՝ գլոբալ նշանակություն ունեցող համագործակցության հիմքը։

Բնապահպան միջազգային համագործակցության արդյունավետության բարձրացման անհրաժեշտ պայմանը բոլոր ժողովուրդների ակտիվ գործունեությունն է հանուն մարդկության հիմնական գլոբալ պրոբլեմի՝ աշխարհի խաղաղության պահպանության և, առաջին հերթին, սպառազինությունների մրցավազքի դադարեցման։ Սպառազինությունների մրցավազքին ծառայեցվող նյութական, ֆինանսական, աշխատանքային, ինտելեկտուալ և բնական հըսկայական ռեսուրսների ազատումը կարագացներ մյուս գլոբալ պրոբլեմների, առաջին հերթին, էկոլոգիական պրոբլեմի լուծումը և նոր հորիզոններ կբացեր միջազգային լայն համագործակցության համար։

Վերը նշվածը անմիջական առնչություն ունի նաև Հայաստանի շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմի հետ, քանի որ դրա ճիշտ լուծմամբ են զգալիորեն պայմանավորված հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը, մարդկանց բարեկեցությունն ու առողջությունը։ Եվ պատահական չէ, որ հանրապետությունում ընդունվել են բնության և բնական ռեսուրսների պահպանության մի շարք դեկրետներ, օրենքներ, որոնցից հատկապես հիշարժան է 1958 թվականի մայիսի 14-ին հանրապետության Գերագույն սովետի ընդունած «Հայկական ՍՍՀ բնության պահպանության մասին» օրենքը, որը մեծապես կնպաստի ռեգիոնի բնական ռեսուրսների պահպանությանն ու ռացիոնալ օգտագործմանը։



Հայաստանի կոմկուսի XXVII համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ կարևոր տեղ էին գրավում նաև բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերը։ Նշվեց, որ այդ հարցերի լուծման նկատմամբ կոմպլեքս մոտեցումը միայն կարող է հանգեցնել շրջակա միջավայրի բարենպաստ փոփոխությունների։

Այդ ցուցումներին համապատասխան, ծրագրանպատակային մեթոդի հիման վրա, մշակվել է հանրապետության շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կոմպլեքս ծրագիր։ Վերջին 10—15 տարիներին հանրապետությունում սկսել են զարգանալ հիմնականում տեխնիկական այն ճյուղերը, որոնք այնքան էլ չեն աղտոտում շրջակա միջավայրը — մեքենաշինությունը, սարքաշինությունը, ռադիոէլեկտրոնային, էլեկտրատեխնիկական և հաստոցագործիքաշինական արդյունաբերությունը։

Մեր ողջ հանրապետության, նրա մայրաքաղաքի զարգացման նոր փուլ է նշանավորում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը։ Սովետական Հայաստանի, նրա մայրաքաղաքի նկատմամբ կուսակցության ու կառավարության հոգատարության մի նոր դրսևորում է պատմական այդ փաստաթուղթը, որը մեր հանրապետության բոլոր աշխատավորները, երևանցիները ընդունեցին մեծ ոգևորությամբ՝ տոգորվելով արարելու, ստեղծագործական ողջ ուժերը հայրենի երկրի ծաղկմանն ու բարգավաճմանը նվիրաբերելու բուռն ձգտումով։ Այդ որոշմամբ կարևոր գործնական միջոցառումներ են նախատեսված նաև Երևան քաղաքի շրջակա միջավայրի պահպանման, օդային ավազանի մաքրության, սանիտարական վիճակի հետ առնչվող հարցերի լուծման համար։

Նշելով, որ այս ասպարեզում վերջին տարիներին քիչ բան չի արված, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը հանրապետական կուսակցական ակտիվի՝ այս տարվա ապրիլին տեղի ունեցած ժողովում ասաց. «Սակայն ձեռնարկված միջոցառումները բավարար չեն։ Մայրաքաղաքի շրջակա միջավայրի մաքրության ապահովման խնդիրներին արմատական լուծում տալու նպատակով որոշմամբ հանձնարարված է՝ միութենական մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների այն ձեռնարկություններում, որոնց արտանետումներն աղտոտում են Երևանի օդային ավազանը, անցնել այլ հումքի և վառելիքի օգտագործման, ինչպես նաև փոխել արտադրանքի պրոֆիլը և կամ դրանք առաջիկա տարիներին դուրս բերել մայրաքաղաքի տարածքից»։

Մարդու տնտեսական գործունեության բերումով առաջիկայում ավելի կուժեղանա նրա ազդեցությունը շրջակա միջավայրի վրա։ Ուստի և անհրաժեշտ է կանխատեսել մեր լեռնաշխարհի բնության վերահաս փոփոխությունները, տնտեսական զարգացման էկոլոգիական հետևանքները՝ բնական ռեսուրսների պահպանման ու ռացիոնալ օգտագործման, շրջակա միջավայրի բարվոքման և մարդու կյանքի ու գործունեության համար առավել բարենպաստ պայմանների ստեղծման նպատակով։ Համակողմանիորեն հաշվի առնելով հանրապետության պայմանները՝ հարկավոր է ավելի կատարելագործել շրջակա միջավայրի պահպանության բնագավառում կուտակված գիտատեխնիկական ինֆորմացիայի պրոպագանդումը, ուժեղացնել դրա ներգործությունը բնապահպան միջոցառումների կենսագործման վրա։

---

## Գրախոսություն և քննադատություն

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆ ԱՄԲՈՂՋԱՑՆՈՂ ՀԱՏՈՐԸ*

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՍՏԵՂԾԱԾ հոգևոր մշակույթի գանձարանում իր ուրույն տեղն ունի պատմագրությունը։ Ծագելով դեռևս Մաշտոցի ժամանակներից՝ այն անցել է դարավոր, ելևէջային, բայց հարուստ ու բովանդակալից ուղի, իր ճանապարհին թողնելով ուղենիշային փայլուն կոթողներ, ընդհանրացնող աշխատություններ։ Արդեն իսկ V դարում, որպես հայ պատմագրական մտքի նվաճումների արտահայտիչ, հանդես եկավ Մովսես Խորենացին, որի **Հայոց պատմությունը** հեղինակին ոչ միայն շնորհեց «պատմահայր», «քերթողահայր» մեծաշուք տիտղոսները, այլև եղավ հայ ժողովրդի ամբողջական պատմության առաջին ու հույժ հաջողակ շարադրանքը։

Բովանդակելով հայ ժողովրդի պատմությունը, սկսած առասպելախառն ծննդաբանությունից մինչև Արշակունյաց դինաստիայի անկումը, **Հայոց պատմությունը** դարձավ այն քերթության մատյանը, որով սովորում և ազգային, հայրենասիրական ու քաղաքացիականության ոգով էին դաստիարակվում հետագա սերունդները, որին ընդօրինակում և հաճախ նրա նմանությամբ ստեղծում էին իրենց պատմական երկերը Խորենացուց հետո եկող մեր հայ պատմիչները, տարեգիրներն ու ժամանակագիրները։

Հայ պատմագրությունն արաբների տիրապետության օրերին ապրում է նահանջի մի ժամանակաշրջան, որը, սակայն, Բագրատունիների դինաստիայի հաստատմամբ փոխարինվում է ծաղկման շրջանով, իրենով արտացոլելով ժամանակի քաղաքական հիմնական՝ միասնության և երկիրը մեկ պետության մեջ միավորելու առաջավոր գաղափարը։ Այս ընթացքում եկեղեցական պատմագիրների կողքին հանդես են գալիս նաև աշխարհիկ հեղինակներ։ Բայց, քանի որ Բագրատունիների, ապա նաև Կիլիկիայում հայկական թագավորության վերացումից հետո երկար ժամանակ հայ ժողովուրդը զրկված էր ինքնուրույնությունից և անկախ գոյատևելու հնարավորությունից, հայ պատմագրական միտքն էլ, չնայած իր առանձին բռնկումներին, XIV դարից սկսած ապրում է անկումային շրջան։

Հայ ժողովրդի վերստին արթնացող ազգային ինքնագիտակցությունը XVII—XVIII դարերում մեր հոգևոր մշակույթը հարստացրեց նոր, մինչ այդ աննախընթաց կուլտուրական արժույթներով, որոնցից են՝ Մխիթար Սեբաստացու նախաձեռնությամբ ստեղծված **Բառգիրք Հայկազեան լեզուի** երկհատոր բառարանը (Վենետիկ, 1749—1769 թթ.), որով փաստորեն հայ բառարանագիտության ու հայերեն գիտական տերմինաբանության հիմքը դրվեց, հայ մամուլն սկզբնավորող «Ազդարար» առաջին պարբերականը (Մադրաս, 1794 թ.), Մ. Չամչյանի **Հայոց պատմությունը** (Վենետիկ, 1784—1786 թթ.) և գիտական, հասարակական ու քաղաքական կարևորություն ունեցող այլ գործեր։

Հայ պատմագրության համար հատկապես նշանակալից էր Մ. Չամչյանի պատմագիտական գործունեությունը։ Բեղմնավոր գիտնականի այդ կարգի աշխատությունների շարքում առանձնահատուկ տեղ ունի վեց գրքով, եռահատոր **Հայոց պատմությունը**, որ գրված է հայ պատմիչների բազմաթիվ ձեռագրերի քննական բաղդատության ու տվյալների գիտական վերլուծության, բազում վավերագրերի, հիշատակարանների, մեծաքանակ ու տարալեզու սկզբնաղբյուրների ու եվրոպացի գիտնականների աշխատությունների լայն օգտագործման հիման վրա և ընդգրկում է «պատմութիւն Հայոց ի սկզբանէ աշխարհի մինչև ցամ տեառն 1784» թվականը։ Նյութի ընդգրկմամբ, ծավալով, արծարծված հարցերով ու նոր՝ կղերաֆեոդալական աշխարհայացքով **Հայոց պատմությունը** նշանավորեց հայ նոր պատմագրության սկիզբը։ Հանդիսանալով ողջ միջնադարյան պատմագիտական մտքի արդյունք, այն առաջին ամբողջական աշխատությունն էր, առաջին ընդհանրացնող գործը հայ նոր գիտական պատմագրության շեմին։

Մ. Չամչյանի պատմահայեցողությունը դեռ տիրապետում էր հայ պատմագիտության ասպարեզում, երբ բուրժուական հարաբերությունների ձևավորումը XIX դարի երկրորդ կեսին ու պատմական օժանդակ գիտությունների նվաճումները հանգեցրին հնի՝ կղերաֆեոդալական ու նորի՝ բուրժուական պատմագիտության ընդհարմանը, որն ավարտվեց վերջինիս հաղթանակով։ Հայ բուրժուական պատմագիտությունը, զգալի գործ կատարելով նյութի կուտակման, հայ ժողովրդի պատմության առանձին պրոբլեմների մշակման ու լուսաբանման ասպարեզում, նոր զարկ տվեց պատմագիտության վերելքին։

Անցյալի պատմագիտական ժառանգությունն ընդունեցին, որակական խոր փոփոխությունների ենթարկելով զարգացրին ու գիտական ամուր հիմքերի վրա դրեցին սովետահայ մարքսիստ պատմաբանները, որոնց առաջին գործը եղավ պատմագիտության մեջ մարքս-լենինյան մեթոդաբանության արմատավորումը։ Պայքարելով հասարակության զարգացման մեջ ժողովրդի դերի, դասակարգերի գոյության ու նրանց միջև եղած հակամարտության անտեսման բուրժուական պատմագրության աշխարհայեցողության դեմ, երիտասարդ սովետահայ պատմագրությունն ամուր հող նախապատրաստեց հայ մարքսիստական պատմագրության համար։ Հաղթահարելով մեթոդաբանական ու տեսական շատ խոչընդոտներ, անցնելով լուրջ դժվարությունների միջով, անցյալի հարուստ պատմական ժառանգության հիման վրա սովետահայ պատմագրությունը հասել է էական հաջողությունների և, հանդիսանալով սովետական պատմագրության անկապտելի մասը, նրա առաջավոր ջոկատներից մեկը, համաքայլ է ընթանում նրա հետ։

Ազգային պետականության վերականգնմամբ, հայերենի՝ պետական լեզվի վերածմամբ, մշակույթի ու գիտության զարգացմամբ խթանված հայ պատմագրությունն ապրում է ստեղծագործական վերելքի ժամանակաշրջան։ Այսպիսի պայմաններում հայ հասարակական մտքի առջև իր ողջ կարևորությամբ ծառացավ հայ ժողովրդի ընդհանուր ու ամբողջական պատմությունն ունենալու անհրաժեշտությունը։ Հարկ եղավ ստեղծելու անցյալի ամբողջ ժառանգության քննադատական վերլուծությամբ, փաստական հարուստ նյութերի ըստ ամենայնի օգտագործմամբ, հայ բազմադարյան պատմագրության նվաճումներն ամփոփող, մարքս-լենինյան մեթոդաբանության դիրքերից բխող մի ամբողջական գործ, որն ընդգրկեր հայ ժողովրդի պատմությունը հնագույն շրջանից մինչև մեր օրերը։ Հույժ պատասխանատու այդ գործը հանձնարարվեց ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտին։ Որոշվեց ութ ստվարածավալ հատորներով, ժամանակակից պատմագիտության նվաճումների հիման վրա տալ հայ ժողովրդի համապարփակ պատմությունը։ 1967—1981 թթ. ընթացքում լույս տեսան հայ ժողովրդի պատմության յոթ հատորները։ Եվ ահա ՀՍՍՀ ԳԱ հրատարակչությունը լույս ընծայեց հայ ժողովրդի պատմության այդ բազմահատորյակի երկրորդ հատորը ևս, որով և ամբողջացավ մեր ժողովրդի անցյալի պատմությունը ներկայացնող ութհատորյակը։ Այժմ արդեն մեր հասարակայնությունն իր տրամադրության տակ ունի հայ ժողովրդի ամբողջական ու ամփոփ պատմությունը հնագույն շրջանից մինչև 1965 թվականը։

Հայ պատմագիտության մեջ դարակազմիկ նվաճում է այս, երախտագիտության արժանի մի գործ, որն իրականացրեց ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտը։

Նոր հատորի լույսընծայումը հաճելի զուգադիպությամբ համընկավ նաև Մ. Չամչյանի **Հայոց պատմության** 200-ամյա տարելիցին, այդպիսով խորհրդանշելով հայ պատմագրության մեծագույն հաջողությունը մեր ժողովրդի ամբողջական պատմությունն ստեղծելու գործում։

Երկրորդ հատորը՝ **Հայաստանը վաղ ֆեոդալիզմի ժամանակաշրջանում** խորագրով, ընդգրկում է III—IX դարերի պատմությունը և արտացոլում Հայաստանում

* *Հայ ժողովրդի պատմություն, հատոր II (հատորի խմբագրություն՝ Երեմյան Ս. Տ. (պատ. խմբագիր), Առաքելյան Բ. Ն. (պատ. խմբագիր), Արևշատյան Ս. Ս., Բարթիկյան Հ. Մ., Դանիելյան Է. Լ., Տեր-Ղևոնդյան Ա. Ն.), ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1984 թ.։*

ֆեոդալական հարաբերությունների գոյավորման, հաստատման ու դրսևորման ձևերը: Գրքին կից պատմական գունավոր վեց քարտեզները ու ըստ **Աշխարհացույց**-ի վերականգնված գլոբուսը ներկայացնում են ժամանակաշրջանի քաղաքական-վարչական վիճակը: Նշված ժամանակաշրջանի քաղաքական պատմության հետ մեկտեղ լուսաբանվում են նաև կրոնական քողով շղարշված դասակարգային պայքարը իր տարբեր դրսևորումներով, հայ ժողովրդի ազատագրական կռիվները օտար նվաճողների դեմ, արծարծվում են վաղ ֆեոդալիզմի մշակույթի հարցերը:

Հատորը, որի պատրաստմանը մասնակցել են հանրապետության շատ անվանի գիտնականներ, ստեղծված է հայերեն, հունարեն, պահլավերեն, ասորերեն, արաբերեն ու վրացերեն մեծ թվով սկզբնաղբյուրների հիման վրա: Լայն չափով օգտագործված են հնագիտական նյութը, վիմագրական ու դրամագիտական տվյալներ, մեծաքանակ, հատկապես նոր ու նորագույն ուսումնասիրություններ: Այս ամենով պայմանավորված՝ հատորը բոլորովին նոր խոսք է սովետահայ պատմագրության մեջ:

Հատորի մեթոդաբանական հիմքը մարքս-լենինյան ուսմունքն է, ժողովրդի՝ որպես պատմության կերտողի որոշիչ դերի վերհանումը. այն կառուցված է ճշգրիտ գիտական պարբերացման հիման վրա, բաղկացած է առաջաբանից, չորս բաժիններից, ժամանակագրական ու մատենագիտական տեղեկատուներից, անձնանունների և տեղանունների ցանկերից:

Հատորի պատասխանատու խմբագիրներն են ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Ս. Տ. Երեմյանն ու Բ. Ն. Առաքելյանը: Ս. Տ. Երեմյանը միաժամանակ հատորի ծավալուն առաջաբանի, ամբողջ առաջին բաժնի և երկրորդ բաժնի մեծ մասի, քարտեզների ու վերականգնված գլոբուսի հեղինակն է: Հատորի խմբագրման գործում ջանադիր ու արդյունավետ աշխատանք է կատարել Բ. Ն. Առաքելյանը:

Հատորում, ըստ բաժինների, լուսաբանվում են Հայաստանի քաղաքական վիճակը ֆեոդալական հարաբերությունների ձևավորման ժամանակաշրջանում, Արշակունիների ժամանակ ու դրանից հետո, հայ ժողովրդի պայքարը Սասանյան Իրանի և Բյուզանդական կայսրության դեմ, Հայաստանում արաբական տիրապետության հաստատման ու երկրի քաղաքական, սոցիալ-տնտեսական կյանքի վրա նրա ունեցած խիստ բացասական հետևանքների և իրենց անկախության համար հայ ժողովրդի մղած համառ ու երկարատև ազատագրական պայքարի պատմությունը:

Պարզորոշ ու հստակ ցույց են տրված Առաջավոր Ասիայում մ. թ. III դարում հին աշխարհի տնտեսական ու քաղաքական ճգնաժամի իրավիճակում տեղի ունեցող պատմական խոշոր իրադարձությունները, որոնք պայմանավորեցին նախկին հզոր պետություններից մեկի՝ Պարթևական թագավորության անկումը և Սասանյանների հաստատմամբ՝ Իրանի վերելքը, նոր քաղաքական իրադրությունում Հայաստանի դրությունը, նրա քաղաքական կողմնորոշումը դեպի Հռոմեական կայսրությունը: Հայ ժողովրդի պատմության այդ շրջանը՝ III դարը, մեր պատմագրության մեջ միշտ եղել է նրա «պատմական անցյալի ամենամութ շրջանը» (Հ. Մանանդյան, **Երկեր**, հ. Բ, Երևան, 1978, էջ 54), որը պատշաճորեն լուսաբանվում է ներկա հատորում: Հայ ժողովրդի պատմության անցքերում բոլորովին նոր են Արտավազդ Ե հայոց թագավորին (253—261 թթ.) ու նրա ժամանակաշրջանին նվիրված էջերը: Համոզիչ հիմնավորվածությամբ ապացուցվում է Արտավազդ Ե-ի Արշակունի լինելու հանգամանքը, որը պատմագրության մեջ սուր բանավեճերի առիթ է հանդիսացել, ցույց տրվել, որ, չնայած Արտավազդ Ե-ն գահ է բարձրացել Շապուհ Ա-ի կողմից, բայց վարել է ինքնուրույն ու Մեծ Հայքի շահերից բխող քաղաքականություն, որը և նրա սպանության պատճառ է դարձել: Նրա սպանությունից հետո է, որ Շապուհը լիակատար տեր է դառնում Հայաստանին: Եվ այս ամենը ներկայացվում է ոչ թե Հայաստանի հարևան երկրների պատմությունից կտրված, այլ նրա հետ սերտ կապի մեջ, Առաջավոր Ասիայում տիրող միջազգային հարաբերությունների հստակ վերլուծման հետ, որով և լիարժեք պատկերացում է ստեղծվում միջազգային այն հարաբերությունների մասին, որոնցում ընթանում է հայ ժողովրդի պատմությունը: Միջազգային հարաբերությունների հիմնապատճառի վրա առավել ցայտուն է երևում Սասանյան Իրանի ու Հռոմեական կայսրության երկդիմի քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ, վերջինիս քաղաքական իրավիճակը Արշակ Բ-ի օրոք, քաղաքական կողմնորոշման հարցում նրա երկընտրանքային վիճակն ու տատանումները: Այդ արտաքին քաղաքական հանգամանքները և ֆեոդալական հասարակարգին հատուկ տնտեսական ու քաղաքական մասնատվածությունն էլ համարվում են Արշակունյաց թագավորության կործանման պատճառը: Ընդհանրապես հատորում պատմական իրադարձությունները, դինաստիական, քաղաքական ու այլ փոփոխություններ պատճառաբանված են սոցիալական ու քաղաքական ներհակություններով:

Արշակունիների թագավորության կործանումից հետո Հայաստանում տնտեսական ու քաղաքական իշխանությունն անցնում է նախարարներին, և երկիրն այդ շրջանում հանդես է գալիս որպես առանձին նախարարների մանր ու խոշոր տիրույթների ամբողջություն: Ֆեոդալական հարաբերությունների զարգացմանը զուգընթաց նախարարական տիրույթները վերածվում են ավելի ու ավելի մանր քաղաքական միավորների: Յուրաքանչյուր նախարար՝ «տէր», իր տիրույթի սահմաններում հանդես էր գալիս հանրային-իրավական իշխանությամբ, բայց հաճախ քաղաքական իրադրությունների թելադրանքով միավորվում էին և համատեղ դիմագրավում թե՛ Պարսկաստանի և թե Բյուզանդիայի ոտնձգություններին: Այդպես եղավ V դարում հայ ժողովրդի ազատագրական պատերազմների ժամանակ, որոնք այնպես գունեղ, վառ ու հայրենասիրական մեծ պաթոսով են նկարագրված հատորում: 450—451, 482—484 թթ. ժողովրդական ապստամբություններին նվիրված հատվածներում ցայտուն արտահայտչականությամբ են դրսևորված հայ ժողովրդի ազատասիրական ոգին, հայրենիքի ազատության համար նահատակվելու նրանց պատրաստակամությունը: Ընթերցողը սիրով ու համակրանքով է տոգորվում հայրենիքի փրկության համար ոտքի ելած անձնվեր մարտիկների ու նրանց ռազմական առաջնորդներ Վարդան ու Վահան Մամիկոնյանների նկատմամբ, նողկանքի ու ատելության զգացումով՝ վախկոտների, թուլամորթների, դավաճանների հանդեպ:

Արշակունիների անկումը Բյուզանդական Հայաստանում ավելի շուտ տեղի ունեցավ, քան Պարսկաստանում: Արդեն Արշակ Գ-ի մահից հետո այստեղ այլևս թագավորներ չեն նշանակվում, ամբողջ երկրամասն ընկնում են կառավարել կայսեր կողմից նշանակված կառավարիչները, որոնք կոչվում էին կոմեսներ: Այսուհանդերձ, սկզբնական շրջանում այստեղ ևս պահպանվում է նախարարական կարգը, որը երկրին բերում էր ինքնուրույնություն ու անկախություն: Բայց շուտով կայսր Հուստինիանոս Ա-ի (527—565 թթ.) ձեռնարկած վարչաքաղաքական, ռազմական ու օրենսդրական մի շարք միջոցներ Արևմտյան Հայաստանում վերացրին այդ կարգը և դրա հետ մեկտեղ նաև երկրամասի ինքնուրույնությունն ու անկախությունը: Պատահական չէ, որ Հուստինիանոսի միջոցառումներին հայ ժողովրդի այդ հատվածը ևս պատասխանեց զանգվածային ապստամբություններով:

VII դարում սկսվում են արաբական արշավանքները դեպի Հայաստան: Հայ ժողովրդի առջև կրկին ծառանում է գոյապահպանման խնդիրը: Այդ օրհասական պահին հայ ժողովուրդը նորից առաջ է քաշում իր քաղաքական ու ռազմական առաջնորդին՝ հանձին անխոնջ սպարապետ Թեոդորոս Ռշտունու: Անցնելով երկրի ընդդիմադիր ուժերի գլուխ՝ հայոց սպարապետը ռազմական ու դիվանագիտական հմուտ գործողություններով ո՛չ միայն կարողանում է դիմակայել արաբներին, այլև վերականգնել Հայաստանի ներքին քաղաքական ինքնավարությունը: Նրա սերունդներին հաջողվում է նույնիսկ ժամանակավորապես վերամիավորել երկիրը: Սակայն շուտով՝ VIII դարի սկզբին, Հայաստանում հաստատվում է արաբների տիրապետությունը: Վերջնականապես իրենց ենթարկելով Հայաստանը՝ արաբները սկզբից իսկ որդեգրում են հայ ավագանու և նրա զինված ուժերի ֆիզիկական ոչնչացման քաղաքականությունը: Վերջ է տրվում տիրապետության նախարարական համակարգին, Հայաստանը դառնում է Արմինիա մեծ նահանգի մասերից մեկը: Արգելակվում է քաղաքական, տնտեսական ու մշակութային զարգացումը, կրճատվում նախարարների թիվը: Օտար երկրներում ապաստան գտնելու հույսով շատերը հեռանում են երկրից:

Ռազմաստրատեգիական կարևոր շրջաններից վտարվում են տեղի բնակիչները և փոխարինվում արաբական տարրով: Տեղի էր ունենում հայ ժողովրդի ամենամեծ ողբերգություններից մեկը. տեղական հայ ազգաբնակչությունը վերանում էր, փոխվում էր Հայաստանի ազգային դեմքը: Արաբական տիրապետության ողջ շրջանը հատորում նկարագրված է ցնցող գույներով:

Մարքս-լենինյան մեթոդաբանությունից ելնելով՝ հատորում լուսաբանվում են սովետական պատմագրության համար կարևոր նշանակություն ունեցող սոցիալ-տնտեսական զարգացման հիմնական հարցեր:

Հին աշխարհից միջնադարին անցնելու ժամանակաշրջանում (III—V դդ.) հայկական հասարակությունը զարգացած դասակարգային մի հանրություն էր, որի ընդերքում արդեն քայքայվում էին ստրկատիրական և ձևավորվում ֆեոդալական հարաբերությունները: Սոցիալական կացութաձևերի մարքսիստական ըմբռնման հիման վրա որոշակի սահմանագիծ է անցկացվել և միջին դարերի Հայաստանի սոցիալ-տնտեսական պատմության մեջ, քննարկվել են ֆեոդալական հասարակարգի անցողիկ ձևերն ու յուրահատկությունները, խոշոր ֆեոդալական հողատիրության աճը: Այստեղ գիտականորեն հաստատվել է ֆեոդալական դարաշրջանի պատմության պարբերացումը, ըստ որի մ. թ. III—IX դդ. հանդիսանում են նրա վաղ շրջանը: Ի դեպ, այդ շրջանը ևս չի դիտվում որպես մի համասեռ փուլ ֆեոդալական հասարակարգում, այլ իր հերթին բաժանվում է առանձին շրջանների՝ իրենց բնորոշ կողմերով ու առանձնահատկություններով: Համակողմանի արտացոլված է նյութական բարիքների անմիջական արտադրողների սոցիալական ու դասային ծանր վիճակը, համայնքի ներսում տեղի ունեցող սոցիալական շերտավորումը, ներկայացված են սեփականության ձևերը, ֆեոդալական պետության կառավարման համակարգն ու գործակալությունները: Քննության են առնված Հայաստանի քաղաքների, քաղաքային բնակչության, արհեստների ու առևտրի հարցերը, դասակարգային հակասությունների սրումն ու աղանդավորական շարժումների պատմությունը, ցույց է տրված դրանց ծագման սոցիալական հիմքը: Հատորում խոսվում է քրիստոնեության՝ պետական կրոնի աստիճանի բարձրանալու մասին, այն բնորոշվում է որպես ֆեոդալական հասարակարգի գաղափարախոսություն, իսկ նրա հաստատությունը՝ եկեղեցին, իբրև նոր իրավակարգի գաղափարախոս ու ջատագով, ֆեոդալների շահերի պաշտպան, ֆեոդալիզմի ամրապնդման միջոց: Միաժամանակ վեր է հանված քրիստոնեության դերը որպես գաղափարական զենք օտար նվաճողների ու, հատկապես, սասանյանների դեմ մղվող ազատագրական մարտերում:

Ֆեոդալական հարաբերությունների հաստատման շրջանին հաջորդում է քաղաքական իշխանության ու տնտեսավարման նախարարական շրջանը: Նախարարների տիրապետության ընթացքում Հայաստանում ֆեոդալական շահագործումը կրում է խառը բնույթ: Հայ գյուղացին ենթարկվում է կրկնակի շահագործման՝ մի կողմից սասանյանների, մյուս կողմից սեփական ֆեոդալների՝ նախարարների ու հոգևորականության կողմից: Պատահական չէ, որ այդ ամբողջ ժամանակաշրջանը կամ V—VII դդ. պատմությունը լի է գյուղացիական ելույթներով ո՛չ միայն պարսկական ու բյուզանդական, այլև սեփական կեղեքիչների դեմ:

Արաբական տիրապետությունը, որ Հայաստանում հաստատվել է VIII դարում, իր ծանր թաթով իջավ նաև երկրի տնտեսական կյանքի վրա: Այն մի ամբողջ հարյուրամյակ կասեցրեց ֆեոդալական հարաբերությունների զարգացման պրոցեսը: Գյուղացին, շինականը շահագործվում էին ամենադաժան, գրեթե ստրկական ձևով: Սահմանվեցին հարկերի նոր տեսակներ: Լայնորեն տարածվեց խալիֆայությանը բնորոշ շահագործման ձևը՝ կիսարարական վարձակալությունը, որը լայնորեն լուսաբանված է հատորում: Այստեղ ակնառու ցույց է տրված արաբական շրջանում Հայաստանի տնտեսական կյանքում նոր երևույթի՝ կոմենդացիայի ինստիտուտի երևան գալը, որի պայմաններում տնտեսապես թույլ ու սակավազոր գյուղացին ձգտում էր ձեռք բերել որևէ զորեղ հովանավորի աջակցությունը, սակայն ժամանակի ընթացքում այդ հովանավորությունը փոխարինվում էր կախվածությամբ ու ենթարկվածությամբ: Հովանավորություն ըստանալու այս ձևը տարածվում է ո՛չ միայն գյուղացիների շրջանում: Այն ընդգրկում է նույնիսկ ավագանուն: Արաբական այդ դաժան քաղաքականության դեմ էին ուղղված հայ ժողովրդի 747—750, 774—775, 851—853 թթ. խոշոր ապստամբությունները, որոնք արտաքին մի շարք քաղաքական հանգամանքների հետ մեկտեղ պայմանավորում են խալիֆայության քայքայումն ու անկումը: Որպես այդ պայքարի արգասիք, հանձին Բագրատունիների թագավորության, Հայաստանը վերականգնեց իր կորցրած պետականությունը:

Հայաստանը թևակոխում է իր զարգացման նոր ժամանակաշրջանը՝ զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանը:

Հատորում մեծ տեղ է հատկացված նաև պավլիկյանների սոցիալական ուսմունքի պատմությանը, ավելի շատ շեշտված է դրա քողի տակ թաքնված սոցիալական, քան աղանդավորական բնույթը:

Հայ ժողովրդի պատմության բազմահատորյակի այս երկրորդ հատորում ամենայն իրավացիությամբ նշված է, որ դարերի խորքից եկող հոգևոր մշակույթն արտացոլում է հենց երկրի քաղաքական, սոցիալ-տնտեսական ու հասարակական կյանքի ոլորտում տեղի ունեցող տեղաշարժերը և, որպես այդպիսին, հանդիսանում է նրա ժողովրդի պատմության ուսումնասիրության մի բնագավառը: Ահա թե ինչու հայ ժողովրդի հոգևոր մշակույթին նվիրված է մի ամբողջ բաժին, որն ամենաընդարձակն է հատորում: Այստեղ քննության է առնված վաղ ֆեոդալիզմի հայ մշակույթը իր տարբեր բնագավառներով՝ հայոց գրերի գյուտով ու դպրությամբ, հարուստ պատմագրությամբ ու գրականությամբ, փիլիսոփայությամբ, իրավական ու բնական գիտություններով, ճարտարապետությամբ ու բազմաճյուղ արվեստով:

Հայկական ֆեոդալական մշակույթի ընկիզբը դրվել է դեռևս V դարում և բուռն վերելքի շրջան ապրել հաջորդ երկու դարերում: Նրա հիմքում ընկած էին հելլենիստական ժամանակաշրջանի հայկական մշակույթի տարրերը և V—VII դարերում արդեն ամբողջական ու կատարյալ հայկական մշակույթի առկայությունը իրավամբ հատորում բացատրվում է հենց այդ հանգամանքով: Վաղ հայկական մշակույթը այստեղ չի հետազոտվում որպես դատարկ տեղում առաջացած երևույթ, այլ՝ որպես «հելլենիստական» մշակույթի զարգացման բնական արդյունք, որպես անընդմեջ անցում հեթանոսական մշակույթից դեպի քրիստոնեականը: Գրքում քրիստոնեական մշակույթի կենտրոն է ցույց տըրված Հայաստանը, և դա ճիշտ է: Այստեղ են ապրել, ստեղծագործել և իրենց գիտական ժառանգությունը թողել վաղ միջնադարի այնպիսի հանճարեղ մտածողներ, աստվածաբաններ, փիլիսոփաներ, պատմիչներ ու գիտնականներ, ինչպիսիք են՝ Մեսրոպ Մաշտոցը, Եզնիկ Կողբացին, Եղիշեն, Խորենացին, Դավիթ Անհաղթը, Անանիա Շիրակացին և ուրիշներ: Հայկական տեսական մտքի վրա պայծառ հետք են թողել հունական դպրոցի ներկայացուցիչները՝ անտիկ անվանի փիլիսոփաների գործերի իրենց հայերեն թարգմանություններով: Հատորում ցույց է տրված այդ թարգմանությունների ազդեցությունը Հայաստանում գիտությունների զարգացման, խորացման ու դասակարգման գործում, ներկայացվում են այն գիտությունները, որոնց շնորհիվ Հայաստանը դասվում էր այն ժամանակվա զարգացած երկրների թվին: Գիր ու գրականությունից, աստվածաբանական ու փիլիսոփայական գիտություններից զատ, ֆեոդալական հասարակարգի վաղ շրջանում զարգանում ու ծաղկում են նաև բնական ու ճշգրիտ գիտությունները՝ տիեզերագիտությունը, աշխարհագրությունն ու ճարտարապետությունը, քարտեզագրությունը և բժշկությունը:

Հայաստանի վաղ ֆեոդալիզմի մշակույթի կյանքին նվիրված ամբողջ բաժնում վերհանված է այդ մշակույթի ինքնատիպ, ազգային բնույթը, մշակույթ, որն ամբողջովին ու հիմնականում ազգային լինելով հանդերձ, հարստացվել է անտիկ ու հելլենիստական մշակույթի լավագույն ավանդույթներով:

Այս ամենին զուգահեռ հատորում ճըշտվել են նաև բազմաթիվ վիճելի հարցեր՝ կապված Խոսրով Մեծ—Տիրան—Տրդատ Բ-ի հետ, ի հայտ են բերված Տրդատ Գ-ի գործունեության նոր էջեր, կատարված են տարեթվային ճշգրտումներ, աշխարհագրական պարզաբանումներ: Հստակություն է մուծված հայոց արքայացանկում:

Բազմահատորյակի այս երկրորդ գրքում ակնբախորեն ցույց է տրված անդրկովկասյան ժողովուրդների բարեկամությունը, նրանց պատմական ճակատագրի ընդհանրությունն ու անկոտրում կամքը օտար նըվաճողների դեմ մղած համատեղ պայքարում: Մեծ Հայքում պարսկական տիրապետության հաստատումից հետո Շապուհ Ա-ին են ենթարկվում նաև Վիրքն ու Աղվանքը. նրանց բարեկամությունն ավելի է ամրապնդվում իրենց անկախության ու ազատության համար սասանյանների դեմ մղած երկարատև պայքարում:

Հայ ժողովրդի պատմության հետ առընչված ներկայացված են այս երկու երկրների պատմական իրադարձություններից առանձին դրվագներ, նրանց քաղաքական կացությունը ինչպես պարսկա-բյուզանդական հարաբերություններում, նույնպես և արաբների տիրապետության ժամանակ, որը և հատորը հետաքրքրական է դարձնում ոչ միայն հայ ընթերցողի համար:

Հայ ժողովրդի պատմության այս հատորում, սակայն, կան առանձին թերություններ, շեղումներ, շարադրանքում միօրինակության պակաս, վրիպակներ: Գրքում նկատվում են նաև որոշ տարեթվերի տարբերություններ, որը տարակուսանքի ու պատմության ծալքերում ճիշտ կողմնորոշվելու դժվարություններ է հարուցում: Հասկանալի է, որ դրանով սոսկ շարադրանքի միակերպությունը չէ, որ խախտվել է: Դրանց տակ թաքնված են պատմական իրադարձություններ, ուստի առաջադրված թվականներից մեկին նախընտրություն տալը կնշանակի պարզաբանում մտցնել պատմական իրադարձությունների իրական ընթացքի մեջ: Իսկ տարբեր թըվականների գործածումը հատորում հստակության փոխարեն խառնաշփոթություն է առաջացնում:

Անփութություն և անկանոնություն է նկատվում գիտական ապարատում, անձնանունների ու տեղանունների ցանկերում: Հատորը չունի համառոտագրությունների ցանկ: Այնուհանդերձ, գիրքը, որ հրատարակված է պոլիգրաֆիական պատշաճ մակարդակով, ունի գիտական, հասարակական մեծ արժեք, որի նշանակությունը դուրս գալով հայագիտության շրջանակներից՝ ստանում է Առաջավոր Ասիայի ու, հատկապես, Անդրկովկասյան ժողովուրդների պատմության ուսումնասիրության համար խոշոր կարևորություն: Բազմահատորյակի մյուս հատորների հետ մեկտեղ այն հանդիսանում է սովետահայ պատմագիտական մտքի հաղթանակը, ուղենիշային մի սյուն, որը, անցյալի նվաճումները հանրագումարի բերելով հանդերձ, առաջադրում է նոր խնդիրներ, նոր պահանջներ:

**Հ. ՍՎԱԶՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ 375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 20.05.85 թ.: Ստորագրված է տպագրության 11.06.85 թ.: ՎՖ 07404: Ձևաչափ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 17382: Պատվեր 1325:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.